

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7. 1978

# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ 1978

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՍՍՀՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ










# ՍՍՀՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ, 1978 թվականի հուլիսի 3-ին

*Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերին նվիրված՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը գումարվել է պատմական սահմանագծում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության յոթերորդ տասնամյակն սկսվելու տարում։ Հոկտեմբերը առանձնահատուկ տեղ է գրավում ագրարային պրոբլեմների լուծման գործում, մեր երկրի, և ոչ միայն մեր երկրի, գյուղացիության ճակատագրում։ Աշխատավոր մասսաները, երկրագնդի բոլոր առաջադեմ մարդիկ գիտեն, որ Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը միաժամանակ սկիզբ դրեց ճնշումից, քաղաքական իրավազրկությունից և խավարից մոլորակի ամենաբազմամարդ աշխատավորական դասակարգի՝ գյուղացիության, ազատագրմանը։*

*Լենինի կուսակցությունը բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ գյուղացիությանը գործնականում ազատագրեց շահագործումից և աղքատությունից, նրան հաղորդակից դարձրեց սոցիալիզմին։ Մեր թշնամիները ոչ քիչ թվով ամեն տեսակ հերյուրանքներ են հորինել սովետական գյուղի անցյալի ու ներկայի մասին։ Բայց ինչ էլ նրանք ասել ու գրել են, 20-րդ դարի պատմությունը, սովետական գյուղացիության հերոսական ուղին, ինչպես նաև մյուս սոցիալիստական երկրների գյուղացիության ուղին համոզիչ կերպով ապացուցեցին, որ գյուղացիական հարցի ճիշտ և արդարացի լուծման համար կա միայն մի ճիշտ ճանապարհ՝ գյուղում սոցիալիզմի կառուցման ճանապարհը. կա մի իսկական գիտություն՝ մարքս-լենինյան ուսմունքը ագրարային-գյուղացիական հարցի մասին։*

*Հատկանշական է, ընկերներ, որ մեկ ամսից փոքր-ինչ ավելի առաջ լրացավ Վ. Ի. Լենինի գլխավոր ագրարային աշխատություններից մեկի՝ լենինյան մտքի նշանավոր ստեղծագործության՝ «Կոոպերացիայի մասին» հոդվածի լույս տեսնելու 55 տարին, այն հոդվածի, որի մեջ նա ցույց է տվել գյուղի աշխատավոր մասսաների նոր կյանքի գլխավոր ճանապարհը։ Այդ ճանապարհով առաջինը ընթացավ մեր հայրենիքի գյուղացիությունը։ Իսկ այսօր կոոպերացիայի մասին լենինյան գաղափարները հուշում են միլիոնավոր գյուղացիների արտասահմանում, հատկապես գաղութատիրության լուծը թոթափած երկրներում։*

*Ագրարային հարցի մասին լենինյան ուսմունքը, նրա կոոպերատիվ պլանի գաղափարներն ու սկզբունքները եղել և մնում են մեր կուսակցության քաղաքականության հիմնաքարը։ ՍՄԿԿ-ն անշեղորեն առաջնորդվում է դրանցով և, հաշվի առնելով պատմական կոնկրետ պայմանները, շարունակում է զարգաց-*

նել։ Վ. Ի. Լենինի ուսմունքը, նրա պատգամները այսուհետ ևս մեզ համար հուսալի կողմնացույց կլինեն գյուղատնտեսության հետագա զարգացման պլանների մշակման և իրականացման ասպարեզում։

# I. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ. ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐ

Ընկերնե՛ր։ Մեր կուսակցության այժմյան ագրարային քաղաքականությունը, ինչպես հայտնի է, իր սկիզբն առնում է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից։ Այն գիտականորեն արտացոլում է սոցիալիստական հասարակության նոր պայմաններն ու պահանջմունքները։ Ժամանակակից ագրարային քաղաքականությունը գյուղատնտեսության բնագավառում կուսակցության լենինյան ստրատեգիան ու տակտիկան է զարգացած սոցիալիզմի պայմաններում։

Հաստատորեն հետևելով նախատեսված կուրսին, կուսակցությունը կարողացավ լուծել մեծ թվով ագրարային պրոբլեմներ։ Երկրի գյուղատնտեսությունը խոշոր առաջընթաց քայլեր արեց տնտեսական և սոցիալական զարգացման ասպարեզում։ Դա ճանաչվեց ու բարձր գնահատվեց մեր կուսակցության բարձրագույն համաժողովի՝ ՍՄԿԿ XXV համագումարի կողմից։ Համագումարը, ինչպես հայտնի է, սահմանեց նաև կուսակցության խնդիրները տասներորդ հնգամյակում գյուղատնտեսության զարգացման բնագավառում։

Համագումարից հետո անցել է ավելի քան երկու տարի։ Այսօր ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումի քննարկմանը ներկայացնելով գյուղատնտեսության զարգացման հարցը, քաղբյուրոն նկատի է ունեցել.

Նախ՝ կուսակցության ուշադրությունը կենտրոնացնել գյուղատնտեսական արտադրության ամենահրատապ պրոբլեմների լուծման և նրա նեղ տեղերի վերացման վրա, այն միջոցների արդյունավետ օգտագործման վրա, որոնք մենք ներդրել և ներդնում ենք այդ ճյուղի վերելքի գործում և կուսակցությանն ու ժողովրդին մոբիլիզացնել հաջողությամբ կատարելու հնգամյա պլանը ինչպես գյուղատնտեսական մթերքների արտադրության և գնումների ավելացման բնագավառում, այնպես էլ գյուղի նյութատեխնիկական բազայի ամրապնդման նախատեսված ծրագրի իրականացման բնագավառում։

Երկրորդ։ Սահմանել գյուղատնտեսության և նրա ինդուստրացումն ու գիտատեխնիկական առաջընթացն ապահովող ճյուղերի հետագա զարգացման հիմնական ուղղությունները, քննարկել էկոնոմիկայի, պլանավորման կատարելագործման և գյուղի սոցիալական զարգացման մի քանի հարցեր։ Դա սկզբունքային նշանակություն կունենա տասնմեկերորդ հնգամյա պլանի մշակման, գյուղատնտեսությունը էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտորի վերածելու՝ կուսակցության առաջադրած խնդրի հաջող կատարման համար։

Կենտկոմի պլենումի համակողմանի, մանրակրկիտ նախապատրաստության նպատակով քաղբյուրոն, ինչպես ձեզ հայտնի է, անցյալ տարի ստեղծեց հեղինակավոր հանձնաժողով։

Որո՞նք են ամենից առաջ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի ժամանակվանից անցած տարիներին մեր ագրարային քաղաքականության իրականացման գլխավոր արդյունքները։

Լուծելով երկրը պարենով և արդյունաբերության համար անհրաժեշտ գյուղատնտեսական հումքով ապահովելու ստրատեգիական խնդիրը, կուսակցությունը իր առաջնահերթ պարտականությունն էր համարում զգալիորեն ամրապնդել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան՝ մեքենայացման, հողերի քիմիացման ու մելիորացման տեմպերն արագացնելու, այդ ճյուղի զարգացման հարցերը կոմպլեքսայնորեն լուծելու միջոցով։



Ամեն հնարավոր բան ձեռնարկվեց գյուղատնտեսական արտադրությունն ինտենսիվացնելու համար։ Առաջին հերթին փոխվեց գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների հարցին ցուցաբերվող մոտեցումը։ Մենք այդ գործին վերաբերվում ենք որպես գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման անկյունաքարի և կանոն ենք դարձրել առավելագույն հնարավոր չափով սիստեմատիկաբար մեծացնել այդ ներդրումների ծավալները։ Կուսակցությունը միջոցների վերաբաշխման դիմեց ժողովրդական տնտեսության մեջ, ապահովեց գյուղատնտեսական արտադրության ասպարեզում կապիտալ ներդրումների շեշտակի ավելացում, կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալների մեջ նրա բաժնի զգալի մեծացում։ Եթե յոթերորդ հնգամյակում, այսինքն մինչև մարտյան պլենումը, այդ բաժինը կազմում էր 20 տոկոս, ապա ութերորդ հնգամյակում կազմեց 23, իններորդում՝ 26, իսկ տասներորդ հնգամյակի պլանով՝ ավելի քան 27 տոկոս։

Այդ ժամանակամիջոցում մենք կարողացանք շատ բան անել գյուղատնտեսության համար արդիական արդյունաբերական բազա ստեղծելու գործում։ Մեզանում առաջ ըստ էության չկային այնպիսի մասնագիտացված ինքնուրույն խոշոր ճյուղեր, ինչպիսիք են ջրային տնտեսությունն ու մելիորացիան, անասնապահության և կերի արտադրության մեքենաշինությունը, գյուղական շինարարությունը, համակցված կերի և միկրոբիոլոգիական արդյունաբերությունը։ Այժմ դրանք կան։ Մեծապես զարգացել են նաև տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինությունը, հանքային պարարտանյութերի արտադրությունը, վերամշակող արդյունաբերությունը։ Այս ամենը, միասին վերցրած, կազմում է գյուղատնտեսական արտադրության անշեղ վերելքի ապահովմանը նպատակամղված հարաճուն ինդուստրիալ կոմպլեքս։

Գյուղատնտեսության հանրային հատվածում հիմնական արտադրական ֆոնդերը հասել են 183 միլիարդ ռուբլու, որը 2,8 անգամ գերազանցում է 1965 թվականի մակարդակը։ Գրեթե լրիվին նորացվել է կոլտնտեսությունների և սովխոզների մեքենատրակտորային համակազմը, բարելավվել է նրա որակական կազմը, ավելացել է առավել մեծ կարողություն, բեռնամբարձություն և արտադրողականություն ունեցող արդիական մեքենաների բաժինը։ Գյուղատնտեսական ձեռնարկությունների էներգետիկ կարողությունները այդ տարիներին 232 միլիոն ձիաուժից հասել են 525 միլիոն ձիաուժի, կամ մեծացել են ավելի քան երկու անգամ, իսկ կոլտնտեսություններում և սովխոզներում մեկ աշխատողի աշխատանքի էներգազինվածությունը բարձրացել է 2,5 անգամ։ Ակտիվորեն շարունակվում է գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման պրոցեսը։

Կուսակցությունը մեծ նշանակություն տվեց հողերի քիմիացմանն ու մելիորացմանը։ Կարելի է առանց չափազանցության ասել, որ ո՛չ մեր երկիրը, ո՛չ էլ արտասահմանյան պրակտիկան մինչ այդ չեն իմացել դրանց զարգացման այդպիսի հսկայական մասշտաբներ։ Քիմիացումն ու մելիորացումը մեզանում բարձրացվել են համապետական մեծ խնդիրների մակարդակի։ Անցյալ տարի գյուղին մատակարարվեց 77 միլիոն տոննա հանքային պարարտանյութ՝ 1965 թվականի 27 միլիոն տոննայի փոխարեն։ Դրա արտադրությունը այսուհետև ևս կմեծացվի այն հաշվով, որ լրիվին բավարարվեն գյուղատնտեսության պահանջմունքները։ Երկրում գրեթե կրկնապատկվել են ոռոգելի և չորացված հողերի տարածությունները, և այժմ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն ավելի քան 27 միլիոն հեկտար այդպիսի հողատարածություններ։ Տասներորդ հնգամյակում մելիորացման բնագավառում կներդրվի մոտավորապես 40 միլիարդ ռուբլի։

Այսպիսին է այն մեծ աշխատանքի համառոտ հանրագումարը, որ կատարվել է այդ տարիներին գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։ Իհարկե, այստեղ մենք դեռ քիչ չունենք հոգսեր ու նեղ տեղեր, և մենք մեզ լրիվ հաշիվ ենք տալիս, որ այսուհետ ևս անհրաժեշտ է առավելագույն ուշադրություն նվիրել գյուղատնտեսության նյութատեխնիկա-

կյան հագեցմանը բոլոր ուղղություններով՝ թե՛ քանակական, թե՛ հատկապես որակական տեսակետից։

Միաժամանակ հարկավոր է է՛լ ավելի բարձրացնել պահանջները այն ամենում, ինչը վերաբերում է ստեղծված բազայի խելացի, արդյունավետ օգտագործմանը։

Այսօր դա գյուղական կուսակցական կազմակերպությունների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների ամենաառաջնահերթ խնդիրներից մեկն է։

Նյութատեխնիկական բազայի զարգացումը սերտորեն կապված է կադրերի, հատկապես մասնագետների և մեխանիզատորների կադրերի պատրաստման հետ։ Անցած ժամանակամիջոցում այս ուղղությամբ նույնպես քիչ աշխատանք չկատարվեց։ Այժմ դրությունն այսպիսին է. կոլտնտեսությունների և սովխոզների գործերը կատարում են մասնագետների կրթված կադրեր, իսկ տեխնիկան գտնվում է մեխանիզատորների մի մեծ բանակի ձեռքին։ Կոլտնտեսությունների նախագահների 93,5 տոկոսը, իսկ սովխոզների դիրեկտորների 98,3 տոկոսը բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մասնագետներ են։ Այսօր գյուղատնտեսության մեջ աշխատում է ավելի քան մեկ միլիոն 600 հազար մասնագետ, իսկ մեխանիզատորների թիվը ավելացել-հասել է 4 միլիոն 225 հազարի։ Այժմ գյուղատնտեսության մեջ յուրաքանչյուր հինգերորդ աշխատողը մեխանիզատոր է։ Տեխնիկական առաջադիմության շնորհիվ գյուղում երևան են եկել մեծ թվով նաև այլ կատեգորիայի կրթված, որակյալ աշխատողներ։

Ինչպես արդեն նշվել է ՍՄԿԿ XXV համագումարում, տեխնիկայի և մյուս նյութական ռեսուրսների աճը թույլ տվեց նկատելիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում և սովխոզներում։ ՍՍՀՄ կենտվիճվարչության տվյալներով, 1977 թվականին մեկ աշխատողի հաշվով այն կազմել է 1965 թվականի մակարդակի 169 տոկոսը, որը համարժեք է տարեկան 16 միլիոն մարդու աշխատանքի խնայողության։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն մեծ ուշադրություն էր նվիրում գյուղատնտեսության վերելքի տնտեսական միջոցառումներին, հատկապես գյուղատնտեսական մթերքների արտադրության ու գնումների պլանավորման, գնագոյացման, վարկավորման, աշխատանքի վարձատրության կատարելագործմանը։ Մենք ձգտում էինք, որ տնտեսությունների ներսում և ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի մասշտաբներով տնտեսական հարաբերությունների ամբողջ բազմազանությունը ստեղծի պետության, կոլտնտեսությունների և մթերքների անմիջական արտադրողների շահերի ընդհանրություն, միասնություն։ Արտադրանքի արտադրությանը և իրացմանը մասնակցող բոլոր կողմերի շահերի ճիշտ զուգակցումը Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական տնտեսավարման գլխավոր սկզբունքներից մեկը։ Պետք է ասել, որ Կենտկոմի մարտյան պլենումից հետո արդեն առաջին տարիներին կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան, ինչպես նաև գյուղատնտեսության աշխատողների նյութական դրությունն սկսեց նկատելիորեն բարելավվել։ Կոլտնտեսությունների համախառն եկամուտը 1977 թվականին երկու անգամ ավելի բարձր էր, քան միջին հաշվով յոթերորդ հնգամյակի յուրաքանչյուր տարում։ Սովխոզային սիստեմը, ամբողջությամբ վերցրած, վերջին տասներկու տարում աշխատում է շահույթով։

Արդի պայմաններում գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացումը հատկապես սերտորեն կապված է գյուղական կյանքի սոցիալական հարցերի լուծման հետ։ Երկար տարիներ մի շարք պատճառներով չէր հաջողվում ինչպես հարկն է կարգավորել գյուղում աշխատանքի վարձատրության սիստեմը։ Այժմյան փուլում գտնված է այդ կարևոր հարցի առավել հարմար լուծում։ Ամենից առաջ նկատի է առնվում կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրության անցնելը։ Սկզբունքային նշանակություն ունեն կուսակցության այն միջոցառումները, որոնք նպատակամղված են գյուղական աշխատավորների և արդյունաբերական բանվորների աշխատավարձի տարբերության կրճատմանը։ Տասներկու տարում կոլտնտեսականների աշխա-



տանքի վարձատրությունը մեծացել է երկու անգամ, սովխոզների բանվորներինը՝ 1,9 անգամ։

Այդ տարիներին խոշոր միջոցառումներ են իրականացվել կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության և սոցիալական ապահովագրության բնագավառում։ Դա կոնկրետ կերպով պատկերացնելու համար կհիշատակեմ այսպիսի թվեր. 1977 թվականին կենտրոնացված միութենական ֆոնդից կոլտնտեսականներին վճարվել են ավելի քան չորս միլիարդ ռուբլու գումարի կենսաթոշակներ ու նպաստներ, որ ավելի քան չորս անգամ շատ են, քան 1965 թվականին։ Հարկ չկա ապացուցելու, թե որքան նշանակալի են այդ միջոցառումները, որոնք վերաբերում են միլիոնավոր մարդկանց, հատկապես նրանց, ովքեր իրենց ամբողջ կյանքը, իրենց աշխատանքը նվիրաբերել են ընդհանուր գործին՝ կոլտնտեսային կարգերի զարգացմանն ու ամրապնդմանը։

Գյուղական բնակչության բարեկեցության, կուլտուրայի ու կենցաղի աճը մեր ժամանակի հատկանշական գծերից մեկն է։ Ահա ընդհանրացված տվյալներ դրա վերաբերյալ։ Կոլտնտեսականի ընտանիքի միագումար եկամուտը 1965—1977 թվականներին աճել է 1,8 անգամ։ Բնակչության մեկ շնչի հաշվով գյուղական վայրերում ապրանքների վաճառքը նույն տարիներին տարեկան 222 ռուբլուց հասել է 492 ռուբլու կամ աճել է ավելի քան երկու անգամ։ Ոչ արտադրական օբյեկտներում, այսինքն՝ գլխավորապես սոցիալական ոլորտում, պետության և կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները այդ տարիներին կազմել են ավելի քան 40 միլիարդ ռուբլի։ Դա սովետական պետության ամբողջ պատմության մեջ հիշյալ ոլորտում կատարված բոլոր ներդրումների երեք քառորդն է։

Կուսակցության խնդիրն է՝ չթուլացնել ուշադրությունը, մշտապես հոգ տանել, որ այսուհետ ևս բարձրանա գյուղատնտեսության աշխատավորների կենսամակարդակը, որ ավելի ու ավելի բարեկարգ դառնան մեր գյուղերը։

Ամբողջ տնտեսական գործունեության գլխավոր չափանիշը վերջնական արտադրական արդյունքներն են։ Իսկ ինչպիսի՞ք են դրանք գյուղատնտեսության մեջ։

Ինչպես սովորաբար, կսկսեմ համախառն արտադրանքից։ Դրա տարեկան միջին ծավալը վերջին յոթ տարում (1971—1977 թ.թ.) հասել է 116 միլիարդ ռուբլու՝ մարտյան պլենումին նախորդած տարիներին եղած 81,4 միլարդ ռուբլու դիմաց։ Բարձրացել են բոլոր մթերքների բերքատվությունը և արտադրությունը։ Դա կարելի է տեսնել ստորև բերվող աղյուսակից։

**Հողագործական մթերքների համախառն բերքը և բերքատվությունը.**
**(տարեկան միջինը, տնտեսությունների բոլոր կատեգորիաներում).**

| | Համախառն բերքը՝ միլիոն տոննաներով | | Բերքատվությունը հեկտարից՝ ցենտներներով | |
|---|---|---|---|---|
| | 1959—1965 թ. թ. | 1971—1977 թ. թ. | 1959—1965 թ. թ. | 1971—1977 թ. թ. |
| Հացահատիկ | 128,1 | 189,6 | 10,3 | 15,1 |
| Բամբակ | 4,84 | 7,91 | 20,6 | 27,7 |
| Շաքարի ճակնդեղ (գործարանային) | 56,8 | 81,9 | 168 | 229 |
| Արևածաղիկ | 4,62 | 5,86 | 10,4 | 12,9 |
| Թելավուշ (հազար տոննա) | 404 | 466 | 2,6 | 3,8 |
| Կարտոֆիլ | 82,7 | 88,2 | 94 | 114 |
| Բանջարեղեն | 16,5 | 23,3 | 113 | 141 |

Դրական պրոցեսներ են տեղի ունեցել նաև անասնապահության զարգացման ասպարեզում։ Այդ ճյուղի համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը նույն տարիներին 45 տոկոսով բարձր էր։ Աճեցին անասունների հանրա-

չեն համապատասխանում արտադրողականության, խնայողաբերության, հուսալիության ժամանակակից պահանջներին։ Լրջորեն ետ է մնում մեքենաների անհրաժեշտ շլեյֆի թողարկումը՝ տրակտորների աշխատանքային լիաբեռնման և արտադրության մեջ նոր տեխնոլոգիաների արմատավորման համար։ Ուստի այս հնգամյակի մնացած տարիների և 1981—1985 թվականների պլաններում պետք է մի շարք խոշոր միջոցառումներ նախատեսել գյուղատնտեսական մեքենաշինության տեխնիկական մակարդակի բարձրացման համար։

Խոսքը վերաբերում է նախ և առաջ տրակտորների արտադրության կառուցվածքին։ Նկատի է առնվում կոլտնտեսությունների ու սովխոզների համար ապահովել առավել արդյունավետ, էներգահզոր տրակտորների մատակարարումը կախովի ու կցովի մեքենաների և գործիքների անհրաժեշտ կոմպլեկտի հետ միասին։ Այս կապակցությամբ մենք մեծ նշանակություն ենք տալիս Վոլգոգրադի, Պավլոդարի, Լիպեցկի տրակտորի գործարանների վերակառուցումն արագացնելուն։

Կոմբայնաշինության մեջ պետք է կարճ ժամանակամիջոցում միջոցներ ձեռնարկվեն հայրենական արտադրության մեջ թողարկվող հացահատիկի կոմբայնները արդիականացնելու համար, որպեսզի վերացվեն նրանց կոնստրուկտիվ թերությունները, բարձրացվի արտադրողականությունը։ Նաև անհրաժեշտ է մոտակա տարիներին կազմակերպել ժամանակակից կոնստրուկցիաների առավել հզոր կոմբայնների արտադրությունը՝ հաշվի առնելով արտասահմանյան փորձը։ Պետք է հատուկ նշանակություն տրվի բերքի ոչ հատիկային մասի հավաքման ինքնագնաց և կցովի հնձիչների ու մեքենաների թողարկումն ավելացնելուն։

Գյուղատնտեսական մեքենաշինության կարևոր ուղղությունն է կերի արտադրության լրիվ մեքենայացման ապահովումը։ Հարկավոր է վերակառուցել կերի հավաքման մեքենաների և կերի վերամշակման տեխնիկայի արտադրության գործող գործարանները, ստեղծել նոր, հզոր ձեռնարկություններ, այդ կարևոր գործի մեջ ներգրավել արդյունաբերության ուրիշ ճյուղեր։

Դարձյալ շատ սուր է ծառացած գյուղատնտեսական բեռների փոխադրումների պրոբլեմը։ Այդ բեռների ծավալները մշտապես աճում են, իսկ գյուղում ավտոմոբիլների համակազմը դանդաղ է մեծանում։ Բացի դրանից, գյուղը, որպես կանոն, ստանում է այնպիսի ավտոմոբիլներ, որոնք հարմարեցված չեն գյուղատնտեսական բեռների փոխադրումների համար։ Ժամանակն է, որ գյուղին անհրաժեշտ տրանսպորտի պրոբլեմը, որքան էլ դժվարին լինի, լուծվի արմատապես։ Մասնավորապես, հարկավոր է կազմակերպել գյուղատնտեսության համար նախատեսված մեծաբեռ և մասնագիտացված ավտոմոբիլների արտադրությունը։

Քիչ չեն գյուղատնտեսության հետագա մեքենայացման հետ կապված նաև մյուս հարցերը։ Ես հնարավորություն չունեմ այդ ամենի մասին մանրամասնորեն զեկուցել պլենումին։ Բայց միանգամայն պարզ է, որ գյուղատնտեսությունը ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը մեր արմատական խնդիրներից մեկն է։ Հարկավոր է հաշվի առնել, որ ֆոնդազինվածությամբ և աշխատանքի էներգազինվածությամբ գյուղատնտեսությունը դեռևս զգալիորեն ետ է մնում արդյունաբերությունից։

Պլենումին նախապատրաստվելու ընթացքում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն այս ամենը մանրակրկիտ կերպով կշռադատել է և այդ առթիվ երկու, մեր կարծիքով, շատ կարևոր որոշումներ է ընդունել կոմպլեքսային մեքենայացման հետագա զարգացման և կոլտնտեսություններն ու սովխոզները ինչպես հողագործության, այնպես էլ անասնապահության և կերի արտադրության բարձրարտադրողական տեխնիկայով զինելու միջոցառումների մասին։ Որոշումները ձեզ հանձնվել են։

Հարկավոր է է՛լ ավելի ուժեղացնել պահանջկոտությունը գյուղատնտեսությանը հատկացվող ամբողջ տեխնիկայի օգտագործումը բարելավելու գործում։ Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում չեն պահպանվում մեքենաների շահագործման ու պահպանման



կանոնները։ Մեծ թվով մեքենաներ պարապուրդ են տալիս անորակ նորոգման ու տեխնիկական վատ սպասարկման պատճառով։ Շատ տեխնիկա ժամանակից շուտ է մաշվում և դուրս գրվում։ Պատշաճ կարգուկանոն չկա վառելանյութի ու յուղերի ծախսման ու հաշվառման գործում։ Չեն բավականացնում մեխանիզատորները, ցածր է տրակտորների աշխատանքի հերթափոխայնության գործակիցը։ Այս ամենը թանկացնում է արտադրանքի ինքնարժեքը, մեծ վնաս է հասցնում կոլտնտեսությունների, սովխոզների էկոնոմիկային և ամբողջությամբ վերցրած՝ պետությանը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը անցյալ տարի հատուկ որոշում ընդունեցին գյուղում տեխնիկայի օգտագործումը բարելավելու մասին։ Գյուղատնտեսության մինիստրությունը, ջրային տնտեսության մինիստրությունը, «Գյուղտեխնիկա» համամիութենական միավորումը, տնտեսական ու սովետական բոլոր տեղական մարմինները, կուսակցական և մյուս հասարակական կազմակերպությունները պետք է ավելի ակտիվորեն աշխատեն՝ իրականացնելու համար այդ որոշմամբ նախատեսված միջոցառումները։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման միջոցառումների թվում ամենալուրջ ուշադրության է արժանի հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության միջոցների արտադրության հետագա զարգացումը։ Առանց դրա ներկայումս անհնար է գյուղատնտեսական արտադրությունը վարել արագ վերելքի ուղիով։ Չի կարելի ասել, թե մեր քիմիական արդյունաբերությունը անբավարար է զարգացած։ Ընդհակառակը, մենք կարող ենք հպարտանալ, որ կարճ ժամանակամիջոցում երկրում ստեղծվեց գյուղատնտեսության քիմիացման հզոր արդյունաբերություն։ Քիմիական արդյունաբերությունը այժմ ի վիճակի է լուծելու ավելի խոշոր խնդիրներ։

Հաշվի առնելով հողագործական ու անասնապահական մթերքների արտադրության նախատեսված ծավալները, ծրագրվում է գյուղատնտեսության համար հանքային պարարտանյութերի մատակարարումները եկող հնգամյակում հասցնել 135—140 միլիոն տոննայի, կերախառնուրդներինը՝ յոթ միլիոն տոննայի։ Բայց խնդիրը միայն քանակը չէ։ Հարկավոր է անկյունաքար դարձնել թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը։ Պարարտանյութերի արտադրության կարողությունների մեծացումը և արտադրանքի աճը պետք է գերազանցապես կատարվեն ֆոսֆատային, խտացված և բարդ պարարտանյութերի հաշվին։ Ավելի հիմնավոր լուծում է պահանջում նաև կերի արտադրության հարցը, հատկապես ոչ սևահողային գոտու կարիքների համար։

Հատկապես պետք է նշել հերբիցիդները և գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարի պրեպարատները։ Դրանց նկատմամբ գյուղատնտեսության պահանջները առայժմ չեն բավարարվում։ Բացառիկ փոքր են արտադրության ծավալները և սահմանափակ է թողարկվող հերբիցիդների տեսականին այնպիսի գյուղատնտեսական կուլտուրաների ցանքսերի մշակման համար, ինչպիսիք են բրինձը, շաքարի ճակնդեղը, կարտոֆիլը, բամբակենին, բանջարեղենը, իսկ սոյայի և արևածաղկի համար դրանք ամենևին չեն արտադրվում։ Այս պատճառով գյուղատնտեսությունը պակաս է հայթայթում շատ արտադրանք։ Անհրաժեշտ է շտկել այս գործը, մշակել հերբիցիդների արտադրության պետական ծրագիր, նախատեսել գիտական հետազոտությունների զարգացում այդ ուղղությամբ և արտադրական կարողությունների ստեղծում, ինչպես նաև ընդլայնել բույսերի պաշտպանության միկրոբիոլոգիական միջոցների արտադրությունն ու կիրառումը։

Մենք բոլոր միջոցները ձեռնարկում ենք, որպեսզի մեծացնենք գյուղատնտեսության հանքային պարարտանյութերի մատակարարումները։ Միևնույն ժամանակ հարկավոր է տնտեսությունների ղեկավարներին ու գյուղատնտեսական մարմիններին ավելի բարձր պահանջներ ներկայացնել պարարտանյութերի օգտագործման համար, ինչպես նաև օրգանական պարարտանյութերի առավելագույն կուտակման և դրանք հողին տալու համար։

Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում թույլ են տրվում պարարտանյութերի մեծ կորուստներ և նույնիսկ փչացում, խախտվում են դրանց օգ-

տագործման ագրոքիմիական կանոնները և, որ ամենագլխավորն է, դեռևս չկա պատշաճ փոխհատուցում։ Այդ ամենի մեջ քիչ դեր չեն խաղում ագրոքիմիական ծառայության տարանջատվածությունը և անբավարար արդյունավետությունը։ Փաստորեն երկրում դեռևս չկա ագրոքիմիական սպասարկման միասնական, գիտականորեն կազմակերպված սիստեմ։ Մի տեղում քիմիացմամբ զբաղվում է գյուղտեխնիկան, մեկ այլ տեղում՝ միջտնտեսային միավորումները, իսկ որոշ տեղերում էլ դա ընդհանրապես ինքնահոսի է մատնված։ Այդ կարևոր գործում կարգուկանոն հաստատելու համար նպատակահարմար է ագրոքիմիական ծառայությունը ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում կենտրոնացնել գյուղատնտեսական մարմինների սիստեմում, նրանց հանձնելով դրա համար նախատեսված ամբողջ արտադրական բազան։

Պետք է անհամեմատ մեծ ուշադրություն դարձնել գյուղատնտեսական ավիացիային, որն արդեն այսօր կարևոր դեր է խաղում դաշտերի բերքատվությունը բարձրացնելու պայքարում։ Նա է կատարում քիմիկատներ շաղ տալու աշխատանքների ընդհանուր ծավալի 30 տոկոսից ավելին։ Այդ ուղղությունը հեռանկարային է, և մեր խնդիրն է զարգացնել ու ամրապնդել գյուղատնտեսական ավիացիայի նյութատեխնիկական բազան։

Ինչպես որ նախկինում, պետք է հաստատակամորեն զարգացնել մելիորացիան։ Այստեղ կենտրոնական խնդիրը պետք է դառնա մելիորացված հողերի օգտագործման բարելավումը, դրա տնտեսական յուրացման գործում եղած ետ մնալը վերացնելը։ Հաճախ ջրովի տարածությունների բերքը դեռևս քիչ է տարբերվում անջրդի հողագործության արդյունքներից։ Սա անթույլատրելի է։ Մելիորացիայի բնագավառում մեծ միջոցներ են ներդրվում, ստեղծված է բավականաչափ հզոր արտադրական բազա, աճել են կադրերը։ Դա մեզ իրավունք է տալիս գյուղատնտեսության ու ջրային տնտեսության աշխատողներից պահանջել, որպեսզի ապահովվի արտադրանքի բարձր փոխհատուցումը ոռոգելի և ցամաքեցված հողերից։ Հետագայում անհրաժեշտ է ապահովել շահագործման հանձնվող մելիորացված հողատարածությունների միայն կոմպլեքսային յուրացում։ Այնտեղ, ուր հնարավոր է, դրանք համակենտրոնացնել մասնագիտացված տնտեսությունների կամ միջտնտեսային միավորումներում՝ իրոք արդյունավետ հողագործություն կազմակերպելու համար։

Գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրները լուծելու գործում մեծ ավանդ պետք է ներդնի մեր գիտությունը։ Կուսակցության XXV համագումարից հետո շատ չանցած գիտնականների լայն մասնակցությամբ միջոցառումներ մշակվեցին գյուղատնտեսական գիտության արդյունավետությունը բարձրացնելու և արտադրության հետ նրա կապերն ամրապնդելու համար։ Այդ հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության ընդունած որոշման մեջ սահմանված են այն հիմնական ուղղությունները, որոնցով գիտությունը պետք է զարգանա գյուղատնտեսության բարձրացման նպատակով։

Այսօր կցանկանայի միայն շեշտել, որ մենք պետք է մշտապես ուժեղացնենք մեր ուշադրությունը գիտահետազոտական հիմնարկների նկատմամբ, հասնենք դրանց աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, ըստ ամենայնի բարելավենք գիտության նվաճումների արմատավորումը արտադրության մեջ, այն դնելով պլանային լավ հիմքի վրա։ Շատ կարևոր է, որ գյուղատնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման բազմակողմանի պրոբլեմների մշակմանը այսուհետև էլ ակտիվորեն մասնակցեն ոչ միայն գյուղատնտեսական գիտության աշխատողները, այլև ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, միութենական հանրապետությունների գիտությունների ակադեմիաները, գիտելիքների բոլոր ճյուղերի գիտնականները։ Գյուղատնտեսության վերելքը, ինչպես մենք բազմիցս նշել ենք, համաժողովրդական գործ է, ընդհանուր հոգատարության առարկա։

Երկրի էկոնոմիկայի զարգացման ամբողջ ընթացքը, ժողովրդի կյանքի նյութական մակարդակի անշեղ աճը այժմ առաջին պլան են քաշում անասնապահության ավելի արագ բարձրացման խնդիրը։ Միանգամայն օրինաչափ է, որ ժողովրդի բարեկեցության աճը վերջին ժամանակներս հենց անասնապահական



մթերքների նկատմամբ ավելի բարձր պահանջարկ է առաջ բերել։ Այդ կապակցությամբ այնպիսի վիճակ է ստեղծվել, երբ, չնայած մսի, կաթի ու մյուս մթերքների արտադրության նկատելի ավելացմանը, ճյուղի աշխատանքի կազմակերպման բարելավմանը, անասնապահության զարգացման ներկայիս մակարդակը չի համապատասխանում արագ աճող պահանջմունքներին։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեում հանգամանորեն վերլուծվեցին անասնապահության հետագա զարգացման հարցերը և մշակվեց մսի, կաթի ու մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու միջոցառումների կոմպլեքս։ Ճյուղի զարգացման հետ կապված մի շարք հարցերի վերաբերյալ ընդունվել են որոշումներ, որոնց Կենտկոմի անդամները հնարավորություն են ունեցել ծանոթանալու։ Խոսքն այն մասին է, որ, ավելացնելով գլխաքանակը, ամենուրեք և որքան հնարավոր է արագ բարձրացվի անասունների ու թռչունների բոլոր տեսակների մթերատվությունը, անցնել անասնապահությունը վարելու ինտենսիվ մեթոդների, այն դարձնել ժամանակակից բարձրարդյունավետ ճյուղ։

Անասնապահության նոր վերելքին հասնելը պահանջում է ամբողջ կուսակցության, մեր բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների, գյուղի բոլոր աշխատավորների ուշադրության կտրուկ շրջադարձ դեպի այդ ճյուղը։

Առաջնահերթ խնդիրը մսի արտադրության ավելացումն է։ Դա լուծելու համար անհրաժեշտ է լիովին օգտագործել մեր բոլոր հնարավորություններն ու ռեզերվները, հասնել մսի բոլոր տեսակների արտադրության աճին։

Երկրի շրջանների մեծ մասում մսի պրոբլեմի լուծումը կապված է նախ և առաջ տավարի մսի արտադրության ավելացման հետ։ Դա պայմանավորվում է մի կողմից տավարի մսի նկատմամբ բնակչության աճող պահանջարկով, իսկ մյուս կողմից՝ կերի հաշվեկշռի կառուցվածքի առանձնահատկություններով ու բնական պայմաններով։ Մենք ունենք մարգագետինների և արոտավայրերի ընդարձակ տարածություններ, կոշտ ու հյութալի կերի արտադրության մեծ հնարավորություններ։ Լրացուցիչ շատ արդյունքներ են տալիս սննդարդյունաբերության ձեռնարկությունները։

Այդ բոլորը ամենամեծ փոխհատուցմամբ կարող է օգտագործվել խոշոր եղջերավոր անասունների բուծման ու բտման համար։

Տավարի մսի արտադրությունն ավելացնելու բոլոր ռեզերվներից պետք է հատկապես առանձնացնել մորթելու անասունների քաշի բարձրացումը և բտման ժամկետների կրճատումը։ Վերջերս խնդիր դրվեց քաշային կոնդիցիաները բարձրացնել մինչև 350—370 կիլոգրամ։ Շատ մարզեր ու հանրապետություններ հաջողությամբ իրագործեցին այն։ Ամբողջությամբ վերցրած, երկրում կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից պետությանը վաճառված անասունների միջին քաշը հասել է 355 կիլոգրամի, իսկ մի շարք մարզերում ու հանրապետություններում՝ 400—440 կիլոգրամի։ Դրա հաշվին երկիրը ներկայումս տարեկան լրացուցիչ ստանում է ավելի քան մեկ միլիոն տոննա միս։

Սակայն անասունների մի զգալի մասը մսի կոմբինատներ է հանձնվում ըստ էության առանց բտման, ցածր քաշով և վատ դիրացված։ Որոշ շրջաններում շատ հորթեր են մորթվում։ Անհրաժեշտ է ամենուրեք հնարավորին չափ արագ իրագործել անցումը անասունների բուծման ինտենսիվ մեթոդների և անասունները որպես մսացու մատակարարել միայն 400—450 կիլոգրամ քաշի հասցնելուց հետո։ Կարծում եմ, որ շատ շրջաններ, ամբողջ մարզեր, երկրամասեր ու հանրապետություններ այդ խնդիրը ի վիճակի կլինեն լուծել արդեն ընթացիկ հնգամյակում։ Տեղերում պետք է անհապաղ կոնկրետ աշխատանք կատարվի, որոշվի, թե յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի անասունները որտեղ և որքան ինտենսիվ պետք է բտվեն՝ մասնագիտացված ֆերմաներում և սեփական տնտեսության մեջ, թե միջտնտեսային ձեռնարկություններում։

Մսի արտադրությունը ինտենսիվ հիմքի փոխադրելու արժեքավոր փորձ է կուտակված Վորոնեժի, Օրենբուրգի մարզերում, Ուկրաինական ՍՍՀ-ի առանձին մարզերում, Մոլդավիայում և այլուր։ Այստեղ արդեն այժմ տավարի մսի

կեսից ավելին մատակարարում են անասունների բուծման մասնագիտացված ձեռնարկությունները։ Հարց է առաջանում. մի՞թե նրանց պայմանները ավելի լավ են, քան մյուս հանրապետությունների ու մարզերի բացարձակ մեծամասնությանը։ Բանը ոչ թե պայմաններն են, այլ կազմակերպչական ու տնտեսական աշխատանքի մակարդակը։

Տավարի մսի արտադրության պրոբլեմը արմատապես լուծելու համար անհրաժեշտ է ավելի եռանդագին աշխատանք տանել մասնագիտացված մսատու անասնապահության ինքնուրույն ճյուղ ստեղծելու ուղղությամբ՝ օգտագործելով արոտավայրերի հանդակները և կերի կայուն բազա ստեղծելով ոռոգման հիման վրա։ Այդ ուղիով են ընթանում Ղազախստանի, Ուրալի, Սիբիրի, Պովոլժիեի շատ տնտեսություններ, և դա լավ արդյունքներ է տալիս։ Մեծ հնարավորություններ կան Միջին Ասիայի հանրապետությունների, ՌՍՖՍՀ-ի հարավի և ոչ սևահողային գոտու, Բելոռուսիայի ոռոգելի նոր հողերում։ Մսատու անասնապահության զարգացման լայն ծրագիր է մշակված և իրագործվում է Ուկրաինայում։ Մոտ ժամանակներս այդ ճյուղը պետք է այնպես զարգացնել, որ այն դառնա երկրը բարձրորակ մսով ապահովելու խոշոր աղբյուր։

Մսի արտադրությունն ավելացնելու գործում պակաս կարևոր չէ խոզաբուծության ինտենսիվ զարգացումը։ Դրան նշանակալի տեղ է պատկանում երկրի մսի հաշվեկշռի կազմավորման գործում։ Վերջին տարիներին շատ բան է արված խոզի մսի արտադրության մեջ առաջադիմական տեխնոլոգիաների արմատավորման ուղղությամբ։ Սովխոզներում, կոլտնտեսություններում և միջտնտեսային հիման վրա ստեղծված են խոզաբուծական խոշոր ձեռնարկություններ։ Դրանց աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ խոզի մսի արտադրության արդյունաբերական մեթոդներին անցնելը հնարավորություն է ընձեռում բարձրացնել քաշաճը և կրճատել բուծման ժամկետները, մթերքն ստանալ կերի, աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով։ Անհրաժեշտ է այսուհետ ևս մեր հնարավորությունների չափով ստեղծել այդպիսի նոր ձեռնարկություններ կամ էլ այդպիսիք ստեղծել գործող ֆերմաների վերակառուցման բազայի վրա, խոզաբուծությունը հետևողականորեն փոխադրել ինդուստրիալ հիմքի վրա։

Սակայն կցանկանայի կրկին նախազգուշացնել սխալներից։ Զարգացնելով այդ ուղղությունը, սխալ կլիներ թուլացնել ուշադրությունը ոչ մասնագիտացված տնտեսությունների ֆերմաներում խոզի մսի արտադրության նկատմամբ։ Նրանցից շատերը դրա համար ունեն լավ հիմք, ձևավորված կադրեր, կարող են խոզերը բուծել ոչ միայն հացահատիկով, այլև կարտոֆիլով, արմատապտուղներով, հյութալի ու կանաչ այլ կերերով։ Այդ ամենը հարկավոր է սրտացավ կերպով օգտագործել մսի արտադրությունն ավելացնելու և խոճկորներ ստանալու նպատակով՝ ինչպես հասարակական կարիքների, այնպես էլ բնակչությանը վաճառելու համար։

Վերջերս, ինչպես գիտեք, ծավալուն որոշում ընդունվեց մսատու թռչնաբուծությունը զարգացնելու մասին։ Դա մեծ հնարավորություններ է բացում մսի ռեսուրսները համալրելու համար։ Թռչնի մսի տեսակարար կշիռը նախատեսվում է մեծացնել մոտավորապես կրկնապատիկ չափով։ Մինչև վերջին ժամանակներս թռչնաբուծության մեջ առաջնությունը տրվում էր ձվատվությանը, և բնակչությանը ձվի մատակարարման պրոբլեմը հիմնականում լուծված է։ Այժմ ճյուղի միջոցները կենտրոնացվում են թռչնի մսի արտադրությունն ավելացնելու վրա։ Մոտակա տարիներին շահագործման կհանձնվեն մսատու ճտերի, բադերի, հնդկահավերի, սագերի բուծման խոշոր ձեռնարկություններ։ Դրա հետ մեկտեղ շատ բան կարելի է անել նաև գործող թռչնաֆաբրիկաներում՝ դրանց վերակառուցման և կարողությունների ընդլայնման հաշվին։ Անհրաժեշտ է ավելի լայնորեն օգտագործել նաև բրոյլերների բուծման հնարավորությունները՝ կոլտնտեսությունների և սովխոզների հետ թռչնաֆաբրիկաների կոոպերացման հիման վրա, ինչպես որ դա արվում է Ղրիմի, Դնեպրոպետրովսկի մարզերում, Կրասնոդարի երկրամասում։

Հարկավոր է ուշադրություն դարձնել ոչխարաբուծության մեծ ռեզերվներին։ Այդ ճյուղի զարգացման բնագավառում որոշ հաջողություններ կան. աճել



է գլխաքանակը և բարելավվել նրա որակական կազմը, ավելացել են բրդի, այծի աղվամազի և կարակուլի արտադրությունն ու գնումները։ Սակայն մի շարք հանրապետություններում և մարզերում ոչխարաբուծությունը շատ դանդաղ է աճում, իսկ ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտում, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մոլդավիայի, Մերձբալթիկայի հանրապետությունների առանձին շրջաններ այն առհասարակ կրճատում են։ Դա ճիշտ չէ, սխալ է։

Մենք բոլոր պայմաններն ունենք շատ, զգալիորեն շատ ոչխարի միս, բուրդ, մուշտակի ու մորթու հումք արտադրելու և այդ արտադրանքի նկատմամբ երկրի պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու համար։

Ոչխարի մսի ու բրդի հիմնական քանակը մենք այսուհետև էլ պետք է ստանանք արոտավայրերի կերի հաշվին։ Հենց ոչխարաբուծությունն է թույլ տալիս առավելագույն փոխհատուցմամբ օգտագործել մեր տափաստանային և կիսանապատային կերահանդակների հսկայական տարածքները։ Ուստի անհրաժեշտ է ավելի ակտիվորեն ամրապնդել ոչխարաբուծական տնտեսությունների արտադրական բազան, շարունակել արոտավայրերի ջրարբիացման ու բարելավման աշխատանքը։ Առանձնապես կարևոր է այդ շրջաններում ստեղծել կերի փոխանցվող ապահովագրական պաշարները։

Ոչխարաբուծության զարգացման նկատմամբ այլ մոտեցում պետք է լինի այն շրջաններում, որտեղ հողերի մեծ մասը հերկվում է։ Այստեղ պետք է արդյունաբերական տեխնոլոգիան ավելի լայնորեն օգտագործել թե՛ ոչխարները պահելիս և թե՛ կերարտադրության մեջ։ Այդ տեսակետից լավ փորձ է կուտակված Ստավրոպոլի երկրամասում, Ռոստովի, Յարոսլավլի, Բելգորոդի մարզերում և Մարիական ԻՍՍՀ-ում։

Մեծ աշխատանք է կատարվելու կաթի արտադրության հետագա ավելացման գործում։ Թեև վերջին տարիներին բավականաչափ խոշոր առաջընթաց քայլ է արվել այդ ուղղությամբ, սակայն ճյուղի որակական ցուցանիշները մնում են ցածր, դանդաղ է աճում կաթնատվությունը, նկատվում է սեզոնություն, փաստորեն չեն նվազեցվում աշխատանքի ու կերի տեսակարար ծախսումները, նշանակում է նաև արտադրանքի ինքնարժեքը։ Կաթնաֆերմաների աշխատանքի այդ կողմին պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնել։ Նախատեսվում է մոտ ժամանակներս երկրում կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում հասցնել առնվազն 3.000 կիլոգրամի, իսկ զարգացած կաթնատու անասնապահության շրջաններում, որտեղ արդեն ստանում են 3—3,5 հազար կիլոգրամ, խնդիր է դրված կաթնատվության բնագիծը հասցնել 4—5 հազար կիլոգրամի։

Անասնապահության աճող ինտենսիվացման, այն արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու պայմաններում անչափ մեծանում է սելեկցիայի և ցեղաբուծական գործի դերը։ Գյուղատնտեսության մինիստրությունը և Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիան մեծ աշխատանք պետք է կատարեն կենդանիների նոր ցեղատեսակների, գծերի ու հիբրիդների ստեղծման և գոյություն ունեցողների կատարելագործման, ցեղաբուծական տնտեսությունների ցանցի ընդլայնման, բարձր մթերատու անասունների և թռչունների ռեսուրսների առավել նպատակասլաց օգտագործման ուղղությամբ։

Քննարկելով հանրային անասնապահության զարգացման միջոցառումները, ուզում եմ կրկին շեշտել, որ մենք պետք է հոգ տանենք նաև կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների անհատական տնտեսությունների մասին։ Դա պարենային ռեսուրսների համալրման կարևոր աղբյուր է։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ գրված է, որ «Պետությունը և կոլտնտեսությունները աջակցում են քաղաքացիներին օժանդակ տնտեսությունը վարելու գործում»։ Մատակարարումը բարելավելու գործում օգտակար դեր պետք է խաղան նաև արդյունաբերական ձեռնարկությունների, հասարակական սննդի ձեռնարկությունների և մյուս կազմակերպությունների օժանդակ տնտեսությունները։

Պարենային ռեսուրսները համալրելու համար պետք է ավելի կոնկրետ զբաղվել ձկնարտադրությամբ՝ տեղական ջրամբարների լավագույն օգտագործ-

ման հաշվին։ Այստեղ հնարավորությունները փաստորեն անսահմանափակ են։ Օգտակար կլիներ, որ համապատասխան մարմինները մշակեին երկրի մասշտաբով ձկնաբուծությունը զարգացնելու միջոցառումներ։

Այն ամենը, ինչ մենք ուզում ենք ունենալ անասնապահությունից՝ ավելի շատ միս, կաթ և այլ մթերքներ, այդ ամենը, վերջին հաշվով, կախված է կերի, ընդ որում՝ բազմապիսի և բարձրորակ կերի բավարար քանակությունից։ Չի կարելի ասել, թե մեր աշխատանքում քիչ ուշադրություն է նվիրվել այդ հարցերին, սակայն կերարտադրության պրոբլեմը արմատական, կոմպլեքսային լուծում դեռ չի գտել։ Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում կերարտադրությունը վարվում է պրիմիտիվ եղանակով։ Այստեղ մյուս ճյուղերի համեմատությամբ ավելի թույլ են արմատավորվում ժամանակակից տեխնոլոգիաները և գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները։ Քիչ են կերի լավ պահեստները, որը հանգեցնում է նրա մեծ կորուստների և որակի վատացման։ Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի տվյալներով, կերի պատրաստման պրիմիտիվ մեթոդների և նրա պահպանման անբավարար պայմանների պատճառով կերի սննդարար նյութերի միջին կորուստները շատ տնտեսություններում խոտի, սենաժի և սիլոսի գծով կազմում են ավելի քան 20—30 տոկոս։ Չի լուծված սպիտակուցի պրոբլեմը։ Թույլ է զարգացած համակցված կերի արդյունաբերությունը։ Այս ամենը վկայում է, որ անհրաժեշտ է խոշոր միջոցներ ձեռնարկել կերի արտադրությունը կազմակերպելու, ըստ էության կերարտադրության ժամանակակից ինդուստրիա ստեղծելու համար։ Կերի որակի բարձրացման և նրա արտադրության սահմանված տեխնոլոգիայի կիրառման հաշվին կարող են ստացվել զգալի քանակությամբ անասնապահական մթերքների լրացուցիչ ռեսուրսներ։

Ելնելով դրանից, Կենտկոմի պլենումի նախապատրաստման ժամանակամիջոցում մշակվեցին և ընդունվեցին որոշումներ երկրում կերարտադրության կոմպլեքսային զարգացման վերաբերյալ, որոնք նախատեսված են մինչև 1985 թվականն ընկած ժամանակաշրջանի համար։ Այդ որոշումներով միջոցառումներ են նախատեսված՝ բարելավելու դաշտային կերարտադրությունը, բնական խոտհարքները և արոտավայրերը, ավելացնելու կերի կուլտուրաների համար պարարտանյութերի օգտագործումը, կատարելու զգալի ծավալներով մելիորացիոն աշխատանքներ։

Միջոցառումներ են նախատեսված մեքենայացնելու կերարտադրության բոլոր պրոցեսները, արմատավորելու կերի կուտակման և կերակրման համար նրա նախապատրաստման առաջադիմական տեխնոլոգիաներ, այդ ճյուղը փոխադրելու ինդուստրիալ հիմքի վրա։

Համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվում է կարճ ժամանակամիջոցում ավելացնել քիմիական կոնսերվանտների, պոլիմերային թաղանթի, կերախառնուրդների, հանքային աղերի, ծղոտի կերային հատկությունները բարձրացնելու նպատակով նրա մշակման միջոցների արտադրությունը և մատակարարումը գյուղատնտեսությանը։ Կերի որակը բարելավելու համար նկատի է առնվում տնտեսություններում իրականացնել սիլոսի, սենաժի, խոտի և արմատապտուղների ժամանակակից պահեստների, կերանոցների կառուցման լայն ծրագիր, ստեղծել կերի որակի վերահսկողության ծառայություն։

Կարևոր նշանակություն է տրվում նաև կազմակերպական միջոցառումներին։ Խոսքը վերաբերում է այն բանին, որ կերարտադրությունը է՛լ ավելի մասնագիտացված ճյուղային բնույթ տրվի հենց կոլտնտեսություններում և սովխոզներում, որ ստեղծվեն կերի արտադրության միջտնտեսային միավորումներ, զարգացվի ագրոարդյունաբերական ինտեգրացիան։

Մեծ ուշադրություն է նվիրվում կերի սպիտակուցի պրոբլեմին։ Ուզում եմ կրկին հիշեցնել, որ կերաբաժինների մեջ սպիտակուցի դեֆիցիտի պատճառով կերի հսկայական գերածախս է տեղի ունենում։ Նախատեսվում է մոտակա տարիներին կոլտնտեսություններում և սովխոզներում ընդլայնել հատիկալոբազգի և ծիլթառու կուլտուրաների, առվույտի, երեքնուկի, կանճրակի ցանքատարա-



ծությունները և ավելացնել դրանց բերքը։ Երկրի լայն շրջաններին բազմամյա խոտաբույսերի սերմացու մատակարարելու համար, որտեղ դժվար է դրանց աճեցումը, նպատակահարմար է գտնված հիմնականում ոռոգելի և մյուս մելիորացված հողերում գտնվող մասնագիտական տնտեսություններում ու միավորումներում կազմակերպել սերմացուի, հատկապես առվույտի սերմացուի արտադրություն։

Վերջերս, ինչպես դուք գիտեք, որոշում ընդունվեց սոյայի վերաբերյալ։ Մենք դա համարում ենք առաջին քայլը այդ արժեքավոր կուլտուրայի լայն արտադրության կազմակերպման ճանապարհին։ Հարկավոր է հնարավորություններ գտնել ընդարձակելու դրա ցանքատարածությունները, հատկապես ոռոգելի հողերում, կատարելագործելու մշակման տեխնոլոգիան։

Սպիտակուցի պրոբլեմի լուծման գործում պետք է իրենց ավանդը ներդնեն մեր քիմիկոսները, միկրոբիոլոգիական, ցելյուլոզի-թղթի արդյունաբերության, ձկնարդյունաբերության, մսեղենի-կաթնեղենի, սննդի, բժշկական արդյունաբերության և մի շարք այլ ճյուղերի աշխատողները։ Նրանց համար սահմանվում են համապատասխան առաջադրանքներ, հատկացվում կապիտալ ներդրումներ։

Մենք մեր առջև նպատակ ենք դնում հասնել այն բանին, որ անասնապահության կարիքներին հատկացվող ամբողջ հացահատիկը օգտագործվի վերամշակված և հաշվեկշռված ձևով։ Դրա համար նախատեսվում է արագորեն զարգացնել ինչպես համակցված կերի պետական արտադրությունը, այնպես էլ սովխոզներում, կոլտնտեսություններում, միջտնտեսային ձեռնարկություններում համակցված կերի արտադրությունը։

Ընդսմին չի կարելի չնշել, որ մի շարք վայրերում նկատվում է միանգամայն սխալ միտում։ Տնտեսությունների, շրջանների և նույնիսկ մարզերի որոշ ղեկավարներ ինչպես հարկն է հոգ չեն տանում խոտի, սենաժի, սիլոսի, արմատապտուղների արտադրության ավելացման և նրանց որակի բարձրացման մասին։ Կերի պակասը ձգտում են ծածկել կոնցենտրատներով, հաճախ պետական ռեսուրսների հացահատիկի հաշվին։ Դրա հետևանքով անասունների կերակրման համար հացահատիկի ծախսումը անչափ մեծանում է, իսկ մյուս կերատեսակների օգտագործումը նույնիսկ կրճատվում է։

Հարկավոր է բարձրացնել կադրերի պատասխանատվությունը անասնապահությունը կերով ապահովելու գործում։ Այդ ցուցանիշը պետք է լինի գյուղատնտեսության աշխատանքի գնահատման կարևորագույն չափանիշներից մեկը։

Անհրաժեշտ է սոցիալիստական մրցության արդյունքները ամփոփելիս և ղեկավարների ու մասնագետների խրախուսման միջոցները որոշելիս հատուկ ուշադրություն դարձնել, թե տնտեսությունները որքանով են ապահովված սեփական կերով։

Կենտկոմի քաղբյուրոն մեծ նշանակություն է տալիս կերարտադրության միջոցառումներին։ Ժամանակակից կերարտադրության՝ որպես ժողովրդական տնտեսության մասնագիտացված ճյուղի, ստեղծման անհրաժեշտությունը հիմա միանգամայն ակներև է դառնում։ Այդ գործը համապետական մեծ նշանակություն ունի։ Համապատասխանաբար պետք է ապահովվի նաև մոտեցումը ճյուղի նկատմամբ, պետք է մտցվի կերի արտադրության հստակ պլանավորում և պլանային առաջադրանքների նյութատեխնիկական ապահովում։

Մենք միշտ բացառիկ ուշադրություն ենք նվիրում հացահատիկի արտադրությանը։ Կուսակցության XXV համագումարում, ինչպես դուք գիտեք, հացահատիկի արտադրությունը համարվեց աշխատանքի հարվածային տեղամաս։ Հնգամյակի առաջին երկու տարում հացահատիկի տարեկան միջին բերքը կազմեց 209,6 միլիոն տոննա՝ առաջադրանքով նախատեսված 210 միլիոն տոննայի դիմաց։ Սակայն հացահատիկը, հատկապես ֆուրաժային հացահատիկը դեռ չի բավականացնում։ Նրա նկատմամբ պահանջմունքները ավելի արագ են աճում, քան նրա արտադրությունը։ Առանձին տարիների հացահատիկի համախառն բերքի մեծ տատանումները բացասաբար են անդրադառնում անասնապահության վրա։

Մեքենայացման, քիմիացման և մելիորացման զարգացման նախատեսված միջոցառումները, որոնց մասին ես զեկուցեցի վերը, թույլ են տալիս ավելի կայուն կերպով վարել հացահատիկային տնտեսությունը, տարեցտարի բարձրացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Սա է գլխավոր ուղին։ Խնդիր է դրվում եկող հնգամյակում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը երկրում հասցնել հեկտարից 20 ցենտների, իսկ այնպիսի շրջանների համար, ինչպիսիք են Հյուսիսային Կովկասը, Ուկրաինան, Մոլդավիան, Բելոռուսիան, Մերձբալթիկան և մի քանի այլ շրջաններ, ռեալ կլինի հեկտարից ստանալ 35—40 ցենտներ և ավելի հացահատիկ։

Հարկավոր է ավելի լրիվ օգտագործել այնպիսի մի ռեզերվ, ինչպիսին է որոշ շրջաններում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ընդլայնումը։ Դա հատկապես վերաբերում է ոչ սևահողային գոտուն, որտեղ հնարավորություններ կան ավելացնելու հացահատիկային կուլտուրաների հողատարածությունը պակաս արդյունավետ միամյա խոտաբույսերի և այլ կուլտուրաների հաշվին։

Հարկավոր է է՛լ ավելի մեծ ուշադրություն նվիրել կորեկի, հնդկացորենի, տարեկանի, հատիկացու եգիպտացորենի մշակմանը։ Մի շարք տնտեսություններում բացահայտորեն թերագնահատում են հիշյալ կուլտուրաները։

Այժմ անհրաժեշտ է ագրոտեխնիկական եղանակների ամբողջ զինանոցը ի սպաս դնել հացահատիկի առավելագույն բերքի ստացմանը, հողերի բերրիության, հողագործության կուլտուրայի բարձրացմանը, օգտագործել բոլոր հնարավորությունները և ռեզերվները, այդ նպատակին ենթարկել տեղական կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների, տնտեսությունների ղեկավարների և մասնագետների, սովխոզների բանվորների և կոլտնտեսականների աշխատանքը։

Կանգ կառնեմ գյուղատնտեսական արտադրության մի քանի այլ ճյուղերի հետագա զարգացման հարցերի վրա, որոնց արտադրանքը նախատեսվում է երկրի հարաճուն պահանջմունքների բավարարման համար։

Մեծ աշխատանք պետք է կատարվի ճակնդեղաբուծության մեջ։ Այդ հարցի առթիվ մենք վերջերս ընդունեցինք ծավալուն որոշում, որին դուք, հավանաբար, արդեն ծանոթ եք։ Նախատեսվում է եկող հնգամյակում նոր տեխնոլոգիաների արմատավորման հիման վրա բերքատվությունը բարձրացնելու հաշվին զգալիորեն ավելացնել շաքարի ճակնդեղի համախառն բերքը։

Կմեծանան շաքարի գործարանների կարողությունները, որը թույլ կտա կրճատել շաքարի արտադրության սեզոնը, նվազեցնել շաքարի կորուստները ճակնդեղի պահպանման ու վերամշակման ժամանակամիջոցում։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը տեղական մարմինների մասնակցությամբ մշակում է նաև արևածաղկի, բամբակի, կարտոֆիլի, բանջարեղենի և պտուղների արտադրության ավելացման նպատակային ծրագրեր։

Անհրաժեշտ է տասնմեկերորդ հնգամյակում խիստ ավելացնել արևածաղկի արտադրությունը։ Հարկավոր է բարձրացնել նրա բերքատվությունը, վերացնել սերմացուի կորուստները բերքահավաքի ժամանակ, ավելի ակտիվորեն զարգացնել պահպանման և վերամշակման բազան, թույլ չտալ արտադրանքի փչացում։

Կուսակցության և պետության ջանքերով, բամբակագործների և մելիորատորների անձնվեր աշխատանքով երկրում հուսալի բազա է ստեղծված բամբակի արտադրության անշեղ ավելացման համար։ Նրա ծավալները պետք է մեծացվեն նաև ապագայում։ Բայց այժմ հարցը միայն քանակական ցուցանիշների աճը չէ։ Կենտրոնական խնդիրն է բարձրացնել արտադրանքի որակը, ըստ ամենայնի ավելացնել նրբաթել տեսակների բամբակի արտադրությունը։ Բամբակի բարձր որակը երկրի բոլոր բամբակագործների գլխավոր հոգսն է։

Հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել այնպիսի մթերքների, ինչպիսիք են կարտոֆիլը և բանջարեղենը։ Ես նկատի ունեմ ոչ միայն դրանց արտադրությունն ավելացնելու անհրաժեշտությունը։ Արտադրությունը աճում է,



թեև ոչ այնպես արագ, ինչպես կուզենայինք։ Եթե խոսելու լինենք բանջարեղենի մասին, ապա այստեղ գլխավորը, մեր կարծիքով, բանջարաբուծությունը ռոտացման հիմքի վրա դնելու գործի արագ ավարտումն է, բերքի կորուստների կրճատումը, արտադրանքի բարձր որակի ապահովումը, նրա վերամշակման և պահպանման նյութատեխնիկական բազայի ամրապնդումը։ Ձմռան ամիսներին բանջարեղենի մատակարարումը բարելավելու նպատակով շատ կարևոր է նաև ավելացնել բանջարեղենի աճեցումը ջերմոցների ու ջերմատների կառուցման հաշվին, այդ գործում օգտագործելով Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների փորձը։

Մեր շատ մարզերի, երկրամասերի և հանրապետությունների պրակտիկան, սոցիալիստական երկրների փորձը ցույց են տալիս, որ կարտոֆիլով ու բանջարեղենով ապահովելու խնդիրը առավել հաջող լուծել կարելի է կազմակերպական նոր ձևերի՝ տնտհաշվարկային միավորումների հիման վրա, որոնք ունեն այդ մթերքների արտադրության մասնագիտացված տնտեսություններ և դրանց պահպանման ու վերամշակման ձեռնարկություններ։ Ելնելով դրանից, հարկավոր է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարել ամենամոտ ժամանակներս առաջարկություններ ներկայացնել այդպիսի կազմակերպության ստեղծման մասին։

Մեր պլաններում մեծ տեղ է հատկացվում ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտուն։ Կարելի է գոհունակությամբ նշել, որ այդ ընդարձակ երկրամասի գյուղատնտեսության վերափոխման նախատեսված կոմպլեքսային ծրագրի իրականացումը սկսում է դրականորեն անդրադառնալ արտադրանքի արտադրության ավելացման, գյուղի աշխատավորների աշխատանքի ու կենցաղի բարելավման վրա։ Եվ, այնուամենայնիվ, ոչ սևահողային գոտու գյուղատնտեսության վերելքի աշխատանքը դեռ այն թափը և այն գործարարությունը չի ստացել, որոնք անհրաժեշտ են առաջադրված խնդիրների հաջող լուծման համար։

Դատելով հնգամյակի երկու տարվա արդյունքներից, հողերի մելիորացման և բերրիության բարձրացման, արտադրական, բնակարանային և կուլտուրկենցաղային շինարարության բազայի ստեղծման առաջադրանքների կատարումը ետ է մնում։ Քիչ բան է արված ճանապարհների կառուցման ուղղությամբ։ Դանդաղ են ընթանում աշխատանքները ընտանիքներին փոքր բնակավայրերից բարեկարգ ավաններում վերաբնակեցնելու ուղղությամբ։ Պլանների համեմատությամբ ետ է մնում վուշի վերամշակման, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունների կարողությունները մեծացնելու գործը։ Ըստ երևույթին կենտրոնական, հանրապետական և տեղական մարմինների դեռ ոչ բոլոր աշխատողներն են հասկացել ոչ սևահողային գոտու պրոբլեմների լուծման տնտեսական-քաղաքական նշանակությունը։

Այն մինիստրությունները և գերատեսչությունները, որոնց վրա դրված է ոչ սևահողային գոտում աշխատանքների կատարումը, ինչպես նաև կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պարտավոր են ամեն բան անել՝ հաղթահարելու ետ մնալը և այսուհետև ժամանակին կատարելու այդ երկրամասի գյուղատնտեսության վերափոխման միջոցառումների ամբողջ կոմպլեքսի գծով առաջադրանքները։ Իհարկե, տասնմեկերորդ հնգամյակի պլաններում նույնպես պատշաճ ուշադրություն կնվիրվի ոչ սևահողային գոտու պրոբլեմներին։

Վերջերս, ինչպես ձեզ հայտնի է, ես ուղևորվեցի Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններ։ Կասեմ անկեղծորեն, որ այդ ուղևորությունը անջնջելի տպավորություն թողեց։ Ես հնարավորություն ունեցա հանդիպելու և զրուցելու աշխատավորների, կուսակցական-տնտեսական ակտիվի հետ, անձամբ ծանոթանալու այդ խոշորագույն շրջանի բնական հարստությունների կոմպլեքսային յուրացման և արտադրողական ուժերի զարգացման աշխատանքին, շրջան, որը հարաճուն դեր է խաղում երկրի էկոնոմիկայում։

Դուք գիտեք, որ ուղևորության արդյունքների առթիվ ընդունվեց համապատասխան որոշում, տրվեցին անհրաժեշտ հանձնարարություններ։ Այսօր կցանկանայի կանգ առնել Սիբիրի և Հեռավոր Արևելքի գյուղատնտեսական արտա-

սական մթերքների վաճառքի խթանման սիստեմի հետագա կատարելագործման հարցերը ըստ երևույթին անհրաժեշտ է ուսումնասիրել պրակտիկ աշխատողների լայն մասնակցությամբ, ներգրավելով գիտական հիմնարկներին և, ասենք, մեկ տարում մշակել, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում քննարկել ու ՍՄԿԿ Կենտկոմին ներկայացնել կոնկրետ առաջարկություններ։ Հարկավոր է մշակել պլանավորման ու խթանման այնպիսի սկզբունքներ, որոնք այդ փուլում ավելի բարենպաստ պայմաններ ստեղծեին ընդլայնված վերարտադրության համար, բարելավեին պլանների հիմնավորվածությունը, ապահովեին դրանց կազմման նկատմամբ տեղերում տակավին գոյություն ունեցող սուբյեկտիվ մոտեցման վերացումը։

Հարկ է մտածել նաև իրենց աշխատանքի արդյունքների և նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման հետ սովխոզների բանվորների, կոլտնտեսականների նյութական խրախուսման կապի ուժեղացման մասին։ Կարևոր է նաև տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների դրամական պարգևատրման կարգի բարելավումը։

Գյուղատնտեսության համակողմանի ինտենսիվացումը օբյեկտիվորեն ընդլայնում և խորացնում է նրա կապերը արդյունաբերության այն ճյուղերի հետ, որոնք գյուղին մատակարարում են նյութատեխնիկական միջոցներ, վերամշակում են հումքը։ Նման պայմաններում պահանջվում է պարտնյորների ներդաշնակ, լավ համագործակցություն։ Ցավոք, առայժմ չի հաջողվել այդ հարցում մինչև վերջ ազատվել որոշ բացասական երևույթներից։

Սկզբունքային նշանակություն ունի գյուղին մատակարարվող արդյունաբերական արտադրանքի գների, ինչպես նաև գյուղտեխնիկայի և կոլտնտեսություններին ու սովխոզներին սպասարկող մի շարք այլ կազմակերպությունների ծառայությունների վարձատրման հարցը։

Վերջին տարիների փաստերը ցույց են տալիս, որ այստեղ դեռ ամեն ինչ չէ, որ կարգավորված է։

Հարկավոր է այս ամենին խորամուխ լինել, որպեսզի ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի տնտեսական փոխհարաբերությունները համապատասխանեցվեն սոցիալիստական տնտեսավարման սկզբունքներին։

Անցած տարիներին մեծ աշխատանք է կատարվել գնման գների կատարելագործման ուղղությամբ։ Սակայն առայժմ չի հաջողվել ամեն ինչ կարգավորել այնպես, ինչպես ցանկալի կլիներ։ Մթերքների որոշ տեսակների գները տակավին չեն հատուցում կոլտնտեսությունների ու սովխոզների ծախսումները։ Իսկ դա ինչի՞ է հանգեցնում։ Որքան շատ են տնտեսություններն այդպիսի մթերքներ արտադրում, այնքան շատ են նրանց վնասները։ Կամա թե ակամա դանդաղում են արտադրության աճի տեմպերը, որոշ տեղերում այդ պատճառով նույնիսկ փորձում են կրճատել արտադրությունը։ Այլևս չի կարելի վիճակը այդպես թողնել։ Իհարկե, առաջին հերթին հարկավոր է հետևողականորեն և անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Բայց միևնույն ժամանակ որոշ մթերքների համար հարկավոր է դիմել գների նաև որոշակի բարձրացման։

Այս կապակցությամբ որոշում է ընդունված 1979 թվականի հունվարի 1-ից, առանց մանրածախ գները փոփոխելու, բարձրացնել կաթի, բրդի, կարակուլի, ոչխարի մսի, կարտոֆիլի, բանջարեղենի առանձին տեսակների գնման գները, որպեսզի ապահովվի այդ արտադրանքի շահութաբեր արտադրությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Գների բարձրացման շնորհիվ տնտեսություններին վճարվող լրացուցիչ գումարը կկազմի տարեկան մոտավորապես երեք միլիարդ 200 միլիոն ռուբլի։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը պետք է շարունակի գնման գների կատարելագործման աշխատանքը։

Կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի հետագա ամրապնդման նպատակով, տնտեսական հաշվարկի հիման վրա արտադրությունը վարելու պայմանների ստեղծման նպատակով որոշված է իրագործել նաև մի շարք այլ միջոցառումներ։ Նպատակահարմար է ճանաչվել եկամտահարկի



վճարից ազատել այն կոլտնտեսություններին, որոնց շահութաբերությունը 25 տոկոսից ցածր է, ներկայիս 15 տոկոսի փոխարեն։ Բարձրացվում է տարերային աղետներից սովխոզների կորուստների փոխհատուցման չափը, այդ նպատակների համար պետական բյուջեի միջոցներից ներգրավելով մեկ միլիարդ ռուբլի։

Դուք գիտեք, որ 1972 և 1975 թվականներին երկրի շատ շրջանների կոլտնտեսություններ ու սովխոզներ չտեսնված երաշտի հետևանքով ընկան տնտեսությունը վարելու բացառիկ դժվարին պայմանների մեջ, որը չէր կարող չազդել նրանց էկոնոմիկայի վրա։ Ֆինանսական մեծ պարտք գոյացավ։ Ուստի այդ տնտեսությունների էկոնոմիկայի առողջացման նպատակով անհրաժեշտ համարվեց կոլտնտեսություններն ու սովխոզները ազատել պետբանկի յոթ միլիարդ 300 միլիոն ռուբլի գումարի վարկերի պարտքից և չորս միլիարդ ռուբլի գումարի վարկերի մարման տարկետում տալ տասներկու տարով։

Եվ մեկ էլ՝ կոլտնտեսականների կենսաթոշակի հարցը։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել մոտեցնել կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության բարելավման՝ կուսակցության XXV համագումարի նախատեսած միջոցառումների իրականացման ժամկետները։ Նախատեսված է 1980 թվականի հունվարի 1-ից կոլտնտեսականների կենսաթոշակների նվազագույն չափը բարձրացնել 40 տոկոսով։ Հաջորդ հնգամյակում, ըստ երևույթին, պետք է այն հասցնել բանվորների ու ծառայողների մակարդակին։

Կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման մեր նախատեսած միջոցառումների իրագործումը, իհարկե, կապված է պետության լրացուցիչ ծախսերի հետ։ Բայց դրանք նոր հնարավորություններ են բաց անում կոլտնտեսային ու սովխոզային արտադրության առավել արագ աճի համար և կարելի է վստահությամբ ասել, որ բազմապատիկ կհատուցվեն պետության ռեսուրսներում հացահատիկի, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների ավելացումով։

Բայց այստեղ կրկին կուզենայի ասել, որ գյուղատնտեսության մեջ փոխհատուցումը ներդրումների համեմատությամբ առայժմ անբավարար է։ Եվ մենք բոլորս՝ սկսած Կենտկոմից, նրա բաժիններից, առաջին հերթին գյուղատնտեսության բաժնից, ինչպես նաև ՍՍՀՄ Մինիստրների խորհրդից, պետպլանից, գյուղատնտեսության մինիստրությունից ու մյուս գյուղատնտեսական գերատեսչություններից և վերջացրած բոլոր աստիճանների կուսակցական ու սովետական ղեկավարներով, պետք է այս բանը խորապես գիտակցենք։ Սովխոզներում ու կոլտնտեսություններում նյութական ու ֆինանսական ռեսուրսների օգտագործումը բարելավելու, ժամանակակից պայմաններում գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու խնդիրը պետք է դրված լինի առաջին պլանում։ Այդ նպատակով անհրաժեշտ է բոլոր տնտեսական օղակներում, ներքևից մինչև վերև, է՛լ ավելի հաստատակամ պայքար ծավալել տնտեսման ու խնայողության համար, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար, անտնտեսվարության ու շռայլման փաստերի դեմ։

Միայն այդ ուղիով կարելի է հասնել գյուղում ստեղծված տնտեսական պոտենցիալի բարձր արտադրողական օգտագործմանը։

Պլենումին նախապատրաստվելու ընթացքում ծագեցին գյուղատնտեսական արտադրության կառավարումը կատարելագործելուն վերաբերող մի շարք հարցեր։ Խոսքը վերաբերում է ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության և հանրապետությունների, երկրամասերի, մարզերի ու շրջանների գյուղատնտեսական մարմինների դերի ու պատասխանատվության բարձրացմանը, նրանց իրավունքների ու պարտականությունների ընդլայնմանը, «Գյուղտեխնիկա» համամիութենական միավորմանը, կոլտնտեսությունների ու սովխոզների մատակարարման կարգավորմանը և նրանց արտադրատեխնիկական սպասարկման բարելավմանը։ Այս հարցերը արժանի են ուշադրության և կարևոր նշանակություն ունեն աշխատանքի արդյունավետության բարձրացման համար։

ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը պետք է հանրապետությունների մասնակցությամբ այս ամենն ուսումնասիրի, մշակի անհրաժեշտ առաջարկություններ և դրանք ներկայացնի ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին։

## IV. ԱՎԵԼԻ ՄԵԾ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՈՈՊԵՐԱՑՄԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Ընկերնե՛ր։ Արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, այսինքն՝ այն, ինչը մարքսիստ-լենինյանները անվանում են սոցիալիստական արտադրության ու աշխատանքի հետագա հանրայնացում, կյանքի հրամայական պահանջն են, մեր առաջընթաց շարժման վճռական հիմքերից մեկը։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն կոոպերատիվ հիման վրա գյուղատնտեսության մեջ ստեղծված ձեռնարկությունների ու միավորումների աշխատանքի, ինչպես նաև եղբայրական սոցիալիստական երկրների պրակտիկայի մանրակրկիտ ուսումնասիրությունից հետո այդ սոցիալական խոշոր երևույթին համակուսակցական, համապետական նշանակություն, պլանաչափ բնույթ է տվել։ Ինչպես գիտենք, ՍՄԿԿ Կենտկոմը 1976 թվականի մայիսին որոշում ընդունեց «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա՝ գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին»։

Կենտկոմի որոշումը լիակատար պաշտպանություն գտավ կուսակցության ու ժողովրդի մեջ և գնահատվում է որպես կարևորագույն քաղաքական, ծրագրային փաստաթուղթ։ Այդ որոշումը լենինյան կոոպերատիվ մեծ պլանի գաղափարների մարմնավորումն ու հետագա զարգացումն է կոնկրետ պայմաններում։

Որոշումը լույս տեսնելուց հետո տեղերում բեղմնավոր մեծ աշխատանք ծավալվեց։ Սահմանվեցին և գործնականում կենսագործվում են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ պլաններ։ Ներկայումս երկրում արդեն գործում են ավելի քան ութ հազար միջտնտեսային և ագրոարդյունաբերական ձեռնարկություններ ու միավորումներ։ Դա գյուղում ձեռնարկությունների նոր տիպ է, որոնք արդեն տալիս են մեծ քանակությամբ բազմազան արտադրանք։

Կոլտնտեսություններն ու սովխոզները համատեղ ջանքերով ստեղծում են մսի, կաթի արտադրության, ցեղական անասունների աճեցման, կերի արտադրության ժամանակակից ձեռնարկություններ։ Միջտնտեսային անասնապահական միավորումներում աշխատանքի արտադրողականությունը, մթերքների արտադրության աճի տեմպերը, որպես կանոն, անհամեմատ ավելի բարձր են, քան կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Կոոպերացման հիման վրա հողագործության մեջ ստեղծվում են սերմնաբուծության, բանջարեղենի, պտուղների, խաղողի և այլ կուլտուրաների արտադրության համատեղ ձեռնարկություններ։ Գյուղատնտեսության ինտենսիվացման բարձր մակարդակը աներևակայելի է առանց տեխնիկայի օգտագործման, քիմիացման ու մելիորացման ասպարեզում միջտնտեսային կոոպերացման։ Այստեղ նույնպես սկսել են ստեղծվել համապատասխան միավորումներ։ Այդ տեսակետից արժեքավոր, պրակտիկայում ստուգված փորձ կա Մոլդավիայում և երկրի ուրիշ շրջաններում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությանը զուգահեռ, միջտնտեսային կոոպերացում է արմատավորվում գյուղի կյանքի մյուս բոլոր ոլորտներում։

Այդ մեծ աշխատանքի լավ մտածված կազմակերպումը թույլ է տալիս ավելի քիչ ծախսումների գնով, ժամանակի տնտեսման գնով հասնել այն բնագծերին, որ կուսակցությունը սահմանում է գյուղատնտեսության համար։ Բայց



մենք պետք է հիշենք, որ այդ աշխատանքը հասարակ բան չէ։ Կազմակերպական, գիտատեխնիկական և տնտեսագիտական տեսակետից այդ աշխատանքը, անտարակույս, անհամեմատ ավելի բարդ է, քան, ասենք՝ կոլտնտեսությունների ամրապնդումը, այսինքն՝ այն աշխատանքը, որ մենք անցկացրինք ոչ հեռու անցյալում։

Այդ բնագավառում մեր ընդունած կուրսի իրագործումը պահանջում է ամենօրյա ուշադրություն, կոնկրետ ղեկավարում, գործնական արդյունքների մանրակրկիտ վերլուծություն։ Գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման՝ կուսակցության կուրսը ամենևին չի նշանակում ուշադրությունը թուլացնել կոլտնտեսությունների ու սովխոզների այս կամ այն ճյուղի նկատմամբ և, մանավանդ, կրճատել այդ ճյուղերը։ Դա կվնասեր ժողովրդական տնտեսությանը։

Կոլտնտեսային ու սովխոզային արտադրության միջտնտեսային կոոպերացումն ու ինտենսիվացումը գյուղատնտեսական մթերքների արտադրությունը մեծացնելու միակ առավել արդյունավետ ուղին է։ Ցավոք, փաստեր կան, երբ այդ առթիվ Կենտկոմի նախազգուշացումներից անհրաժեշտ հետևություններ չեն անում, թույլ են տալիս անասունների գլխաքանակի կրճատում և նույնիսկ լուծարքի են ենթարկում ամբողջ ֆերմաներ։ Մասնագիտացման ու կոոպերացման աշխատանքի կատարման ժամանակ գլխավոր հարցը խորապես մտածված, գիտական հիմնավորվածությունն է, արտադրական բարձր արդյունքը։

Դրա հետ միասին, մեզ չի կարող չանհանգստացնել այն, որ Կենտկոմի որոշման կատարման աշխատանքը դեռևս ամենուրեք չէ, որ պահանջված չափով ծավալվել է։ Եթե նայենք գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման աշխատանքի թերությունների ու բացասական երևույթների արմատներին, ապա դժվար չէ նկատել, որ այստեղ գլխավորը ըստ երևույթին այն է, որ մեր կադրերի մեջ դեռևս քիչ չեն այնպիսինները, որոնք տակավին չեն յուրացրել այդ ամբողջ աշխատանքի ոչ կենսական պահանջմունքը, ոչ էլ խորագույն իմաստը։ Ոմանք իրենց ուզած ձևով են մեկնաբանում այդ գործում հապճեպության անթույլատրելիության վերաբերյալ Կենտկոմի նախազգուշացումը։ Նրանք դա հասկացել են որպես հնարավորություն՝ աշխատանքը երկար տարիներով ձգձգելու համար։ Դա սխալ է։ Որոշման մեջ խոսքը վերաբերում է ոչ թե ժամկետներին, այլ աշխատանքի որակին։ Գործը լավ կատարել՝ չի նշանակում երկար ժամանակում կատարել։

Միջտնտեսային կոոպերացումը մի մեծ ու բարդ օբյեկտիվ պրոցես է։ Այն չի կարելի կասեցնել, ինչպես և չի կարելի արագացնել։ Աշխատանքը պետք է տարվի պլանաչափորեն, խելամտորեն, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման այլ միջոցառումների հետ կոմպլեքս կազմած։ Այս գործը, իհարկե, կամավոր է, և մենք խստիվ կհետևենք այդ սկզբունքին։ Բայց կամավորությունն ու ինքնահոսը ոչ թե հարազատ եղբայրներ են, այլ հակոտնյաներ։

Հարկ է ոչ խրախուսական խոսքեր ասել նաև առանձին միութենական մարմինների հասցեին։ Ես ամենից առաջ նկատի ունեմ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը և ՍՍՀՄ պետպլանին։ Նրանք դեռևս չեն դարձել այն կենտրոնները, որոնք կոորդինացնում և ուղղություն են տալիս երկրում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման ողջ աշխատանքին։ Երբեմն նեղ գերատեսչական դիրք են բռնում մինիստրությունների և գերատեսչությունների, մասնավորապես սննդարդյունաբերության և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունների առանձին ղեկավար աշխատողներ։ Փոխանակ գյուղատնտեսական մարմինների հետ ձեռք-ձեռքի տված ակտիվորեն աշխատեն զարգացնելու արտադրական կոոպերացումը, նրանք կասեցնում են այդ առաջադիմական պրոցեսի ընթացքը, երբեմն իրենց տնտեսություններին, մեղմ ասած, խորհուրդ չեն տալիս մտնելու միջտնտեսային կոոպերացման մեջ, կամ ձգտում են ստեղծել առանձնացած միավորումներ։

Այսպիսիք են այն առավել էական հետևություններն ու դիտողությունները, որ անհրաժեշտ է հաշվի առնել ՍՄԿԿ Կենտկոմի որոշումն իրականացնելու հե-

տնդա աշխատանքում։ Միևնույն ժամանակ, ինչպես հուշում է փորձը, անցկացվող աշխատանքի որոշ սկզբունքային դրույթների վերաբերյալ անհրաժեշտ են ավելի կոնկրետ հանձնարարականներ։ Հատուկ ուշադրություն և լուրջ մշակում է պահանջում միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա մասնագիտացման ու համակենտրոնացման կազմակերպական լավագույն ձևերի ընտրությունը՝ գյուղատնտեսության տարբեր ճյուղերում և ուղղություններում կիրառելու համար։ Մեզ հարկավոր են ոչ թե ամեն կարգի միավորումներ, այլ այնպիսինները, որոնք իրոք նոր աստիճանի են բարձրացնում արտադրության ու աշխատանքի սոցիալիստական հանրայնացումը, խարսխվում են գիտության, տեխնիկայի ու տեխնոլոգիայի նորագույն նվաճումների վրա, ապահովում են ամենաբարձր արտադրողականությունը և տալիս են առավելագույն չափով էժան արտադրանք։

Մեր սեփական պրակտիկան ձևերի մեծ բազմազանություն է տալիս։ Հարկավոր է հանգամանորեն ուսումնասիրել և դրանցից ընտրել յուրաքանչյուր տվյալ ճյուղի համար առավել ընդունելի, առավել արդյունավետ ձևը։

Մի խոսքով, ընկերներ, մենք պետք է ակտիվորեն գործնական ռելսերի վրա փոխադրենք գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման աշխատանքը։ Միջտնտեսային կոոպերացման հարցերը չպետք է հանվեն գյուղական կուսակցական կազմակերպությունների, շրջանային, մարզային ու հանրապետական ղեկավար մարմինների օրակարգից։ Մենք բոլորս պետք է տոգորվենք այն խոր համոզմունքով, որ միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման միջոցով մեր գյուղատնտեսությունը, օգտագործելով սոցիալիստական սիստեմի առավելությունները, կկարողանա մեծապես արագացնել իր զարգացման տեմպերը, զգալիորեն ավելի լրիվ բավարարել պարենամթերքի և արդյունաբերական հումքի ասպարեզում երկրի հարաճուն պահանջմունքները։

## V. ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՅՈՒՂՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսության հետագա վերելքի մեծ ծրագրի հաջող իրականացումը ուղղակիորեն առնչված է կապիտալ շինարարության կազմակերպման հետ։ Գյուղում կատարվող շինարարության զարգացման նկատմամբ հոգատարությունը այժմ դարձել է կուսակցության ագրարային քաղաքականության կարևորագույն բաղկացուցիչ մասը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո քիչ բան չի արվել գյուղական շինարարության, որպես ժողովրդական տնտեսության նոր ճյուղի, ընդլայնման և նրա մակարդակի բարձրացման համար։ Կհիշեցնեմ, որ ստեղծվել են մասնագիտացված պետական շինարարական կազմակերպություններ, որոնք միավորված են ՍՍՀՄ գյուղական շինարարության մինիստրության մեջ։ Զարգացվում են միջկոլտնտեսային շինարարական կազմակերպություններ՝ մեզանում արդեն ստեղծված սիստեմի կարողությունները։

Վերջին տասը տարում գյուղական շինարարության արտադրական բազայի ստեղծման գործում պետական և կոլտնտեսային միջոցներից ներդրվել է գրեթե 16 միլիարդ ռուբլի։ Այժմ գյուղական օբյեկտների կառուցման վրա աշխատում են մոտավորապես երեք միլիոն շինարար-բանվորներ։ Դա գյուղում բանվոր դասակարգի նոր մեծ ջոկատ է։ Գյուղական շինարարության մինիստրությունը և միջկոլտնտեսային շինարարական կազմակերպությունները արդեն կատարում են տարեկան ավելի քան տասը միլիարդ ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ։



Իսկ դա նշանակում է, որ տարեցտարի գյուղում գործարկվում են ավելի շատ նոր օբյեկտներ՝ անասնապահական ֆերմաներ ու թռչնաֆաբրիկաներ, նորոգման ձեռնարկություններ և ագրոքիմիական կենտրոններ, էլևատորներ և համակցված կերի գործարաններ, սերմերի, կարտոֆիլի և բանջարեղենի պահեստներ, ջերմատնային կոմբինատներ։

Գյուղական շինարարությունն այսօր շատ կարևոր օղակ է նաև սոցիալական պրոբլեմների լուծման գործում։ Կուսակցությունը հաստատորեն ընթանում է գյուղում բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների արմատական բարելավման կուրսով։ Ինչպես ես արդեն վերջերս ասել եմ, գյուղական վայրերում անցած 13 տարում կառուցվել են բնակելի տներ՝ 450 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով։ Կհիշեցնեմ, որ նախապատերազմյան 1940 թվականին նույնքան էր մեր երկրի բոլոր քաղաքների բնակարանային ֆոնդը։ Գյուղում, ինչպես որ քաղաքներում, բնակարանային շինարարությունը փոխադրվում է ինդուստրիալ հիմքի վրա։ Գյուղական ավանների կառուցապատումն սկսում է իրականացվել կոմպլեքսայնորեն, մշակված գլխավոր հատակագծերի համաձայն։ Բնակելի տների հետ մեկտեղ կառուցվում են հասարակական նշանակություն ունեցող ժամանակակից օբյեկտներ։ Այժմ արդեն գյուղում հաճախ ես տեսնում արդիական առևտրական կենտրոն, կենցաղի լավ սարքավորված տուն, ճաշարան, հարմարավետ սրճարան։

Դեռ ոչ հեռու անցյալում գյուղում մանկապարտեզների ու մանկամսուրների կառուցումը շատ հազվադեպ բան էր, բացի դրանից դրանք, որպես կանոն, տեղավորվում էին պրիմիտիվ շենքերում։ 1965 թվականից հետո տիպային նախագծերով կառուցվել են նախադպրոցական հիմնարկներ գրեթե երկու միլիոն երեխաների համար, հանրակրթական դպրոցներ՝ 11 միլիոն սովորողների համար, ակումբներ և կուլտուրայի պալատներ՝ ութ միլիոն տեղ ընդհանուր տարողությամբ, առողջապահության, կոմունալ սպասարկման շատ օբյեկտներ, սպորտային կառուցվածքներ։

Բայց և այնպես գյուղական շինարարությունը առայժմ, ես կասեի, մնում է նեղ տեղ։ Չնայած ձեռնարկված միջոցներին, դեռևս թույլ է գյուղական վայրերում կատարվող շինարարության արտադրական բազան։ Կոլտնտեսությունները և սովխոզները շինարարական աշխատանքների ավելի քան մեկ երրորդը կատարում են տնտեսական եղանակով, իսկ դա մեծապես իջեցնում է շինարարության որակը, տանում դեպի ժամկետների ձգձգում և շինարարության թանկացում։ Կապիտալ ներդրումները մեծ թվով կառույցների վրա ցրելու հետևանքով գյուղատնտեսության մեջ կարողությունների գործարկման պլանները չեն կատարվում, որը տանում է դեպի անավարտ շինարարության աճ։

Նախագծման և շինարարության ասպարեզում թույլ են հաշվի առնվում գյուղի յուրահատուկ պայմանները, հաճախ մեխանիկորեն են ներդրվում արդյունաբերական տարրերն ու կոնստրուկցիաները։ Ինչպես ես արդեն ասել եմ, չափազանց թանկացել է նոր շինարարությունը։ Վերջին տասը տարում, օրինակ , կաթնային ֆերմաներում մեկ անասնատեղի արժեքը մեծացել է ավելի քան երեք անգամ,խոզաբուծման կոմպլեքսներում՝ չորս անգամ։ Հաճախակի են դեպքերը, երբ շինարարության մեջ օգտագործվում են ծանրաքաշ նյութեր, չարդարացված կերպով բարդացվում է էներգետիկան, օբյեկտները ծանրաբեռնվում են մեծածավալ սարքավորումներով։ Մի քանի նոր անասնապահական ֆերմաներում և կոմպլեքսներում մեկ կովին ընկնում է մինչև 8 խորանարդ մետր բետոն, մեկ հորթին՝ մինչև 400 կիլոգրամ մետաղ։ Արդյոք դա մի քիչ ծանր չէ՞ կենդանիների համար։

Գյուղական կառույցների համար կատարվող նախագծման գործում կան նաև լուրջ վրիպումներ, թույլ են հաշվի առնվում գոտիների առանձնահատկությունները, որ վերջին հաշվով զգալի չափով կանխորոշում է կապիտալ ներդրումների նվազ արդյունավետությունը։ Բացասական ազդեցություն է գործում տնտեսական խթանման , շինարարների և նախագծողների աշխատանքի գնահատման այժմ գործող կարգը։ Այն նրանց մղում է ոչ թե դեպի օբյեկտների էժանացում, այլ թանկացում։

Ինչպես շինարարների, այնպես էլ տնտեսությունների կողմից շատ դանդատներ ու կշտամբանքներ են հարուցում կառույցները սարքավորումներով և նյութերով ապահովելու հարցերը։ Այստեղ շատ են շփոթն ու խառնաշփոթությունը։ Տնտեսությունների ղեկավարները կառույցների համար լիակոմպլեկտ սարքավորումներ ստանալու համար հարկադրված են լինում հաճախ անցնել տասնյակ տարբեր ինստանցիաներ, սուրհանդակներ ուղարկել երկրի տարբեր կողմերը։

Եթե վերցնելու լինենք գյուղերում կատարվող բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությունը և կամ տափաստանային շրջանների ջրամատակարարումը, ապա այստեղ թերություններ ավելի շատ կան։ Շատ շրջաններում, մարզերում և հանրապետություններում սիստեմատիկաբար չեն կատարվում բնակարանների, մանկական հիմնարկների և գյուղական բնակիչների կենցաղային, բժշկական ու կուլտուրական սպասարկման բարելավման հետ կապված մյուս օբյեկտների գործարկման պլանները։

Մենք պետք է ավելի կտրուկ շրջադարձ կատարենք դեպի գյուղում կատարվող շինարարությունը և գյուղի աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը։ Նպատակահարմար է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարել մինչև 1979 թվականի սկզբները մշակել գյուղում կատարվող արտադրական, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության կազմակերպման ամբողջ գործը բարելավելու կոնկրետ հեռանկարային միջոցառումներ, մեծացնելով միջոցների հատկացումը այդ նպատակներին։

Ծրագիրը պետք է ընդգրկի գյուղական շինարարության ինդուստրիալ բազայի արագ զարգացման հետ առնչվող հարցերի մի ամբողջ կոմպլեքսի լուծումը։ Խոսքը վերաբերում է գյուղական խոշոր շինարարական կոմբինատների ստեղծմանը, որոնք կոչված են թողարկելու գործարանային բարձր պատրաստության թեթև ինդուստրիալ կոնստրուկցիաների կոմպլեկտներ և դրանցից գործարկման պատրաստ արտադրական շենքերի կառուցմանը՝ պատվիրատուին հանձնելով հանդերձ, հատուկ շինարարական ու մոնտաժային աշխատանքների կատարման ստորաբաժանումների ստեղծմանը, բնակարանային շինարարությունն ուժեղացնելու միջոցառումներին, գյուղական տնաշինական կոմբինատների ցանցի կազմակերպմանը, փայտե պանելային տնաշինության զարգացմանը։ Հաշվի առնելով գյուղում կադրերի և ամենից առաջ մեխանիզատորների ու մասնագետների կադրերի ամրացման կարևորությունը, կարելի կլիներ կատարել ոչ արտադրողական շինարարության ընդհանուր միջոցների որոշ վերաբաշխում հօգուտ գյուղի։

Անհրաժեշտ է ապահովել ճիշտ մոտեցումը գյուղական շինարարությանը, հաշվի առնելով գյուղական բնակչության կյանքի առանձնահատկություններն ու շահերը։

Ըստ երևույթին, հարկավոր է գյուղական շինարարությունը կողմնորոշել դեպի ընտանիքների ապահովումը, որպես կանոն, առանձին բարեկարգ տներով, որոնք ունենան տնամերձ հողամասեր և բակային շինություններ տնային անասունների, թռչունների և անձնական տրանսպորտային միջոցների համար։

Շատ կարևոր է ապահովել անհատական և կոոպերատիվ բնակարանային շինարարության զարգացումը՝ ներգրավելով գյուղական բնակչության միջոցները։ Այս կապակցությամբ ընդունվել է որոշում, որով նախատեսված են անհատական բնակարանային շինարարությունը արտոնյալ երկարաժամկետ վարկերով խթանելու միջոցառումներ։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել նոր շինարարությունը կոլտնտեսություններում և սովխոզներում եղած արտադրական օբյեկտների, առաջին հերթին անասնապահական ֆերմաների վերակառուցման և մոդեռնացման հետ զուգակցելու վրա։ Ինչպես հայտնի է, նախորդ տարիներին կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ քանակությամբ ֆունդամենտալ, տիպային շենքեր են



կառուցել։ Դրանք հարկավոր է վերակառուցել, համարեցնել ժամանակակից պահանջներին։ Այդպիսի ուղին, ինչպես բազմիցս նշվել է, հնարավորություն է տալիս ավելի պակաս ծախսումներով անցնել արտադրության առաջադիմական տեխնոլոգիաներին։ Սակայն այդ գործը պատշաճ թափ չի ստանում։ Նախագծողները դրանից խույս են տալիս, շինարարները այդ աշխատանքը համարում են ոչ շահավետ, պլանային ու մատակարարող կազմակերպությունները վերակառուցման նպատակների համար սարքավորումներ չեն նախատեսում։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և համապատասխան գերատեսչությունները պետք է այդ գործում անհրաժեշտ կարգ ու կանոն հաստատեն, ստեղծեն այնպիսի պայմաններ, որոնք խթանեն գյուղական արտադրական օբյեկտների վերակառուցման աշխատանքը։

Կկամենայի կանգ առնել նաև այնպիսի մի կարևոր հարցի վրա, ինչպիսին է ճանապարհային շինարարությունը։ Գյուղական արտադրության հետագա վերելքը, գյուղական բնակչության կենսամակարդակի բարձրացումը ուղղակիորեն առնչված են ավտոմոբիլային ճանապարհների՝ գյուղի գլխավոր տրանսպորտային, կարելի է ասել, կենսական զարկերակների ցանցի զարգացման հետ։ Բայց լավ ճանապարհները առայժմ դեռ քիչ են։ Չափից դուրս մեծ են գյուղատնտեսության կորուստները ճանապարհազրկության պատճառով։

ՍՍՀՄ պետպլանը, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդները պետք է հոգ տանեն, որ ճանապարհային շինարարությունը համապատասխան տեղ գրավի տնտեսական և սոցիալական զարգացման պլաններում, ամրապնդվի ֆինանսական և նյութական անհրաժեշտ ռեսուրսներով։

Գյուղական շինարարության մեջ, ինչպես որ ամենուրեք, կադրերի նկատմամբ հոգատարությունը առաջնահերթ նշանակություն ունի։ Երկրի բարձրագույն ուսումնական հաստատությունները ոչ քիչ թվով լավ մասնագետներ են պատրաստում արդյունաբերական և քաղաքային շինարարության համար։ Բայց գյուղում նախագծումն ու շինարարությունը ունեն իրենց յուրահատկությունները։ Ճիշտ կլիներ, որ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը ավելացներ շինարար ինժեներների ու ճարտարապետների պատրաստումը, հատկապես գյուղի կարիքների համար , կենտրոնական և տեղական մարմինները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն պրոֆտեխնիկական կրթության սիստեմում գյուղի համար բարձրորակ շինարար բանվորների պատրաստմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը։

Քաջ հայտնի է, թե ինչպիսի մեծ դեր է խաղում քաղաքների և արդյունաբերական կենտրոնների շեֆական օգնությունը գյուղին։ Վերջին տարիների պրակտիկան տվել է այդ աշխատանքի շատ արժեքավոր ձևեր։ Ես նկատի ունեմ ջերմատնային կոմբինատների, անասնապահական ֆերմաների, կերի արտադրամասերի, բնակարանների և կուլտուր-կենցաղային օբյեկտների նախագծման ու կառուցման գործում ցույց տրվող օգնությունը։ Որոշ ձեռնարկություններ գյուղի կարիքների համար արտադրում են պակասող մեքենաներ, մեխանիզմներ ու պահեստամասեր, պատրաստում գյուղական մեխանիզատորների կադրեր։ Մեծ աշխատանք է կատարվում դաշտերի և ֆերմաների աշխատավորների կուլտուրական սպասարկումը բարելավելու ուղղությամբ և այլն։

Այդ ուղղությամբ շատ բան են անում Մոսկվա քաղաքի և Մոսկվայի մարզի, Լենինգրադի, Սվերդլովսկի, Կիևի, Դնեպրոպետրովսկի, Վոլգոգրադի, Մինսկի, Տաշքենդի կուսակցական կազմակերպությունները։ Կուսակցական այդ կազմակերպությունների նախաձեռնությունն ու աշխատանքի փորձը արժանի են, որպեսզի այն պաշտպանեն մյուս քաղաքների և արդյունաբերական կենտրոնների կուսակցական կոմիտեները։

# VI. ԳՅՈՒՂՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարի նոր էտապին պետք է համապատասխանեն թե՛ կուսակցական ղեկավարման առավել բարձր մակարդակը, թե՛ մասսաների մեջ կատարվող աշխատանքի առավել կատարյալ մեթոդները։ Մենք բոլոր հիմքերն ունենք ակնկալելու, որ կուսակցական կազմակերպությունները արժանավայել կերպով կկատարեն այդ խնդիրները։

Գյուղում մեր կուսակցության հեղինակությունը մշտապես աճում և ամրապնդվում է։ Որպես կուսակցության, նրա տեղական կազմակերպությունների մեծ հաջողություն մենք պետք է նշենք, որ Կենտկոմի մարտյան պլենումի ժամանակվանից ի վեր կուսակցական ուժերը գյուղում զգալիորեն աճել են։ Այսօր գյուղում կան 5 միլիոն 800 հազար կոմունիստներ, որը 1 միլիոն 200 հազարով ավելի է, քան 1965 թվականին։ Կուսակցության 2 միլիոն 700 հազար անդամներ և անդամության թեկնածուներ անմիջականորեն աշխատում են գյուղատնտեսական արտադրության մեջ, գերազանցապես նրա հիմնական տեղամասերում։

Մի խոսքով, գյուղական կոմունիստները մարտունակ խոշոր բանակ են։ Դրա հիմքը սկզբնական կուսակցական կազմակերպություններն են։ Հենց նրանց վրա է ընկած անմիջական պատասխանատվությունը արտադրական և դաստիարակչական խնդիրների լուծման համար։ Հենց նրանց հաստատակամ ու նպատակասլաց աշխատանքից, մարդկանց ոգևորելու և կազմակերպելու հմտությունից է վճռական չափով կախված կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական և արդյունավետ կիրառումը։

Անցած տարիների փորձը դարձյալ ու դարձյալ հաստատեց, թե որքան ճիշտ ու հեռատես կերպով վարվեց Կենտրոնական կոմիտեն, վերականգնելով և ամրապնդելով կուսակցության շրջկոմները՝ որպես գյուղում գլխավոր քաղաքական մարմիններ, գյուղի էկոնոմիկայի, սոցիալական և կուլտուրական կյանքի կուսակցական ղեկավարման հեղինակավոր օղակներ։ Այժմ դրանց թիվը երեք հազարից ավելի է։ Կուսակցության շրջկոմների գործունեության մեջ ավելի ու ավելի է հաստատվում իսկական կուսակցական ստեղծագործական ոճը։ Մենք այսուհետ ևս պետք է հոգ տանենք գյուղական շրջկոմների դերի բարձրացման մասին, որովհետև դա մեր ընդհանուր կուսակցական գործն է։

Գյուղատնտեսության ղեկավարման ուղղությամբ կազմակերպչական մեծ աշխատանք են կատարում մարզային և երկրամասային կուսակցական կոմիտեները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները։ Նրանք կուտակել են կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման, կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, գյուղի բոլոր աշխատավորների ջանքերը գյուղատնտեսական արտադրության զարգացման հանգուցային պրոբլեմների լուծման և նրա արդյունավետության բարձրացման համար մոբիլիզացնելու նշանակալի փորձ։

Սակայն մենք ինքնաքննադատաբար վարված չէինք լինի, եթե ասեինք, որ կուսակցական բոլոր կոմիտեների աշխատանքը համապատասխանում է արդի պահանջներին։ Հարկ է խոստովանել, որ որոշ կուսակցական կոմիտեներ բավարար չափով խորամուխ չեն լինում գյուղում տեղի ունեցող տնտեսական ու սոցիալական պրոցեսներում, չեն տեսնում այն բոլոր նոր հնարավորությունները, որոնք ստեղծված են գյուղատնտեսական արտադրության առավել արագ աճի համար, միշտ չէ, որ օբյեկտիվորեն են գնահատում իրավիճակը, երբեմն չափազանցնում են ձեռք բերված արդյունքները։



Ինչպես գիտեք, վերջերս կուսակցության Կենտրոնական կոմիտեն քննության առավ կուսակցության Տամբովի մարզկոմի աշխատանքի հարցը։ Նշվեցին խոշոր թերություններ մարզի գյուղատնտեսության զարգացման գործում, կուսակցության մարզկոմի աշխատանքի ոճի ու մեթոդների մեջ։ Մարզկոմի կողմից ցույց տրվող ղեկավարումը հաճախ իրականացվում էր կամայական մեթոդներով, երբեմն անտեսվում էր ակտիվի և մասնագետների կարծիքը, դրսևորվում էին վարչարարության տարրեր։ Մարզկոմը թույլ էր հենվում կուսակցության շրջանային կոմիտեների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը այստեղ նսեմացված էին։

Նման փաստերը, իհարկե, մեզանում եզակի են։ Բայց նույնիսկ որպես եզակի դրանք ժամանակակից պայմաններում միանգամայն անթույլատրելի և անհանդուրժելի են։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն չէր կարող հաշտվել նման վիճակի հետ և, ինչպես ձեզ հայտնի է, անհրաժեշտ կազմակերպական հետևություններ արեց։

Կենտկոմի 1977 թվականի դեկտեմբերյան պլենումում ամենայն սրությամբ դրվեց կադրերի կարգապահության, նրանց բարձր պատասխանատվության հարցը։ Անհրաժեշտություն է առաջանում այդ մասին ասել նաև այսօր։ Դա մեր ամբողջ գործունեության կարևորագույն հիմքերից մեկն է։ Վերցնենք, օրինակ, արտադրանքի մթերումների պլանների կատարումը։

Ամեն տարի, անկախ այն բանից, թե տարին լավն է, թե վատ, յուրաքանչյուր մարզում, երկրամասում, հանրապետությունում լինում են կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք չեն կատարում պետությանը այս կամ այն արտադրանքի վաճառքի պլանները։ Այստեղ գլխավոր պատճառը պատասխանատվության պակասն է, կադրերի նկատմամբ պահանջկոտության նվազեցումը։ Հաճախ պատճառ են բերում դժվարությունները, օբյեկտիվ պատճառները, բայց որքան էլ դժվար լինի, ոչ ոքի իրավունք չի տրված վնաս հասցնել ընդհանուր շահերին, խախտել պետական կարգապահությունը։ Մարզկոմները, երկրկոմները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները պետք է ուժեղացնեն պայքարը նման երևույթների դեմ, վճռականորեն արմատախիլ անեն դրանք ծնող բոլոր պատճառները, ավելի լավ հիմքերի վրա դնեն կուսակցական, պետական և հասարակական վերահսկողության բոլոր ձևերը։

Գյուղատնտեսության կուսակցական ղեկավարման գլխավոր պրոբլեմը եղել և մնում է կադրերի հետ կատարվող աշխատանքը։ Այդ բնագավառում, ինչպես ես արդեն ասացի, քիչ բան չի արված, բայց դեռևս բնավ էլ ամեն բան չի արված։ Մեզ առանձնապես անհանգստացնում է միջին օղակի ղեկավարների՝ բաժանմունքների կառավարիչների, բրիգադավարների, ֆերմաների վարիչների հարցը։ Այստեղ պաշտոնների առայժմ 40 տոկոսն են զբաղեցնում գյուղատնտեսության մասնագետները։ Այժմ գյուղում կրթված մարդիկ շատ կան, և հարկավոր է մշտապես որոնել, գտնել ու նրանցից աճեցնել արտադրության լավ կազմակերպիչներ, կուսակցական կազմակերպությունները պարտավոր են ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել աշխատողների այդ կատեգորիայի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության նկատմամբ։

Եվ էլի մեխանիզատորների կադրերի մասին։ Երկրում ստեղծված է դրանց պատրաստման լայն սիստեմ։ Ցավոք, պատրաստված մեխանիզատորների թվից կոլտնտեսություններում և սովխոզներում ամրանում են բնավ ոչ բոլորը։

Մեխանիզատորական կադրերի պատրաստման և ամրացման պրոբլեմներով մենք մշտապես զբաղվում ենք, բայց լիակատար լուծում դեռ չենք գտնել։ Այդ հարցի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այստեղ ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում աշխատանքի և կենցաղի պայմանները, մարդկաց հոգևոր պահանջմունքների բավարարումը։ Տնտեսական ղեկավարները, կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները պետք է ավելի լրիվ օգտագործեն դրա համար յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում եղած մեծ հնարավորությունները։

Ոչ միայն արտադրությունը, այլև մարդկանց փոխհարաբերությունները, նրանց կենցաղը, կուլտուրան, հոգեբանությունը, գիտակցությունը կուսակցության մշտական ուշադրության առարկան են։ Այսօր կարևորագույն խնդիրներից մեկը գյուղատնտեսական արտադրության միացումն է կուլտուրայի հետ, որը բառիս ամենալայն իմաստով ըմբռնվում է որպես աշխատանքի, կենցաղի, մարդկային հարաբերությունների կուլտուրա։ Դուք գիտեք, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն XXV համագումարից հետո քննության առավ գյուղում կուլտուրայի հիմնարկների նյութական բազան ամրապնդելու, հանրակրթական դպրոցի աշխատանքը կատարելագործելու, պրոֆեսիոնալ-տեխնիկական պատրաստությունը բարելավելու հետ կապված հարցերը։

Այսօր հարցը կարող է դրվել միայն այսպես՝ տնտեսությունների ղեկավարները, կուսակցական կոմիտեները, սովետական և արհմիութենական մարմինները գյուղի աշխատավորների բնակարանային ու կենցաղային կարիքների, նրանց աճած կուլտուրական պահանջմունքների բավարարման նկատմամբ պակաս հոգատարություն չպետք է ցուցաբերեն, քան արտադրության զարգացման նկատմամբ։

Գյուղատնտեսության նոր վերելքի խնդիրը, Լենինի խոսքերով ասած՝ «Չի կարող լուծվել առանձին ոգեշնչման հերոսությամբ, այլ պահանջում է մասսայական և առօրյա աշխատանքի ամենաերկարատև, ամենահամառ, ամենադժվար հերոսություն»[1]։

Եվ միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց մասսայական ու առօրյա աշխատանքի այդ հերոսությունն իր վառ դրսևորումն է գտնում մասսաների կոնկրետ պրակտիկ գործերի, նրանց աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության, սոցիալիստական մրցության հսկայական թափի մեջ։ Մեզ համար կարևոր են նաև աշխատանքային մրցության կոնկրետ տնտեսական արդյունքները և նրանում առկա դաստիարակչական մեծ հնարավորությունները։

Մրցության վերջնական տնտեսական նպատակն այն է, որ արտադրվի ավելի շատ և ավելի էժան հացահատիկ, միս, կաթ և այլ արտադրանք։ Ընդ որում, կարևոր է իմանալ, թե հատկապես ինչի հաշվին են ձեռք բերվել ամենալավ արդյունքները, ի՞նչ կոնկրետ պատճառների շնորհիվ են ոմանք առաջ անցել, մյուսները մնացել են նախկին մակարդակի վրա, իսկ երրորդները ետ են մնացել։ Ինչո՞ւ, վերջապես, այն, ինչ հնարավոր է մի կոլտնտեսությունում, կամ սովխոզում, ձեռք չի բերվել մյուսում։ Ինչո՞ւ դեռևս այդքան մեծ է տատանումների ամպլիտուդը տնտեսավարման արդյունքների մեջ։

Մի խոսքով, այստեղ գործունեության լայն ասպարեզ կա կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների, մեր մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի համար, բոլոր նրանց համար, ովքեր կարող են և պետք է գիտությամբ ու կյանքով, ստուգված իրենց փորձի մասնիկը ներդնել։ Մենք պետք է ըստ ամենայնի պաշտպանենք գյուղի աշխատավորների նախաձեռնությունը, այնպիսի նախաձեռնություններ, ինչպիսին է հողագործների և անասնապահների շարժումը ամենաբարձր բերքի և անասնապահության ամենաբարձր մթերատվության հասնելու համար, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար. մեխանիզատորների շարժումը՝ մեքենաների տեխնիկական հնարավորությունների առավելագույն օգտագործման համար. կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվների շարժումը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Մրցությունը գլխավորելու են կոչված գյուղի կոմունիստները։ Կարևոր է, որ գյուղի բոլոր կուսկազմակերպություններն ու կոմունիստները ամենից առաջ իրենք խորապես իմաստավորեն արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության խնդիրների էությունը, դրանց լուծման ուղիները։ Նրանք կոչված են կուսակցական համոզման և կոմունիստական դաստիարակության մեթոդներով այդ խնդիրների ըմբռնումով զինել միլիոնավոր մարդկանց, ոգեշնչել նրանց, ջանքերը կենտրոնացնել գյուղատնտեսության զարգացման՝ կուսակցության կողմից նախատեսված ծրագրի կենսագործման վրա։ Յուրաքանչյուր կոմունիստ պետք է ցույց տա անձնվեր աշխատանքի օրինակ, լինի հմուտ կազմակերպիչ, առաջավոր փորձի տարածող, ընդհանուր գործի համար, կոլեկտիվի համերաշխ, անձնվեր և ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ ստեղծելու համար սրտացավ վերաբերմունք ցուցաբերող մարդ։ Կոմունիստը չի կարող անցնել և չպետք է անցնի գործի նկատմամբ անտարբեր վերաբերմունքի դեպքերի կողքով, նա պարտավոր է անհանդուրժող լինել անտնտեսվարության, հարբեցողության, գործալքությունների և սովետական մարդու պատիվն ու արժանապատվությունն արատավորող բոլոր մյուս զանցանքների փաստերի նկատմամբ։

Ընկերնե՛ր։ Մեր պետական գերբի վրա պատկերված են ցորենի ոսկե հասկեր։ Եվ դա պատահական չէ։ Մեր հացը գյուղացու, բանվորի և մտավորականի միացյալ աշխատանքի արգասիքն է։ Գյուղատնտեսության հետագա վերելքը ամբողջ երկրի տնտեսական համակողմանի առաջընթացի անկապտելի մասն է։ Էկոնոմիկան, ինչպես ընդգծել է Լենինը, շոշափում է «հարյուր միլիոնների մարդկային կյանքի ամենախոր հիմքերը»։ Իսկ այնտեղ, որտեղ խոսքը վերաբերում է միլիոնավոր մարդկանց, նրանց կյանքի, աշխատանքի ու կենցաղի պայմաններին, կոմունիստների համար սկսվում է ամենալուրջ քաղաքականությունը, այդտեղով է անցնում նրանց կազմակերպչական և գաղափարաքաղաքական աշխատանքի գլխավոր գիծը։

Գյուղատնտեսության բնագավառում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից առաջ քաշվող մեծ և բարդ խնդիրների լուծումը թույլ կտա նոր աստիճանի բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը։ Դա է պլենումի քննարկմանը ներկայացված միջոցառումների իմաստը։ Նախատեսված նպատակների իրագործման համար կպահանջվեն մասսաների լարված ջանքերը, եռանդն ու ստեղծագործական նախաձեռնությունը, կուսակցության ամբողջ հարուստ փորձը, նրա կադրերի գիտելիքներն ու կազմակերպչական արվեստը։

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ կուսակցական կազմակերպությունները, կոմունիստները, կոմերիտականները, քաղաքի և գյուղի աշխատավորները ամեն ինչ կանեն՝ կենսագործելու պլենումի որոշումները։ **(Բուռն, երկարատև ծափահարություններ)**։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 518։

# ԱՆՄԱՀ Է ՔՈ ՍԽՐԱՆՔԸ, ՄԻ՛ՆՍԿ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՀԵՐՈՍ ՔԱՂԱՔԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆ ԵՎ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» ՄԵԴԱԼ ՀԱՆՁՆԵԼՈՒՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

1978թ. հունիսի 25-ին

Հարգելի ընկերնե՛ր:

Թանկագին մինսկցիներ:

Ինձ վրա պատասխանատու և հաճելի առաքելություն է դրված՝ Սովետական Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկին, որն արժանացել է «Հերոս քաղաք» պատվավոր կոչման, հանձնել հայրենիքի բարձրագույն պարգևները՝ Լենինի շքանշան և «Ոսկե աստղ» մեդալ:

Թույլ տվեք այս հանդիսավոր, այս տոնական օրը ձեզ և հանրապետության բոլոր աշխատավորներին ի սրտե շնորհավորել բարձր պարգևի առթիվ:

Ընդունեցեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ամենաջերմ շնորհավորանքները:

Սովետական բոլոր մարդիկ այսօր իրենց շնորհավորանքներն ու ողջույններն են հղում պանծալի բելոռուս ժողովրդին, խիզախ և տոկուն, աշխատասեր ու համեստ ժողովրդին, որն օժտված է ինտերնացիոնալ պարտքի զարգացած զգացումով, միասնական շարքում վստահորեն ընթանում է մեր հայրենիքի բոլոր ազգերի և ազգությունների հետ:

Քաղաքներին տրվող պարգևները, ինչ խոսք, մարդկանց տրվող պարգևներ են: Մարդիկ են ստեղծում քաղաքներ: Մարդիկ են դրանք պաշտպանում: Մարդիկ են դրանք բարձրացնում փլատակներից: Մարդիկ են բարեկարգում քաղաքներն ու վերափոխում դրանք:

Ձեր քաղաքը հեղափոխական հաստատուն ավանդույթներ ունի: Այստեղ է կայացել ՌՍԴԲԿ առաջին համագումարը: Հեղափոխական Պետրոգրադ ուղարկված՝ Մինսկի կարմիրգվարդիական դրուժինան մասնակցեց Ձմեռային գրոհին: Թե՛ պատերազմի դաժան օրերին, թե՛ խաղաղ շինարարության տարիներին Մինսկի կոմունիստները եղել են մասսաների իսկական առաջնորդներն ու կազմակերպիչները, կուսակցության քաղաքական կուրսի հետևողական կիրառողները:

Այսօր մենք երախտագիտության առաջին խոսքերը, շնորհակալության և մեծագույն հարգանքի խոսքերն ուղղում ենք այն հազարավոր ու հազարավոր մինսկցիներին, որոնք հիտլերականների ռազմական մեքենային հակադրեցին իրենց հերոսությունն ու հաղթանակի կամքը: Մինսկը զավթվեց թշնամու կողմից: Բայց Մինսկը երբեք չնվաճվեց:

Կուսակցության ընդհատակյա քաղկոմի ղեկավարությամբ քաղաքում գործում էր կոնսպիրատիվ խմբերի և կազմակերպությունների ճյուղավորված ցանց: Ո՛չ մասսայական մահապատիժները, ո՛չ պատժիչների գազանությունները չկարողացան ընկճել հերոսներին: Մինսկը զարհուրելի դժոխք էր դարձել օկուպանտների համար: Թշնամին ոչ մի օր իրեն անվտանգ չէր զգում:



Մեկուկես հազար մարտական գործողություններ. ահա Մինսկի ընդհատակայինների երեք տարվա պայքարի տպավորիչ հանրագումարը:

Մինսկը մենակ չէր: Մինսկցիները հազարավոր թելերով կապված էին ամբողջ Բելոռուսիան ընդգրկած պարտիզանական շարժման հետ: 213 պարտիզանական բրիգադներ և 258 առանձին պարտիզանական ջոկատներ խիզախորեն կռվում էին թշնամու թիկունքում: Դա հիրավի ժողովրդական, արդարացի պատերազմ էր:

Բելոռուսիայի յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր գյուղում կան պատերազմի վետերաններ՝ պարտիզաններ, ընդհատակայիններ, ճակատայիններ: Նրանք շատ են նաև այս դահլիճում: Դժվար է խոսքեր գտնել արտահայտելու անսահման երախտագիտությունն այն մարդկանց նկատմամբ, ովքեր հայրենիքը փրկեցին դժնդակ փորձությունների տարիներին: Շնորհակալություն ձեզ: Քաջառողջություն ձեզ, թանկագին բարեկամներ:

Իր ավելի քան երկու միլիոն որդիներին ու դուստրերին կորցրեց Բելոռուսիան, մենք գլուխ ենք խոնարհում նրանց սխրանքի առջև, ովքեր անմահացան՝ ընդունելով մահը հանուն հայրենիքի փրկության:

Խնդրում եմ հոտնկայս հարգել հերոսների պայծառ հիշատակը: **(Բոլորը ոտքի են կանգնում: Մեկ րոպե լռություն է տիրում):**

Ընկերնե՛ր: Լռեցին հաղթական սալյուտի համազարկերը: Պատերազմի էպոպեան փոխարինվեց վերականգնման էպոպեայով: Ձեզանից շատերը, երևի, հիշում են Մինսկը այնպիսին, ինչպիսին նա դուրս եկավ պատերազմից: Ավերակներ, մոխրակույտեր, աղբախոտով ծածկված ամայի տարածություններ... Քաղաք փաստորեն գոյություն չուներ: Եվ նորից մարտ, նորից պայքար՝ պայքար այն բանի համար, որ ոչ թե պարզապես փլատակներից բարձրացվեր Բելոռուսիայի մայրաքաղաքը, այլ է՛լ ավելի գեղեցկացվեր այն: Հենվելով ՍՄԿԿ Կենտկոմի, սովետական կառավարության օգնության վրա, բոլոր միութենական հանրապետությունների եղբայրական աջակցության վրա, մինսկցիները չտեսնված կարճ ժամանակում վերականգնեցին իրենց քաղաքը:

Փառք ու պատիվ նրանց, ովքեր, դեռ շինելներն ու գիմնաստյորկաները չհանած, դեռ ռազմաճակատից վերադարձած հարազատներին ու մերձավորներին չգրկած, կորուստների դառն արցունքները չսրբած, կանգնեցին վերածնության հերթափոխի: Մինսկի բարձր պարգևը նաև ձեր պարգևն է, թանկագին ընկերներ:

Ինձ վիճակվել է լինել երկրի շատ ու շատ քաղաքներում: Եվ ամենայն անկեղծությամբ կարող եմ ասել՝ այժմյան Մինսկը ամենագեղեցիկ քաղաքներից մեկն է:

Անցնելով Մինսկի փողոցներով, ես խորին գոհունակության զգացում էի ապրում: Դա մի քաղաք է, որ հիացնում է ճարտարապետական մտահղացման միասնությամբ և ամբողջականությամբ, արդիական հատակագծմամբ, փողոցների բարեկարգությամբ ու մաքրությամբ, կանաչապատ զանգվածներով:

Այսօրվա Մինսկը ոչ միայն հանրապետության, այլև ամբողջ երկրի խոշոր ինդուստրիալ կենտրոն է: Ձեզ մոտ թողարկվող ավտոմոբիլներն ու տրակտորները, հաստոցներն ու սարքերը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն ու օպտիկան բարի համբավ են վայելում: Քաղաքում թողարկվող արտադրանքի տարեկան ծավալը 72 անգամ ավելի է, քան նախապատերազմյան 1940 թվականին: Արտադրանքի ավելի քան մեկ երրորդը թողարկվում է որականիշով:

Մինսկը, իրավամբ, կարող է հպարտանալ իր երիտասարդ, բայց արդեն հասուն գիտությամբ: Նա համարձակորեն իրեն նշանակալի նվաճումներով է դրսևորել գիտելիքների այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են ֆիզիկան, տեխնիկական կիբեռնետիկան, մաթեմատիկան, միջուկային էներգետիկան և այլն: Ձեր գիտնականները արտադրության հետ գիտության բեղմնավոր կապի լավ օրինակ են տալիս:

Մինսկը բելոռուսական կուլտուրայի կենտրոնն է, մի քաղաք, որն արժանի ավանդ է ներդնում սովետական ամբողջ բազմազգ կուլտուրայի զարգաց-

ման գործում: Այստեղ են կենտրոնացված խոշոր ուսումնական հաստատություններ, որտեղ բարձր որակավորում ունեցող մասնագետներ են պատրաստվում ոչ միայն հանրապետության և երկրի համար, այլև բարեկամ պետությունների համար: Լայնորեն հռչակված են և ժողովրդականություն են վայելում ձեր թատրոնները, երգչախմբերն ու պարի անսամբլները:

Այսօր հատկապես հաճելի է նշել այն, որ Մինսկի թանգարաններում, նրա փողոցների անունների մեջ, հոյակապ մոնումենտների մեջ սրբությամբ պահպանվում է քաղաքի մարտական անցյալի, մինսկցի հերոսների հիշատակը, մի հիշատակ, որը ծառայել և ծառայում է որպես հայրենասիրական զգացմունքների և աշխատանքային խանդավառության աղբյուր:

Սովետական Բելոռուսիայի, այդ թվում նրա մայրաքաղաքի նվաճումները լենինյան ազգային քաղաքականության կենդանի մարմնավորումն են, սոցիալիզմի կողմից ձերբազատված՝ ժողովրդի հզոր ուժերի ստեղծագործական հզորության իրականացումը:

Բարձր պարգևի առթիվ շնորհավորելով Մինսկի բանվորներին, ինժեներներին ու տեխնիկներին, գիտնականներին և կուլտուրայի գործիչներին, բժիշկներին և ուսուցիչներին, բոլոր աշխատավորներին, ես կկամենայի վստահություն հայտնել, որ մինսկցիները այսուհետ ևս բարձր կպահեն իրենց քաղաքի դրոշը, մարտական և աշխատանքային մեծագործությունների փառքով պսակված դրոշը:

Բարձր գնահատականի է արժանի այն փաստը, որ Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի և Մինսկի մարզկոմի ղեկավարությամբ Մինսկի կոմունիստների հարյուրհազարանոց ջոկատը մշտապես կատարելագործում է կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները: Աճել են կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական ղեկավարների հրաշալի կադրեր, որոնք օժտված են նորի զգացումով, ընդունակ են գործիմացությամբ լուծել այն խնդիրները, որոնք առաջադրում են կյանքը, զարգացած սոցիալիզմի դարաշրջանը:

Մեծ հաջողություններ ձեզ, թանկագին բարեկամներ: Համոզված եմ, որ Մինսկի կոմունիստները, Բելոռուսիայի կոմունիստները արժանի ավանդ կմուծեն ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման գործում:

Ձեր հանրապետության կյանքում հետաքրքրական շատ բան կա, շատ այնպիսի բան, որին օգտակար կլիներ, որ ծանոթանային մյուս հանրապետությունների ընկերները: Առանձնապես ուրախացնում են այն նախաձեռնությունները, նպատակասլացությունն ու հաստատակամությունը, որոնցով լուծվում են տնտեսական և սոցիալական զարգացման հարցերը:

Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության, նրա աշխատավորական կոլեկտիվների մեծ ծառայությունն են տնտեսական պոտենցիալի մեծացման հաստատուն, արագ տեմպերը: Դուք հաջողությամբ կատարեցիք իններորդ հնգամյակի պլանը: Իսկ տասներորդ հնգամյակի առաջին երկու տարում արդյունաբերական արտադրության ծավալը պլանով նախատեսված 13,9 տոկոսի փոխարեն աճել է 16,2 տոկոսով: Պլանից ավելի թողարկվել է 590 միլիոն ռուբլու արտադրանք: Դե, ինչ ասել կուզի: Լավ եք աշխատում: Այդպես էլ պետք է շարունակել:

Բելոռուսիայում նկատելի հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության զարգացման ասպարեզում: Կար ժամանակ, երբ բելոռուսական հողերը անպտուղ էին համարվում: Հեկտարից 7—8 ցենտներ հացահատիկը համարյա թե առավելագույն բերք էր համարվում: Իսկ հիմա ի՞նչպես է: Իններորդ հնգամյակում հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին բերքատվությունը կազմեց հեկտարից 21,3 ցենտներ, իսկ անցած երկու տարում՝ հեկտարից արդեն 25 ցենտներ: Ահա թե ինչ է անում ժամանակակից ագրոտեխնիկան: Ահա թե ինչ է նշանակում հոգատար, խելացի վերաբերմունք հողի նկատմամբ:

Կարևոր է, որ ոչ միայն գյուղի աշխատավորները, այլև բոլոր նրանք, ովքեր գյուղին մատակարարում են տրակտորներ, կոմբայններ, այլ մեքենաներ,



հանքային պարարտանյութեր, ովքեր մելիորատիվ աշխատանքներ են կատարում, բազմապատկեն իրենց ջանքերը գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման պայքարում: Ընկերնե՛ր: 1979—1980 թվականներին մենք ամենքս պետք է շատ լարված աշխատենք: Ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքները կատարելու համար հարկավոր է մնացած երկու տարում զգալիորեն բարձրացնել արտադրության աճի տեմպերը, աշխատանքի արտադրողականությունը, բարելավել բազմաթիվ այլ ցուցանիշներ:

Կուսակցության առաջադրած կարևորագույն խնդիրն է բարձրացնել արտադրության արդյունավետությունը: Դրա լուծման համար մենք մոբիլիզացնում ենք բոլոր կոլեկտիվներին: Դա լրիվ չափով վերաբերում է նաև ձեզ: Այս կապակցությամբ առանձնահատուկ նշանակություն ունի խնայողության ռեժիմի ըստ ամենայնի ուժեղացումը, բոլոր օղակներում տնտեսական հաշվարկի ամրապնդումը և, ամենից առաջ, պլանային կարգապահության խստիվ և անշեղ կիրառումը:

Ի՞նչ է նշանակում կիրառել պլանային կարգապահությունը:

Դա նշանակում է ժամանակին, սահմանված ժամկետներում մշակել պլանը և ապահովել առաջադրանքների լավ համաձայնեցում, համակշռվածություն բոլոր ցուցանիշների, տնտեսության օղակների և հանրապետությունների մասշտաբով:

Դա նշանակում է անպայման կատարել պլանով նախատեսված առաջադրանքները առանց բացառության բոլոր ցուցանիշների գծով: Մեզանում հաճախ պլանային ցուցանիշները մի տեսակ բաժանում են «հիմնականի» և «երկրորդականի»: Ձգտում են կատարել «հիմնական» ցուցանիշների պլանը և անհոգությամբ են վերաբերվում իբր «երկրորդական» պլանին: Դա անթույլատրելի է: Պլանը պետք է կատարված համարվի միայն այն ժամանակ, երբ կատարվել են առաջադրանքները հաստատված բոլոր ցուցանիշների գծով:

Կիրառել պլանային կարգապահությունը՝ նշանակում է նաև գործարար, ամենօրյա վերահսկողություն հաստատել պլանների կատարման ընթացքի վրա, խիստ պատասխան պահանջել պլանային կարգապահությունը խախտողներից:

Իրադրությունը, օբյեկտիվ պայմանների փոփոխությունը կարող են պահանջել որոշ ճշգրտումներ մտցնել պլանային առաջադրանքների մեջ: Դա հասկանալի է և անխուսափելի: Բայց լինում են ճշգրտումներ, որոնք բնավ էլ օբյեկտիվ անհրաժեշտությունից չեն բխում, նպատակ ունեն հեշտացնել մեր տնտեսավարներից ոմանց կյանքը: Նրանք ասես օրինականացնում են պլանային ցուցանիշների շեղումը դեպի վատը:

Պլանի նման «ուղղումները» հաճախ առանձին աշխատողների անկազմակերպվածության և անգործունեության հետևանքն են: Դրա հետևանքով պլանը կորցնում է իր մոբիլիզացնող ուժը, դառնում է աշխատանքի թերությունները քողարկող վարագույր:

Իսկ վերադաս կազմակերպությունների ղեկավարները, եթե նրանք գիջումներ են թույլ տալիս «հեշտացված» պլանների սիրահարներին, ցուցաբերում են անսկզբունքայնություն և թուլամորթություն: Պլանի հետ կատարվող նման ձեռնածությունները պետք է սկզբունքային կուսակցական գնահատական ստանան: Մեզ հարկավոր չէ կասկածելի բարություն պետության հաշվին:

Ես այստեղ պլանային կարգապահության կիրառման հարցը այսպես սրությամբ եմ դնում ոչ թե նրա համար, որ հենց Մինսկում, Բելոռուսիայում գործերը վատ են: Այստեղ դուք ավելի շատ դրական փորձ ունեք: Ինձ պատմեցին, որ ձեր ձեռնարկություններում ավելի ու ավելի հազվադեպ են նկատվում պլանային կարգապահության խախտումների փաստեր: Դա կուսակցական կազմակերպությունների կուսակցական-կազմակերպական և գաղափարադաստիարակչական մեծ աշխատանքի արդյունքն է: Լավ կլիներ այդ փորձն ամրապնդել ու լայնորեն տարածել:

Տնտեսական և սոցիալական շինարարության բոլոր բնագավառներում

Բելոռուսիայի հաջողությունները անկասկած են։ Բայց, ըստ արժանվույն գնահատելով արվածը, մենք՝ կոմունիստներս, տեսնում ենք չլուծված հարցերը։

Չեմ կարող չասել այն մասին, որ ձեր հանրապետությունում, այդ թվում նաև Մինսկում, ցավոք, դեռևս կան ետ մնացող ձեռնարկություններ, շինարարական կազմակերպություններ։ Հանրապետության շատ գործարաններում ու ֆաբրիկաներում դանդաղ է անում ինտենսիֆիկացումը։ Քիչ չեն մետաղի, հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի գերածախսման փաստերը։ Ցածր է մնում սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության գործակիցը։

Այս ցանկը կարելի կլիներ շարունակել։ Բայց դուք, իհարկե, ինձանից լավ գիտեք, թե ինչպիսի թերություններ կան ձեզ մոտ և թե դեռ ինչպիսի հրակայական ռեզերվներ գործի չեն դրված։ Կուսակցական կազմակերպությունների պատվի գործն է՝ քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորներին ոտքի հանել այդ ռեզերվները ըստ ամենայնի օգտագործելու համար։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, իրավամբ, հույս է հայտնում, որ Բելոռուսիայի կոմունիստները և բոլոր աշխատավորները, պահպանելով հանրապետության առաջընթացի վստահ, հաստատուն ռիթմը՝ կկարողանան հաջողությամբ կատարել տասներորդ հնգամյակի առաջադրանքները և դուրս գալ տնտեսական ու սոցիալական առաջադիմության նոր բնագծեր։

Ընկերնե՛ր։

Այստեղ, Բելոռուսիայի հողում, որի վրա որպես ողբերգական նախազգուշացում հնչում են Խատինի զանգերը, հատկապես պարզորոշ ես զգում, թե որքան կարևոր է խաղաղության այն հաստատակամ պայքարը, որ մղում է Սովետական Միությունը, պայքարը այն բանի համար, որ թույլ չտրվի նոր համաշխարհային պատերազմի հրդեհի բռնկում։

Այժմ Նյու-Յորքում ավարտվելու վրա է զինաթափմանը նվիրված ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանը։ Այն մեկ անգամ ևս հաստատեց ամբողջ մարդկության խորին շահագրգռվածությունը սպառազինությունների մրցավազքի դադարեցմամբ։ Զինաթափման օգտին արտահայտվեց ՄԱԿ-ի անդամների գերակշռող մեծամասնությունը։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները նստաշրջանում առաջ քաշեցին սպառազինությունների մրցավազքի լրիվ դադարեցման լայն, համարձակ և, միևնույն ժամանակ, ռեալիստական ծրագիր։ Նրանց առաջարկությունները գտնվում էին ասամբլեայում ծավալված գործարար դիսկուսիայի կենտրոնում։

Նստաշրջանը ցույց տվեց նաև, որ ՆԱՏՕ-ի մի շարք առաջատար երկրների, և ամենից առաջ ԱՄՆ-ի, ղեկավարները բացահայտորեն չեն ցանկանում կոնստրուկտիվ մոտեցում ցուցաբերել զինաթափման խնդիրների լուծման նկատմամբ։ Այլ կերպ ինչպե՞ս գնահատել ՆԱՏՕ-ի խորհրդի նստաշրջանի անցկացումը Վաշինգտոնում, որտեղ ընդունվեց սպառազինությունների նոր երկարաժամկետ ծրագիր, մինչդեռ Նյու-Յորքում, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանում, քննարկվում էր ուղղակի հակառակը՝ ինչպես սանձահարել սպառազինությունների մրցավազքը, կատարել զինաթափում։ Մի՞թե սա արհամարհանք չէ խաղաղասեր ժողովուրդների կենսական հոգսերի և իղձերի նկատմամբ։ Ստացվում է այսպես՝ Վաշինգտոնում ՆԱՏՕ-ի երկրները մշակում են «ռեալ քաղաքականություն», իսկ Նյու-Յորքում նրանք, բանից դուրս է գալիս, դիսկուսիաներին մասնակցում էին մարդկանց աչքերին թոզ փչելու համար, որպեսզի չենթարկվեն արդարացի քննադատության ու դատապարտման։

Այդ դիրքավորմանը լիովին համաձայն են Պեկինի կառավարողները։ Նրանց ներկայացուցիչը ասես պարզապես շփոթել էր ամբիոնները։ Իր ռազմատենչ ճառով նա երևի պետք է հանդես գար ոչ թե ՄԱԿ-ում, այլ ՆԱՏՕ-ի բլոկի նստաշրջանում։

Ի դեպ, Պեկինի նման գիծը ըստ արժանվույն է գնահատվում Վաշինգտոնում։ Վերջին ժամանակներս ԱՄՆ-ում, այն էլ բարձր մակարդակով և բավական անպատկառ ձևով, փորձեր են արվում ՍՍՀՄ-ի դեմ գործել «չինական



խաղաքարտով»։ Կարճատես և վտանգավոր քաղաքականություն։ Տես, որ դրա հեղինակները չարաչար չզղջան դրա համար։

Գլխավոր ասամբլեայի նստաշրջանը ավարտվում է։ Բայց այնտեղ առաջ քաշված գաղափարները ու արված առաջարկությունները, անտարակույս, կշարունակեն ապրել, կունենան իրենց ներգործությունը։ Սպառազինությունների մրցավազքի սանձահարման, զինաթափման բնագավառներում իրական գործերի համար պայքարը շարունակվում է և պետք է ուժեղացվի։

Այդ բնագավառում կարևորագույն ուղղություններից մեկը Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների սահմանափակման Վիեննայի բանակցություններն են։ Ես բազմիցս առիթ եմ ունեցել խոսելու այդ պրոբլեմի մասին և, իսկն ասած, ծանր զգացումով։ Իսկապես, արդեն սկսվել է բանակցությունների տասնհինգերորդ ռաունդը, դրանք արդեն տեղի են ունենում գրեթե հինգ տարի, բայց առայժմ գործնական արդյունքներ չկան։ Իսկ չէ՞ որ հարցը դատարկ հարց չէ, դա անչափ կարևոր է Եվրոպայի համար, ինչպես նաև ամբողջ միջազգային իրադրության համար։

Համակողմանիորեն կշռադատելով ստեղծված իրադրությունը, սոցիալիստական երկրները նոր, կարևոր քայլի դիմեցին, որպեսզի Վիեննայի բանակցությունները, ի վերջո, դուրս բերեն փակուղուց։

Մեր երկրները Վիեննայում մտցրեցին նոր, լայն ու կոնկրետ առաջարկություններ, որոնք հաշվի են առնում այդ բանակցությունների ամբողջ զգալի փորձը։

Ո՛րն է գլխավորը այդ առաջարկություններում։

Նախ, դրանք միանգամայն պարզ ու ճշգրիտ առաջարկություններ են։ Դրանցում տրված են առաջին փուլում դուրս բերման ենթակա սովետական և ամերիկյան զորքերի կոնկրետ թվերը։ Եվ դրանք պատկառելի թվեր են։ ՍՍՀՄ-ը, իր կողմից, պատրաստ է մեկ տարվա ընթացքում դուրս բերել ամբողջությամբ վերցրած երեք դիվիզիա՝ համապատասխան ռազմական տեխնիկայով, ներառյալ մոտավորապես հազար տանկ։

Երկրորդ, ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի երկրների զինված ուժերի կրճատումը ենթադրվում է կատարել այնպես, որ պահպանվի դրանց հավասարակշռությունը կամ, ինչպես ասում են, պարիտետը։ Բոլոր երկրների զորքերի կրճատումից հետո Կենտրոնական Եվրոպայում գտնվող խմբավորումներից յուրաքանչյուրի համար առաջարկվում է սահմանել միատեսակ ընդհանուր բարձրակետ։

Ի դեպ, այդպիսի բարձրակետի բուն գաղափարը համապատասխանում է այն բանին, ինչ առաջարկում էին արևմտյան երկրները։ Թեև, իհարկե, մենք հաստատ կարծում ենք, որ բանակցությունների մասնակիցներից ոչ մեկը իրավունք չունի, թաքնվելով ուրիշների թիկունքում, խույս տալու կրճատումից, մանավանդ մեծացնելու իր սպառազինությունները ի հաշիվ մյուսների կրճատման։

Սոցիալիստական երկրները իրենց պարտնյորներին առաջարկում են խելացի, ռեալիստական փոխզիջում։ Մտցնելով իրենց առաջարկությունը, նրանք նույնիսկ ավելի հեռուն անցան, քան իրենց ճանապարհի կեսը։ Մենք դիմում ենք ՆԱՏՕ-ի երկրներին՝ եկեք, վերջապես, անցնենք գործի։ Համաձայնության հիմքը, անտարակույս, արդեն կա։ Այժմ ամեն ինչ կախված է Արևմուտքի քաղաքական կամքից։

Վիեննայում պայմանավորվածության հասնելը թույլ կտար հետագայում անցնել Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման՝ կողմերին հետաքրքրող նաև մյուս կոնկրետ հարցերի քննարկմանը։

Եվրոպայում քաղաքական կլիմայի առողջացումը վերջին տասնամյակի ամենակարևոր խաղաղ նվաճումներից մեկն է։ Դա հատկապես պարզորոշ կարելի է զգալ վերջերս ԳՖՀ կատարած մեր այցի ժամանակ։

Եվրոպայում հազիվ թե կարելի է գտնել մի երկիր, որի հետ փոխհարաբերություններ հաստատելու ճանապարհին այնքան շատ լինեին թե՛ օբյեկտիվ, թե՛ սուբյեկտիվ խոչընդոտները, որտեղ ամեն մի քայլը այնքան բարդ

լինեն: Եվ, սակայն, այսօր ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի հարաբերությունները,— աչք չփակելով բացասական մոմենտների վրա,— դարձել են Եվրոպայում կայունության, եվրոպական մայրցամաքում լարվածության թուլացման կարևոր տարրերից մեկը:

Հարաբերությունների զարգացման մեծ ճանապարհ են անցել Սովետական Միությունը և Ֆրանսիան. բոլոր գծերով մեր կապերը լավ են զարգանում Իտալիայի, Շվեդիայի, Ավստրիայի հետ, չխոսելով արդեն մեր հարևանի՝ բարեկամ Ֆինլանդիայի մասին:

Համաեվրոպական խորհրդակցության մասնակից երկրների խաղաղ համագործակցության զարգացման ասպարեզում ռեալ ավանդ դարձավ Թուրքիայի պրեմիեր մինիստր պ-րն Էջևիթի այցը Սովետական Միություն: Նրա հետ վարված բանակցությունները և ՍՍՀՄ-ի ու Թուրքիայի միջև բարիդրացիական և բարեկամական համագործակցության սկզբունքների մասին քաղաքական փաստաթղթի ստորագրումը կարևոր փուլ է մեր հարաբերությունները այն ուղիով զարգացնելու գործում, որ իր ժամանակին նախատեսել են Լենինը և Աթաթուրքը:

Ընդհանրապես ես համաձայն եմ փեդերալ կանցլեր Շմիդտի խոսքերին, որը վերջերս գլխավոր ասամբլեայի ամբիոնից հայտարարեց, թե Եվրոպայում այժմ զգալիորեն ավելի մեծ փոխադարձ վստահություն կա, քան երբևիցե անցած տասնամյակների ընթացքում:

Բայց Եվրոպայի խաղաղասեր պետությունների այդ ընդհանուր սեփականությունը հարկավոր է մշտապես պաշտպանել, ամրապնդել, ընդլայնել: Դա հատկապես կարևոր է հիմա, երբ միջազգային իրադրությունը նորից սրվում է: Հենց Եվրոպան կարող է գործնականում ցույց տալ, թե ինչպես պետք է գոյակցել, համագործակցել, համատեղ աշխատել:

Կայուն խաղաղության համար մղվող պայքարը ոչ միայն կառավարությունների, այլև ժողովուրդների գործն է: Դեռևս անցյալ դարի կեսերին Կարլ Մարքսը դիմել է բանվոր դասակարգին՝ կոչ անելով տիրապետել միջազգային քաղաքականության գաղտնիքներին, ակտիվորեն պայքարել ժողովուրդների խաղաղության համար: Այդ գաղափարն ապրում է բանվորական լայն մասսաների ու նրանց քաղաքական ավանգարդի գիտակցության մեջ ու գործերում:

Բոլոր երկրների աշխատավորների կենսական շահերը պահանջում են թույլ չտալ ի չիք դարձնելու այն բոլոր բարի գործերը, որոնք վերջին տարիներին արվել են համաշխարհային ասպարեզում, պահանջում են առաջ շարժվել դեպի իսկապես կայուն խաղաղություն բոլոր ժողովուրդների համար: Բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով այդ նպատակը կարող է իրագործվել և, մենք հավատում ենք, կիրագործվի:

Ընկերնե՛ր: Մեր դարաշրջանում միջազգային կյանքի շատ կարևոր բաղկացուցիչ մասն է դարձել եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդների ամրապնդվող համագործակցությունը:

Սովետական Բելոռուսիան ակտիվ կառուցողն է բարեկամության այն հույակապ և ամուր կամուրջների, որոնք գցվել են Բուգի ջրերի վրայով, սոցիալիստական մյուս երկրների հետ Սովետական Միության ունեցած սահմանների վրայով: Միջազգային սոցիալիստական ինտեգրացմանը ձեր ձեռնարկությունների մասնակցությունը, Լեհաստանի վոեվոդությունների, ՉՍՍՀ մարզերի, ԳԴՀ-ի և Բուլղարիայի օկրուգների, մյուս սոցիալիստական երկրների հետ ձեր հաստատած աշխույժ բարեկամական կապերը դրա համոզիչ հաստատումն են:

Սոցիալիզմի երկրների համագործակցության նոր մակարդակի փայլուն խորհրդանիշն են դառնում անձնակազմերի թռիչքները: Վերջերս մենք մեծարեցինք սոցիալիստական Չեխոսլովակիայի առաջին տիեզերագնացին:

Առաջիկայում տեղի կունենան համատեղ թռիչքներ սոցիալիզմի մյուս երկրների ներկայացուցիչների հետ: Մեծ հաջողություններ մաղթենք, ուրեմն, տիեզերքի հերոսներին: Նրանք իսկապես երկրագնդի վրա բարձր պահած



տանում են սոցիալիզմի, խաղաղության և ժողովուրդների բարեկամության դրոշը:

Վերջում, թանկագին մինսկցիներ, կուզենայի ձեզ ասել, որ ես մեծ գոհունակություն եմ զգում ձեր սքանչելի քաղաքի, նրա հրաշալի մարդկանց հետ ունեցած նոր հանդիպումից:

Այժմ թույլ տվեք հրապարակել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը «Մինսկ քաղաքին «Հերոս քաղաք» պատվավոր կոչում շնորհելու մասին»:

**(Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ընթերցում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը, որը նիստի մասնակիցները ընդունում են բուռն, երկարատև ծափահարություններով):**

Թույլ տվեք ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հանձնարարությամբ Մինսկ քաղաքին հանձնել բարձր պարգևը:

**(Դահլիճում նորից է պոռթկում երկար ժամանակ չլռող օվացիան, երբ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը հերոս քաղաք Մինսկի դրոշին է ամրացնում Լենինի շքանշանը և «Ոսկե աստղ» մեդալը: Նա ի սրտե շնորհավորում է Բելոռուսիայի և Մինսկի ղեկավարներին, պատերազմի վետերաններին, աշխատավորների ներկայացուցիչներին):**

Թանկագին ընկերնե՛ր: Մեկ անգամ ևս ի սրտե շնորհավորում եմ ձեզ և ստեղծագործական մեծ հաջողություններ մաղթում այս դահլիճում բոլոր ներկա գտնվողներին, Մինսկի և Սովետական Բելոռուսիայի բոլոր աշխատավորներին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման պայքարում, ինչպես նաև ցանկանում անձնական բարօրություն ու երջանկություն:

Փա՜ռք հերոս քաղաք Մինսկին:

**(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով):**

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԱՎԱՏԱՐԻՄ ԲՈԼՇԵՎԻԶՄԻ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԻՆ

Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

*Մեր լենինյան կոմունիստական կուսակցությունը պայքարի ու հաղթանակների հերոսական ուղի է անցել: Նրա տարեգրությունը հարուստ է նշանակալի իրադարձություններով, որոնք իրենց սոցիալ-քաղաքական կարևորությամբ մեծագույն ավանդ են համայն մարդկության պատմական առաջընթացում: Մարդկության պատմությանը հայտնի չէ մեկ այլ քաղաքական կուսակցություն, որն իր դրոշի ներքո համախմբվածներին կարողանար այնպես համակել ամենահեղափոխական գաղափարներով, ինչպես դա կատարեցին բոլշևիկները:*

*Իրոք, անհնար է գերագնահատել մեր մեծ կուսակցության դերն ու նշանակությունը նոր կյանքի հաստատման դժվարին ու շնորհակալ գործում. այն իր գոյության 75 տարում անդադրում մաքառում է կոմունիզմի վեհ գաղափարների կենսագործման համար: «Լենինը, նրանք, ովքեր կռվեցին ու հաղթեցին նրա հետ մեկտեղ,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեզ համար, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման դարաշրջանի բոլշևիկներիս համար, եղել են և մնում են ոգեշնչող, անմար իդեալ: ...Յուրաքանչյուր կոմունիստ պարտավոր է կրկին ու կրկին իրեն հարց տալ, իսկ արդյոք ես ամեն ինչ արե՞լ եմ արժանի լինելու լենինյան կուսակցության անդամի կոչմանը: Արդյոք ես ամեն ինչ արե՞լ եմ գտնվելու այն պահանջների բարձրության վրա, որոնք ՍՄԿԿ յուրաքանչյուր անդամի ներկայացնում են նրա պատմությունն ու ավանդույթները, ստեղծագործական, հեղափոխական, սովետական իրականությունը» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 3, էջ 270):*

*Այս օրերին մեր կուսակցությունը, սովետական ժողովուրդը, աշխարհի մեր բարեկամներն ու համախոհները խորին ակնածանքով են նշում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության II համագումարի 75-ամյակը, համագումար, որտեղ կազմակերպչորեն վերջնականապես ձևավորվեց փառապանծ բոլշևիկների լենինյան կուսակցությունը: Ռուսաստանի բանվոր դասակարգի այս նոր տիպի պրոլետարական կուսակցությունը հիմնըված է մեծ Լենինի մշակած գաղափարաքաղաքական ու կազմակերպական սկզբունքների վրա: Այն վեհն ու լուսավորը, հերոսականն ու վսեմը, ինչ հատուկ է բանվոր դասակարգին, նրա արժանավոր զավակները, այդպիսով, մարմնավորեցին իրենց կոմունիստների դյուցազնական խանդավառում:*

*Հարուստ ու աննախադեպ է Լենինի ստեղծած, նրա գաղափարներով ու հեղափոխական ավանդույթներով դաստիարակված, դասակարգային կռիվներում ու ստեղծագործական մաքառումներում կոփված կուսակցության տա-*



*րեգրությունը: Այն անընդհատ ամրապնդվել է կազմակերպչորեն, հասունացել քաղաքականապես, հարստացել գաղափարապես: Պրոլետարական հեղափոխականների փոքրաթիվ ջոկատից, որը կեղեքվողներին մարտի կոչեց ցարական դեսպոտիզմի ու կապիտալիստական ստրկության դեմ, այն դարձավ կոմունիստների հզոր ու համախմբված բազմամիլիոն բանակ, գլխավորելով աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը:*

*ՌՍԴԲԿ II համագումարը մեր կուսակցությանը զինեց մարքս-լենինյան մարտական ծրագրով՝ միապետական-կալվածատիրական կարգի, կապիտալիզմի տապալման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման ծրագրով: Լենինն այդ ծրագիրը բարձր էր գնահատում հենց այն պատճառով, որ այնտեղ, ի տարբերություն եղած սոցիալ-դեմոկրատական ծրագրերի, կար պրոլետարական դիկտատուրայի՝ որպես հասարակության սոցիալիստական վերափոխման գործիքի, անհրաժեշտության դրույթը:*

*Երկրորդ համագումարում լիովին հաղթանակեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը. կտրականապես մերժվեցին օպորտունիստների, առաջին հերթին բունդականների առաջարկները՝ կուսակցությունը կառուցելու ոչ թե դասակարգային, այլ ազգային սկզբունքով, ստեղծելու ոչ թե պրոլետարական միասնական կուսակցություն, այլ անջատ ազգային կազմակերպությունների ֆեդերացիա:*

*Առաջին իսկ քայլերից բոլշևիկների կուսակցությունը հանդես եկավ որպես միասնական կենտրոնացված կազմակերպություն, այն կարողացավ համախմբել բազմազգ Ռուսաստանի բանվոր դասակարգին ու աշխատավոր զանգվածներին, դարձնելով նրանց միաձույլ ու ինտերնացիոնալ մի ուժ, որը խորտակեց կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը:*

*Համագումարում ընդունված ծրագիրը սահմանեց բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիական աշխատավոր զանգվածների հետ, հիմնավորեց նրա հեգեմոն դերն ազատագրական շարժման մեջ, հաստատեց կուսակցության խոր ինտերնացիոնալիստական բնույթը, ցույց տվեց հանուն դեմոկրատիայի պայքարի և հանուն սոցիալիզմի պայքարի միջև անքակտելի ու սերտ կապը:*

*Հետագայում, շեշտելով II համագումարում ընդունված ծրագրի պատմական նշանակությունը, Լենինը գրել է. «Մենք պրոլետարիատի կուսակցությունը դաստիարակել ենք մարքսիստական ծրագրի հիման վրա...» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 29, էջ 226): Լենինը կուսակցության հեղափոխական ծրագիրը մշտապես աղնչում էր կազմակերպության հեղափոխական հիմքերի հետ: Նա ելնում էր այն փաստից, որ պրոլետարական կուսակցության մեջ գաղափարների ուժը պետք է ամրապնդվի ու բազմապատկվի կազմակերպության ուժով: Լենինը վճռականորեն մերժում էր ինչպես գաղափարական անհոգությունը, այնպես և կազմակերպական թուլությունը, անջատվածությունը, ինքնավարությունը, որոնք հատուկ էին II ինտերնացիոնալի կուսակցություններին: Ի տարբերություն II ինտերնացիոնալի օպորտունիստական կուսակցությունների կազմակերպական սկզբունքների, լենինյան կանոնադրությունն ամենայն հստակությամբ սահմանեց կուսակցության դասակարգային բնույթը, ապահովեց նրա սոցիալական կազմի պրոլետարական կայունությունը, կազմակերպական ամուր հիմքերը:*

*Կուսակցությունը հիմնադրելիս Լենինը հետևողականորեն կիրառեց դասակարգային պրոլետարական գիծը: Կազմակերպական հարցերում մենշևիկյան օպորտունիզմին նա հակադրեց դասակարգային կազմակերպվածության վճռական դերը: Պրոլետարիատն այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից, նշել է Լենինը:*

*Դասակարգային մարտերի փորձը մշտապես հաստատում է լենինյան իմաստուն խոսքերի ճշմարտացիությունը: Միայն լավ կազմակերպված ու կարգապահ, գիտական սոցիալիզմի զինքերում կանգնած կուսակցությունն է ի վիճակի գլխավորելու բանվոր դասակարգի ազատագրական շարժումը:*

*Մեր կուսակցությունը, համախմբելով Ռուսաստանի բանվոր դասակարգին ու ողջ աշխատավորությանը, նրանց գրոհի տարավ կալվածատիրական-կապի-*

տալիստական կարգի դեմ, անցավ երեք հեղափոխությունների բովով և հաղթանակով ավարտեց հին աշխարհի դեմ պրոլետարիատի գոտեմարտը: Այդ աննախադեպ ու անձնուրաց պայքարում աշխատավոր զանգվածները փորձով համոզվեցին, որ միակ իսկական հեղափոխական քաղաքական ուժը բոլշևիկյան կուսակցությունն է և իրենց ճակատագիրն ընդմիշտ կապեցին լենինյան ավանգարդի հետ:

Հավատարիմ բոլշևիզմի փառավոր ավանդույթներին, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ստեղծագործաբար զարգացնում է մարքսիզմ-լենինիզմը, կատարելագործում իր պրակտիկ գործունեությունը. Դրա շնորհիվ կուսակցությունը կուտակել է տարբեր փուլերում ու տարբեր պատմական պայմաններում բանվոր դասակարգի հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը ղեկավարելու վիթխարի փորձ:

Մեր կուսակցությանը վիճակված է պատասխանատու ու փառապանծ պատմական միսիա՝ շարունակել զարգացնել մարքս-լենինյան ուսմունքը կոմունիզմի մասին, տեսականորեն հիմնավորել կոմունիզմի կառուցման արդի օրինաչափությունները և պրակտիկորեն ճանապարհ հարթել կոմունիստական հասարակարգի լիակատար հաղթանակի համար: Արդի փուլում կոմունիստական շինարարության գիտականորեն հիմնավորված քաղաքական գիծ մշակեցին ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարները, որոնք նշանակալի փուլեր են կուսակցության և սովետական ժողովրդի կյանքում:

* * *

ՍՄԿԿ-Ն, ԶԻՆՎԱԾ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ օրենքների իմացությամբ, ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, աշխատավոր զանգվածների ստեղծագործական ջանքերը նպատակամղում է կոմունիստական ապրելակերպի սկզբունքների արմատավորմանը: Շնորհիվ կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի, բանվոր դասակարգը, աշխատավոր զանգվածները սոցիալական պայքարում, նոր կյանքի հաստատման ասպարեզում լիովին դրսևորում են իրենց ստեղծագործական կարողությունները:

Իմպերիալիզմի ջատագովները, ռեֆորմիստները, ռևիզիոնիստները ճգնում են խեղաթյուրել կուսակցության ղեկավար դերի լենինյան ուսմունքը, դրան հակադրելով հակագիտական կոնցեպցիաներ: Սոցիալիզմի «նոր մոդելների» բուրժուական ու ռևիզիոնիստական ապոլոգետները, կոմունիստներին մեղադրելով «իշխանության ուզուրպացիայի», «կուսակցության դիկտատուրայի» հաստատման մեջ, բարբաջում են, թե իբր սոցիալիստական սիստեմի երկրներում «հնացած, ավելորդ, անարդյունավետ», նույնիսկ «վնասակար է» կոմունիստական կուսակցության ղեկավար դերը: Նրանցից ոմանք, հավակնելով «գիտականորեն» բացատրել հասարակական զարգացումը, սևով սպիտակի վրա գրում են, թե կուսակցության ղեկավար դերի ընդունումը հակասում է պատմության մատերիալիստական ըմբռնմանը: Նման դատողությունները նպատակ ունեն մոլորեցնելու տեսությունից ու քաղաքականությունից հեռու կանգնած մարդկանց:

Պարզ է, սակայն, որ հասարակական շարժումը պատմական պրոցես է, որտեղ գործում են օբյեկտիվ օրինաչափություններ: Իսկ այդ օրենքները դրսևորվում են մարդկանց պրակտիկ գործունեության, սոցիալական պայքարի միջոցով: Մարքսիզմ-լենինիզմը, որպես իսկական գիտական տեսություն, հասարակական շարժումը դիտում է դիալեկտիկորեն: Այն իրադարձությունների օբյեկտիվ ընթացքը միակցում է մասսաների հեղափոխական էներգիայի, հեղափոխական ստեղծագործության հետ, որտեղ, անշուշտ, էական է առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների դերը:

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում կոմունիստական կուսակցության ղեկավար դերը պայմանավորվում է օբյեկտիվ գործոններով, մասնավորապես հասարակական արտադրության սիստեմում բանվոր դասակարգի դիրքով: Որպես ամենաառաջավոր, գիտակից ու կազմակերպված դասակարգ, հեղափոխության ու նոր հասարակարգի կառուցման ավանգարդ,



նա աշխատավորության, բոլոր պրոգրեսիվ ուժերի արմատական շահերի արտահայտիչն է: Կուսակցության ղեկավար դերի բարձրացումը այնպիսի մի օրինաչափություն է, որը դրսևորվում է նրա գործունեության բոլոր փուլերում:

Հակակոմունիզմի գրչակները, իրենց ներկայացնելով ՍՍՀՄ քաղաքական սիստեմի «լիբերալացման» ջատագովներ, ճգնում են կուսակցության դերի բարձրացումը բնութագրել «որպես մասի իշխումը ամբողջի վրա», որպես բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների իրավունքների սահմանափակում, պատմական պրոցեսում ժողովրդական զանգվածների դերի նսեմացում: Նման եզրակացությունների սնանկությունն այն է, որ մասսաների գիտակցությունը, ակտիվությունը հակադրվում են կուսակցության ղեկավարությանը, իսկ վերջինիս ղեկավար դերը ներկայացվում որպես արտաքին ուժ, աշխատավորությանը պետական ու հասարակական գործերից հեռու պահող ֆենոմեն: Եվ դա այն դեպքում, երբ կյանքը, պրակտիկան հաստատում են, որ կուսակցական ղեկավարման շնորհիվ աշխատավոր զանգվածները լավ են պատկերացնում հասարակական-պատմական պրոցեսի բնույթը, միտումը, ակտիվորեն նպաստում սոցիալական պրոգրեսի արագացմանը:

Արդ, կուսակցության դերի բարձրացումը բխում է կոմունիզմի ներկա փուլի լինելության առանձնահատկություններից, հասարակական կյանքում գիտակցականի ու տարերայինի փոխհարաբերության փոփոխումից: Իր գործունեությամբ կուսակցությունն ապահովում է սոցիալական հարաբերությունների համակարգի հետագա կատարելագործում, բանվոր դասակարգի առաջատար դերի բարձրացում, աշխատավոր գյուղացիության, մտավորականության հետ նրա դաշինքի առավել ամրապնդում, սովետական հասարակության սոցիալական միատարրության ուժեղացում:

Կուսակցության ղեկավար դերի բարձրացումը պայմանավորվում է գիտական կոմունիզմի տեսության նշանակության աճով, նրա ստեղծագործական զարգացումով, աշխատավորության կոմունիստական դաստիարակության, անցյալի մնացուկների հաղթահարման համար պայքարի անհրաժեշտությամբ: Սոցիալիզմի կառուցմամբ բանվոր դասակարգի գաղափարախոսությունը դարձել է ողջ ժողովրդի սեփականությունը, իսկ կոմունիզմի կառուցումը՝ համաժողովրդական նպատակ: Այդ բոլորն ընդլայնում է մեր երկրի բոլոր աշխատավորների համար գիտական կոմունիզմի աշխարհայացքի տիրապետման հնարավորությունները, նոր ուղիներ բացում մասսաների կոմունիստական դաստիարակության համար, օգնում պրոպագանդելու ու ստեղծագործաբար զարգացնելու մարքսիզմ-լենինիզմը, համակողմանիորեն բավարարելու սովետական մարդու հոգևոր կատարելագործման ձգտումները:

Կուսակցության գաղափարական աշխատանքի ուժեղացման անհրաժեշտությունը թելադրվում է նաև միջազգային կյանքի իրադրությամբ, հատկապես երկու գաղափարախոսությունների պայքարի սրումով: Սոցիալիստական երկրների հզորությունը քայքայելու նպատակով իմպերիալիստները կազմակերպում են գաղափարական դիվերսիաներ, ուժեղացնում հարձակումները մարքս-լենինյան կուսակցությունների դեմ: Այդ պայմաններում առանձնապես կարևոր է սովետական մարդկանց դաստիարակել ոչ միայն հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով, այլև անհանդուրժողականություն ներարկել բուրժուական գաղափարախոսության, ռեֆորմիզմի, ռևիզիոնիզմի ու նացիոնալիզմի դեմ:

Ներկա փուլում ՍՄԿԿ դերի բարձրացումը առնչվում է նաև նրա միջազգային գործունեության հետ: Սոցիալիզմի վերածումը համաշխարհային ուժի հզոր ազդեցություն ունեցավ արդի աշխարհի զարգացման վրա: Առաջ եկավ պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով տոգորված սոցիալիզմի երկրների համագործակցությունը:

«Ոչ մի օբյեկտիվ մարդ չի կարող ժխտել,— ՍՄԿԿ XXV համագումարում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա սոցիալիզմի երկրների ազդեցությունն առավել ուժեղանում է, առավել խորանում»: Գնալով ավելի սերտ են դառնում սոցիալիստական պե-

թյամբ քննադատության ու ինքնաքննադատության կիրառման օրինակ է ծառայում, նա վճռականորեն պայքարում է սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի, չմտածված գործողությունների դեմ, որոնք հակասում են հասարակության ղեկավարման գիտական սկզբունքներին։

Բարձրացնելով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում իրենց ազդեցությունը, կուսակցական կազմակերպություններն անդուլ կատարելագործում են աշխատանքի ոճը։ Նրանց գործունեության մեջ հաստատվում են կյանքի առաջադրած խնդիրների նկատմամբ ստեղծագործական մոտեցման ու լուծման նոր ձևեր ու մեթոդներ։

ՄԵՐ ԵՐԿԻՐՆ ԱՅԺՄ ՕԺՏՎԱԾ Է հսկայական տնտեսական հզորությամբ— բազմաճյուղ ինդուստրիա, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն, առաջավոր գիտություն, որակյալ բանվորական կադրեր, մասնագետներ, արտադրության կազմակերպիչներ։ Մենք երբեք չենք ունեցել տնտեսական շինարարության այսչափ հարուստ փորձ, որն ստեղծագործաբար իմաստավորվել ու ընդհանրացվել է կուսակցության կողմից։ Արդ հրամայական պահանջ է՝ տնտեսությունը վարել ինտենսիվ մեթոդներով, բարձրացնել արտադրանքի արդյունավետությունն ու որակը։ «Որակի պրոբլեմը,— ասաց ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— մենք շատ լայն ենք հասկանում։ Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների առավել լավ, առավել լրիվ բավարարումը։ Ահա թե ինչու արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման ողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը։ Այդ բանին պետք է մշտապես բևեռված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 66)։

Անհրաժեշտ է, որպեսզի տնտեսական աճն առավելապես տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ, գործող արտադրական հնարավորությունների առավել լրիվ օգտագործմամբ, տնտեսությունում ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործված մեկ տոննա մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութի փոխհատուցման ավելացմամբ։

Մեր տնտեսական հաջողությունների կարևոր ու անսպառ աղբյուր է գիտատեխնիկական առաջընթացը։ Կուսակցությունը վճռական միջոցներ է ձեռնարկել՝ խորացնելու ու զարգացնելու գիտատեխնիկական հեղափոխությունը, իրականացնելու վերջինիս նվաճումները, բացահայտելու հասուն սոցիալիստական հասարակությանը ներհատուկ կարողությունները։

Անշուշտ, սոցիալիստական արտադրության աճի բացառիկ մեծ ու հեռանկարային աղբյուրներ կան լայն գիտատեխնիկական համագործակցության հիման վրա սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայում աշխատանքի միջազգային բաժանման մեջ։

Հասարակական արտադրության հետագա արագ աճի հիման վրա կուսակցությունն ապահովում է նաև հասարակական հարաբերությունների կատարելագործումը։ Այս առումով նշանակալի նվաճում են բանվոր դասակարգի, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի սերտ համախմբումը, սովետական ժողովուրդների մերձեցումը և եղբայրական համագործակցությունը, նրանց անխախտ բարեկամության ամրապնդումը։ Ձևավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն— սովետական ժողովուրդ՝ որպես մեր հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության վառ արտահայտություն։

Կուսակցությունը բազմակողմանի աշխատանք է տանում սովետական պետության հետագա ամրապնդման, մեր հասարակության ողջ քաղաքական կազմակերպության կատարելագործման նպատակով։ Այստեղ գլխավորը աշ-



խատավորական զանգվածներին կառավարման ոլորտը ներգրավելն է, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և մյուս մասսայական կազմակերպությունների դերի բարձրացումը։

Ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, սոցիալիստական շինարարության վեց տասնամյակը վառ կերպով վկայում է, թե ինչի են ունակ հասարակության քաղաքական ղեկավարությունն իրենց ձեռքը վերցրած, երկրի ճակատագրի պատասխանատվությունը հանձն առած աշխատանքի մարդիկ։

Ժողովրդական մասսաների պատմական ստեղծագործության արգասիքն աշխարհում առաջին զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումն է։ Կոմունիզմի կառուցման ճանապարհին այդ կարևորագույն բնագիծը օրենսդրորեն ամրակայեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որը սովետական պետության վաթսունամյա զարգացման խտացված հանրագումարն է։

Հատկանշական է, որ Հիմնական օրենքի ստեղծողը ողջ սովետական ժողովուրդն է։

Կոմունիզմի կառուցման վեհ գործը ենթադրում է մարդու, նրա կուլտուրայի, հասարակական գիտակցականության, բարոյականության ու կոմունիստական գաղափարախոսության համակողմանի զարգացում։ Հիրավի, կուսակցության պատմական ծառայությունը սովետական հայրենասերների ու ինտերնացիոնալիստների սերունդների դաստիարակությունն է, նոր հասարակության անձնվեր կառուցողների ձևավորումը։ Եվ ինչքան առաջ է ընթանում մեր հասարակությունը, այնքան անհանդուրժելի են դառնում սոցիալիստական բարոյականության նորմերից կատարվող շեղումները։ Մեր հասարակության բուն էությանը ներհակ երևույթների դեմ պայքարում անհրաժեշտ է օգտագործել աշխատանքային կոլեկտիվի կարծիքը, մամուլի քննադատական խոսքը, դաստիարակության մեթոդները, օրենքի ուժը։

Կոմունիստը կոմունիզմի վեհ իդեալների հաղթանակի համար պայքարող մարտիկ է՝ օժտված բարձր գաղափարական գիտակցականությամբ, կուսակցության գործի հանդեպ անձնական պատասխանատվության ըմբռնմամբ։ Անտարբերությունը, պասսիվությունը, գաղափարազրկությունն անհամատեղելի են լենինյան կուսակցության անդամի կոչմանը։ «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին,— ասում է ընկեր Բրեժնևը,— ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116)։ Հետևելով Լենինի պատգամներին, բոլշևիզմի ավանդույթներին, ՍՄԿԿ-ն անում է ամեն ինչ, որպեսզի միշտ բարձր պահի կուսակցության անդամի վեհ կոչումը։

Կոմունիստական կուսակցությունը, Լենինի բնորոշմամբ, մեր դարաշրջանի միտքն է, պատիվն ու խիղճը։ Այս բարձր կոչմանը մեր կուսակցությունն արժանացել է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին իր անսասան հավատարմությամբ, ժողովրդի հանդեպ իր բարձր պատասխանատվությամբ։ Կոմունիստական հասարակարգի կառուցման արդի փուլում, երբ անհամեմատ աճել են մեր առաջընթացի տեմպերն ու մասշտաբները, կուսակցությունն առաջադրում ու գիտականորեն լուծում է բոլոր այն արմատական հարցերը, որոնք առնչվում են նոր հասարակարգի կառուցման հետ։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԴԵՐԻ բարձրացումը սերտորեն առնչվում է բանվոր դասակարգի պատմական առաքելության, կոմունիստական ֆորմացիայի կառուցման գործում նրա դերի ըմբռնման հետ։ Սոցիալիզմի զարգացման օրինաչափությունները ցույց են տալիս, որ բանվոր դասակարգի առաջատար դերը կպահպանվի մինչև կոմունիզմի կառուցումը և հասարակության մեջ սոցիալական միատարրության հաստատումը։

Կոմունիստական կուսակցության ստեղծումն ու ամրապնդումը, նրա ղեկավար դերի հաջող իրականացումը բանվոր դասակարգի մեծագույն նվաճումն է, կոմունիզմի համար մղվող նրա պայքարի ուժի ու եռանդի անսպառ աղբյուրը։

*Վ. Ի. Լենինը բոլշևիկների կուսակցությունն ստեղծեց որպես հետևողական պրոլետարական ինտերնացիոնալիստների կուսակցություն, որպես պրոլետարական հեղափոխականների միջազգային բանակի բաղկացուցիչ մաս։ Հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշին, բոլշևիկների կուսակցությունը բարձր է պահում այն, հարստացնում ու զարգացնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի տեսությունն ու պրակտիկան։ Մեր կուսակցության պատմությունը, նրա փառավոր գործունեությունը ազգային ու ինտերնացիոնալ խնդիրների զուգակցման վառ օրինակ է։ Միանգամայն իրավացի էր Վ. Ի. Լենինը, երբ գրում էր, թե «բոլշևիզմը* պիտանի է որպես տակտիկայի տիպար բոլորի համար» *(Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 28, էջ 372)։ Կոմունիստներն իրենց պայքարում ելնում են հեղափոխության զարգացման, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափություններից, որոնց խոր ըմբռնումը, յուրաքանչյուր տվյալ երկրի կոնկրետ պայմանների հետ դրանց զուգակցումը եղել և մնում են մարքսիստ-լենինյանների բնորոշ առանձնահատկությունը։*

*ՍՄԿԿ-ն, մարքսիզմ-լենինիզմի դիրքերից ելնելով, հետևողականորեն պայքարում է միջազգային կոմունիստական շարժման համախմբման համար։ Ժամանակակից պայմաններում սովետական ժողովրդի ազգային խնդիրների ու նրա ինտերնացիոնալ պարտքի միասնության մարմնավորում է ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների անշեղ կենսագործումը։*

*Սովետական պետության արտաքին քաղաքականությունը դասակարգային, սոցիալիստական քաղաքականություն է։ Այն նպատակաուղղված է՝ ստեղծելու բարենպաստ արտաքին պայմաններ մեր երկրում կոմունիստական շինարարության համար, ամրապնդելու սոցիալիստական համագործակցության երկրների եղբայրական միասնությունը, աջակցելու բանվորական ու ազգային-ազատագրական շարժմանը, ամրապնդելու ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը և խաղաղ գոյակցությունը սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների միջև։*

*ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների առաջադրած խաղաղության ծրագիրը, որը հաջողությամբ իրականացվում է կուսակցության ու սովետական պետության ջանքերով, հսկայական ներգործություն ունի միջազգային կյանքի պոզիտիվ զարգացման վրա։ Սովետական Միությունը, սոցիալիզմի եղբայրական երկրները և մյուս խաղաղասիրական ուժերը ճեղքեցին «սառը պատերազմի» ճակատը և դրին միջազգային հարաբերություններում լարվածության թուլացման բարերար պրոցեսի սկիզբը, որը դրական մեծ արդյունք է տվել։*

*Այնուհանդերձ, չպետք է մոռանալ, որ միջազգային կյանքում դրական տեղաշարժերը արդյունք են իմպերիալիստական ուժերի դեմ մղված սկզբունքային պայքարի։ Տակավին լրիվ չեն հաղթահարվել միջազգային լարվածության թուլացման ճանապարհին հանդիպող վտանգավոր խոչընդոտները, մեր դասակարգային հակառակորդները, միջոցների միջև խտրություն չդնելով, փորձում են սոցիալիզմի երկրներում անցկացնել ռեակցիոն բուրժուական գաղափարախոսությունը։*

*Կուսակցության XXV համագումարի, ինչպես և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան որոշումներում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում առանձնահատուկ ուժով շեշտվում է, որ արդի պայմաններում անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը, ուժեղացնել դասակարգային զգոնությունը, մշտապես հակահարված տալ իմպերիալիզմի ռեակցիոն շրջանների ագրեսիվ ոտնձգություններին, ամեն մի թշնամական գաղափարական դիվերսիայի։ Առաջիկայում ևս գաղափարական աշխատանքում հույժ կարևոր է սովետական մարդկանց, կոմունիզմի անձնվեր կառուցողներին դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներին նվիրվածության ոգով։*

*Համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություններ են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար։ Պատահական չէ, որ ավելի է սրվում երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը, իմպերիալիստական պրոպագանդան ավելի ու ավելի խորամանկ է դառնում։ Երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար։ Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, ներգործուն պրոպագանդիստական աշխատանք։*

*ՍՍՀՄ նոր Սահմանադրության գործադրվելուց հետո ավելի է մեծանում կուսակցության՝ որպես սովետական հասարակության քաղաքական սիստեմի միջուկի, դերն ու պատասխանատվությունը։ Գործելով Սահմանադրության շրջանակներում, կուսակցական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները կոչված են հաստատակամորեն հասնելու այն բանին, որ Հիմնական օրենքի պահանջներն անշեղորեն պահպանվեն պետական, հասարակական կազմակերպությունների և պաշտոնատար անձանց կողմից, որ մարդիկ լավ իմանան իրենց իրավունքներն ու պարտականությունները, դրանց իրականացման եղանակներն ու մեթոդները, հստակորեն ըմբռնեն իրենց քաղաքացիական պարտքը։*

*Մեր օրերում, երբ աճում են հասարակական վերափոխումների մասշտաբներն ու բարդությունը, մեծանում են կոմունիստներին ներկայացվող պահանջները։ Ահա ինչու կուսակցության շարքերն այսօր համալրվում են նրանց հաշվին, ովքեր արժանացել են սկզբնական կազմակերպության, ողջ կոլեկտիվի վստահությանը, ովքեր ակտիվորեն են դրսևորում իրենց արտադրության մեջ և հասարակական կյանքում։ Մեր կուսակցության օրեցօր աճող հեղինակության մասին է խոսում այն փաստը, որ այժմ նրա անդամների թիվն անցնում է 16 միլիոնից։ Հիշենք, որ մեծ Հոկտեմբերի նախօրյակին այն իր շարքերում ուներ ընդամենը 350 հազար մարդ։*

*Կուսակցության կյանքն ու գործունեությունը բնութագրվում են դեմոկրատիզմի մշտական խորացմամբ, կազմակերպությունների ակտիվությամբ, ընդհանուր կուսակցական գործի համար կոմունիստների պատասխանատվության բարձրացմամբ։*

*«Կուսակցության ղեկավար դերի աճը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մի պրոցես է, որ անցնում է մեր սոցիալիստական հասարակության միջով, սերտորեն կապված է նրա ողջ զարգացման հետ և արտացոլում է նրա օբյեկտիվ պահանջները»։*

***

*«Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։ լենինյան այս թևավոր խոսքերը վաղուց իրականություն են դարձել մեր երկրում։ Մեծ Լենինի ստեղծած կոմունիստների կուսակցությունը, հավատարիմ բոլշևիզմի ավանդույթներին, այսօր հմտորեն գլխավորում է մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման համաժողովրդական գործը։*

---

# ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ՝ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Ա. Ա. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ իրենց ստեղծագործական եռանդով, կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները։ Մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում կարևոր նշանակություն ունեցան ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը, մեծ Հոկտեմբերի փառապանծ 60-ամյակի տոնակատարության անցկացումը։ Օրավուր բարձրանում է սովետների երկրի հեղինակությունը, նրա ծանրակշիռ դերն արդի աշխարհում։

Զարգացած սոցիալիզմի մեծագույն նվաճումը սովետական մարդն է, կոմունիզմի անխոնջ շինարարը։ Նրա բարոյական կերպարը ձևավորվել է նոր կյանքի կերտման պայքարում, մարմնավորելով այնպիսի վսեմ հատկանիշներ, ինչպիսիք են՝ նվիրվածությունը կոմունիզմի գաղափարներին, կոմունիստական կուսակցության գործին, սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով համակվածությունը. հատկանիշներ, որոնք դարձել են սովետական մարդու կենսահաստատման պաթոսը։ Սովետական մարդու գաղափարաբարոյական կերպարն ինքնիրեն չի ձևավորվել։ Այստեղ էական են ինչպես նոր կյանքի կառուցման բարերար ներգործությունը, այնպես և մարքս-լենինյան գաղափարների պրոպագանդման ուղղությամբ կոմունիստական կուսակցության հետևողական ու ծրագրված գործունեությունն աշխատավորական լայն զանգվածների շրջանում։

Կուսակցությունը մշտապես առաջնորդվում է լենինյան այն իմաստուն դրույթով, որ կոմունիստական շինարարության պրոբլեմների լուծման հաջողությունը վերջին հաշվով պայմանավորված է մասսաների բարձր գիտակցականությամբ, նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվությամբ, ստեղծագործական նախաձեռնությամբ, այն բանով, թե սովետական յուրաքանչյուր քաղաքացի ինչպիսի՞ անձնական ավանդ է ներդնում կուսակցության հոյակապ պլանների իրականացման պայքարում։

Այսօր մեր առաջնահերթ խնդիրն է՝ է՛լ ավելի բարձրացնել սովետական մարդկանց աշխատանքային ակտիվությունը, նվաճել երկրի ժողովրդական տնտեսության տասներորդ հնգամյակի բնագծերը։ Այդ խնդիրները պատշաճ արտացոլում են գտել կուսակցության փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում ու զեկուցումներում։

Այդ խնդիրների հաջող լուծմանն է ուղղված գաղափարական ճակատի բոլոր օղակների գործունեությունը։ Աշխատավորների կոմունիստական դաստիարակության համակարգում առանձնահատուկ տեղ ունի դասախոսական պրոպագանդան։ Այն, ինչպես նշվում է «Դասախոսական պրոպագանդայի վի-



ճակի և դրա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հայտնի որոշման մեջ, ամրակայվել է երկրի հոգևոր կյանքում, դարձել սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի, կենսական ակտիվ դիրքորոշման, գաղափարաքաղաքական ու բարոյական բարձր հատկությունների ձևավորման ազդու գործոն, կարևոր դեր է խաղում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման գործում։

Կուսակցության Կենտկոմի այդ որոշումը, որը բխում է ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից, հասարակական պրոցեսների և կենդանի պրակտիկայի խոր ու բազմակողմանի վերլուծության հիման վրա կողմնորոշում է գաղափարադաստիարակչական աշխատանքն իրականացնել կոմպլեքսային ձևով։

Դասախոսական պրոպագանդայի արդյունավետության բարձրացումը նախ և առաջ նշանակում է գաղափարական աշխատանքի արդի պայմանների համակողմանի հաշվառում։ Բանն այն է, որ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ տեղի է ունենում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի ուղիների ու միջոցների զգալի ընդլայնում։ Մեր երկրում վերջին տարիներին զգալիորեն ավելացել են թերթերի տարեկան տպաքանակը, ռադիոընդունիչների, հեռուստացույցների թիվը։ Այս պրոցեսը շարունակվում է, մեծացնելով ինֆորմացիայի հոսքը, որը ներխուժում է հասարակության բոլոր ոլորտները, ամեն մի ընտանիք, ամեն մի տուն։ Բայց ինչ թափով էլ զարգանան մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը, ունկնդիրների առջև դասախոսի, պրոպագանդիստի, ագիտատորի ասած կենդանի խոսքը մնում է կուսակցության կարևոր գաղափարական զենքը։ Բանավոր խոսքը, դասախոսի անմիջական շփումը լսարանի հետ ունեն այնպիսի յուրահատկություններ, որոնք չեն կարող փոխարինվել որևէ այլ միջոցներով։ Դասախոսի ելույթի ժամանակ մշտապես առկա է ուղղակի և հետադարձ կապը։

Այս առնչությամբ առանձնապես կարևորվում է լենինյան ցուցումն այն մասին, որ բանավոր պրոպագանդան և ագիտացիան հնարավոր չէ փոխարինել մեկ այլ բանով ո՛չ այժմ, ո՛չ էլ երբեք։ Դասախոսական պրոպագանդայի ներգործուն ուժի այդ առանձնահատկությունը շեշտում է նաև ընկեր Լ. Ի. Բրեժնևը իր Մալայա զեմլյա և Վերածնունդ հուշագրություններում։

Մեր հանրապետությունում նույնպես օրավուր զարգանում և կատարելագործվում են գիտելիքների պրոպագանդման ձևերն ու մեթոդները։ Լայն տարածում են ստացել լեկտորիումները, դասախոսական ցիկլերը, հասարակական-քաղաքական ընթերցումները։ Այդ գործում իրենց կարևոր դերն ունեն կուսակցության քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերը, «Գիտելիք» ընկերության կազմակերպությունները։ Դասախոսական խմբերն ու «Գիտելիք» ընկերությունը հիրավի դարձել են անհրաժեշտ և գործուն օղակներ։ Քաղաքներում և շրջաններում ավելի հաճախակի են լինում պրոպագանդիստական խմբերը։ Դասախոսական-պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ է կուտակվել, օրինակ, Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Աբովյանի, Աշտարակի, Արտաշատի, Գորիսի, Հրազդանի, Նաիրիի, Նոյեմբերյանի, Թալինի և ուրիշ կուսակցական կազմակերպություններում։

Արդյունաբերական շատ ձեռնարկություններում լավ ավանդույթ է դարձել դասախոսությունների միասնական օրերի սահմանումը։ Որոշ չափով բարելավվել է ժողովրդական համալսարանների գործունեությունը։ Այդ աշխատանքներին հասարակական հիմունքներով ակտիվ մասնակցում են մեր բազմաթիվ դասախոսները, որոնց շնորհակալ նվիրումն արժանի է հասարակական խրախուսանքի։

Անտարակույս դրական տեղաշարժեր կան։ Սակայն, ելնելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշման դրույթներից ու հանձնարարականներից, անհրաժեշտ է հիմնական ուշադրությունը կենտրոնացնել դեռևս չլուծված խնդիրների վրա, միջոցներ ձեռնարկել դասախոսական պրոպագանդան ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումների պահանջների մակարդակին բարձրացնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ մասնավորապես նշվում է, որ սովետական

հասարակության զարգացման ներկա փուլի առանձնահատկությունը թելադրում է նորովի մոտենալ մեր աշխատանքի բովանդակության գնահատմանը, դասախոսական պրոպագանդայի թեմատիկ ուղղվածությանը, նրա կազմակերպման ձևերին ու մեթոդներին։ Այդ որոշման մեջ հատկապես շեշտվում է դասախոսության ներգործունության ըստ ամենայնի բարձրացման կուսակցական պահանջը։

Ելնելով այսօրվա խնդիրներից, կարելի է առանց երկմտելու ասել. մեզանում դեռևս դասախոսական պրոպագանդան ամենուրեք չէ, որ տարվում պատշաճ մակարդակով և ցանկալի արդյունավետությամբ, հաղթահարված չէ ձևականությունը։ Դասախոսական պրոպագանդան դեռևս իր ողջ կարողությամբ չէ, որ նպաստում է արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտային, շինարարական կազմակերպությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, աշխատավորական մյուս կոլեկտիվների արտադրական ակտիվության զարգացմանը, հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացմանը, հզորությունների ռացիոնալ օգտագործմանը, առաջավոր փորձի տարածմանն ու ներդրմանը։

Թվական առումով, կարծես թե, դասախոսական ուժերի պակաս չկա։ Հենց միայն «Գիտելիք» ընկերության շարքերում այսօր միավորված են հանրապետության գիտությունների ակադեմիայի 60 իսկական և 65 թղթակից-անդամներ, գիտության 520 դոկտոր, ավելի քան 2200 թեկնածու, հարյուրավոր կուսակցական ու սովետական աշխատողներ, արվեստի և գրականության գործիչներ։ Սակայն բարձր որակավորում ունեցող այս դասախոսներից շատերը, անգամ կեսից ավելին, միայն դեպքից դեպք են մասնակցում դասախոսական պրոպագանդային։ Վատ են օգտագործվում հանրապետության ուսուցիչների լավագույն ուժերը։ Թերևս դա է պատճառը, որ մի շարք կոլեկտիվներում, հատկապես գյուղական շրջաններում, առավել ևս՝ հեռավոր վայրերում կարդացվող դասախոսությունների միայն 15—20 տոկոսն է իրականացվում բարձրորակ մասնագետների ուժերով։

Ինչպես հայտնի է, հանրապետությունում շատ են փոքրաթիվ աշխատանքային կոլեկտիվ ունեցող կազմակերպությունները։ Հենց այս պատճառով դրանց գերակշռող մասը «Գիտելիք» ընկերության սկզբնական կազմակերպություններ չունեն։ Նման կոլեկտիվներում դասախոսություն կազմակերպելն ամբողջովին թողնված է ղեկավարի հայեցողությանը։ Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել՝ այդ կազմակերպությունների աշխատողներին ներգրավելու մասսայական պրոպագանդայի ոլորտը։

Չնայած դրական տեղաշարժ է նկատվում ժողովրդական համալսարանների աշխատանքում, այնուամենայնիվ ուսումնադաստիարակչական գործունեությունն այստեղ ցանկալի բարձրության վրա չէ։ Շատ տեղերում պարապմունքներն անց են կացվում այնպիսի պլաններով ու ծրագրերով, որոնք կազմված են առանց հաշվի առնելու ունկնդիրների հանրակրթական և մասնագիտական մակարդակը։ Պետք է ուղղակի ասել, որ գաղափարական աշխատանքի այս օջախների մի մասի գործելակերպը պարզապես չի համապատասխանում դրանց կոչմանը։

Քիչ չեն նաև թերությունները կոնֆերանսների կազմակերպման գործում։ Որոշ տեղերում արմատավորվել է մի այսպիսի սովորույթ. հրավիրում են երկու, երբեմն՝ երեք դասախոսի, լսում նրանց և միջոցառումն անվանում են գիտատեսական կամ գիտագործնական կոնֆերանս։

Ձգտելով ավելացնել դասախոսությունների թիվը, որոշ կազմակերպություններ պահանջվող մտահոգություն չեն ցուցաբերում դրանց որակի, բովանդակության նկատմամբ։ Շատ դասախոսությունների խոցելի տեղը առաջվա նման մնում է լուսավորչականությունը, դասախոսների տեսական և մեթոդական ցածր պատրաստականությունը, հռետորական արվեստին և լսարանի բարոյահոգեբանական առանձնահատկություններին հասու լինելու պակասը։ Հենց դա է պատճառը, որ դեռևս քիչ չեն անհետաքրքիր, կոմունիստական շինարարության պրակտիկայից կտրված դասախոսությունները։ Դեռևս կան դասախոս-



ներ, որոնք քիչ են հոգում այն մասին, որ գիտելիքները դառնան համոզմունք, որ ունկնդիրները տիրապետեն տեսական ու գործնական պրոբլեմներն ինքնուրույն վերլուծելու, այն իրենց կոնկրետ անելիքների հետ կապելու կարողությանը։ Լինում են դեպքեր, երբ, այսպես ասած՝ նույն «ունիվերսալ» դասախոս-անհատը աշխատավորական կոլեկտիվներում հանդես է գալիս թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական և թե՛ կուլտուրական շինարարության հարցերի շուրջ։ Բնական է, որ այսպիսի դասախոսները լսարանին խոր ու կայուն գիտելիքներ հաղորդել չեն կարող։

Այդ առթիվ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած իր ճառում լավ է ասել ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Այստեղ հատկապես անհանդուրժելի են անհոգության և ձևամոլության դրսևորումները։ Ժամանակն է, որ գաղափարական ճակատի բոլոր աշխատողները վերջ տան տարրական ճշմարտությունների մեխանիկական, չմտածված կրկնության՝ տեղ-տեղ դեռևս արմատախիլ չարված պրակտիկային, բառային ճարճատյունին։ Ժամանակն է կանոն դարձնել մարդկանց հետ պարզ ու մատչելի լեզվով խոսելը...»։

Արդի պայմաններում մարդկային զանգվածներն ամեն օր, ամեն ժամ հսկայական ինֆորմացիա են ստանում։ Հասկանալի է, որ նորովի պետք է մոտենալ դասախոսի դերին և դասախոսությունների կազմակերպմանը։ Ժամանակակից դասախոսը պետք է հաշվի առնի ունկնդիրների գիտելիքների մակարդակը, այնպես անի, որ դասախոսությունը չվերածվի հանրահայտ ճշմարտությունների կրկնության։ Նրա գլխավոր խնդիրը փաստերի և երևույթների կոնկրետ վերլուծությունն է, եզրակացություններ և ընդհանրացումներ կատարելը։ Այսօր դասախոսությունը պետք է նպաստի խորացնելու և լրացնելու այն գիտելիքները, որոնք ունկնդիրներն ստանում են ուսումնական հաստատություններում, պրոպագանդայի և մասսայական ինֆորմացիայի այլ աղբյուրներից։ Մարդկանց վրա արդյունավետ ներազդելու համար դասախոսությունը պետք է լինի բառիս իսկական իմաստով գիտական ու ճշմարտացի, վառ ու պատկերավոր։ Միաժամանակ յուրաքանչյուր դասախոսություն, աշխատավորներին համոզելուց և նրանց ինֆորմացիա տալուց բացի, պետք է ակտիվորեն նպաստի հասարակական կարծիքի մշակմանը։

Դասախոսների ելույթները պետք է օգնեն արդյունավետ պայքար մղելու մեր կյանքում տակավին տեղ գտած թերությունների, անցյալի մնացուկների, բուրժուական-սպառողական հոգեբանության, ծրիակերության և սոցիալիստական հասարակարգին խորթ այլ դրսևորումների դեմ։ ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումից հետո այդ ուղղությամբ տարվող ձեռնարկումներում որոշակի թափ ստացած պրոպագանդիստական աշխատանքն այսօր բավարար համարել չի կարելի։ Այս գործում դասախոսական լայն գործունեություն պետք է ծավալեն մանկավարժները, հոգեբանները, տնտեսագետները, իրավաբանները, գրականության և արվեստի գործիչները։ Հակահասարակական երևույթների դեմ պայքարում հանրապետության կուսակցական կազմակերպություններին օգնելու, աշխատավորների հասարակական կարծիքի մոբիլիզացման գործում դժվար է գերագնահատել մասսայական պրոպագանդայի դերը։

Փաստերը, սակայն, վկայում են, որ դեռևս անհրաժեշտ հետևողականություն ու համառ աշխատանք չի տարվում՝ բարձրացնելու դասախոսությունների գաղափարատեսական մակարդակը, նրանց հարձակողականությունը, ներգործունությունը։ «Գիտելիք» ընկերության հանրապետական կազմակերպության գիտամեթոդական խորհուրդները տակավին սիստեմատիկ օգնություն ցույց չեն տալիս քաղաքային, շրջանային և սկզբնական կազմակերպություններին, քիչ են զբաղվում դասախոսությունների որակի վերլուծությամբ, դասախոսական պրոպագանդայի դրական փորձի ուսումնասիրությամբ և տարածմամբ։ Դասախոսական պրոպագանդայի կազմակերպման գործում դեռևս անբավարար է հանրապետության շատ կուլտուր-լուսավորական հիմնարկությունների մասնակցությունը։ Ակումբներում, կուլտուրայի տներում և գրադարաններում հազվադեպ են կազմակերպվում հրապարակային դասախոսություններ, հասարակական-քաղաքական ընթերցումներ։ Դրանց մեծ մասում անհրաժեշտ պայ-

մաններ չեն ստեղծված բանավոր պրոպագանդայում տեխնիկական միջոցների և դիտողական նյութերի օգտագործման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը գաղափարական բոլոր հիմնարկություններից, գաղափարական ճակատի բոլոր աշխատողներից պահանջում է վերացնել եղած թերությունները և արմատապես բարելավել դասախոսական պրոպագանդայի վիճակը։ Որոշման մեջ ցույց են տրվում առաջադրված խնդիրների լուծման հիմնական մեթոդներն ու միջոցները։

Կուսակցական այս կարևոր փաստաթղթում առաջին հերթին շեշտվում է ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած գաղափարադաստիարակչական ամբողջ գործին կոմպլեքսային մոտեցում ապահովելու անհրաժեշտությունը։ Դա նախ և առաջ նշանակում է՝ կուսակցականության, համոզչականության և փաստարկվածության լենինյան սկզբունքների հիման վրա գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության բոլոր հարցերի շուրջ դասախոսությունների և զրույցների պլանաչափ կազմակերպում։ Այնուհետև, դա նշանակում է մասսայական լսարանի նկատմամբ շերտավորված մոտեցման ցուցաբերում, արտադրական կոլեկտիվների, աշխատավորների տարբեր խմբերի քաղաքական հասունության, կուլտուր-կրթական մակարդակի, մասնագիտական հետաքրքրությունների, սոցիալ-հոգեբանական և այլ առանձնահատկությունների բազմակողմանի հաշվառում։ Եվ, վերջապես, դասախոսական պրոպագանդայի բոլոր միջոցների արդյունավետ օգտագործումը սերտորեն առնչվում է գաղափարական աշխատանքի մյուս ձևերի հետ։

Դասախոսական պրոպագանդայում կոմպլեքսային մոտեցման իրականացման կարևոր նախապայմանը աշխատանքի հեռանկարային պլանավորումն է։ Անհրաժեշտ է, որպեսզի կոմպլեքսային մոտեցումը, իբրև դաստիարակչական բնագավառում կուսակցության քաղաքականության գիտականորեն հիմնավորված արտահայտություն, դառնա նոր մարդու ձևավորման ուղղությամբ ծավալվող ամբողջ գործունեության ելակետը։ Միայն այս դեպքում դասախոսությունները, զեկուցումները, մասսայական-քաղաքական միջոցառումները կնպաստեն միասնական խնդրի լուծմանը, այն է՝ մասսաների մոտ գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողությունների միասնության ապահովմանը։

Դասախոսական պրոպագանդան պետք է նպաստի, որպեսզի կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության հաջող իրականացման գործում ամեն մի աշխատանքային կոլեկտիվ դառնա նպատակների, բարոյաքաղաքական հայացքների միասնության, բարձր կազմակերպվածության, մեծ թե փոքր գործերում գիտակցական կարգապահության, աշխատանքում և կյանքում ընկերականության և փոխօգնության, մարդկային հարաբերություններում սկզբունքայնության և նրբանկատության իսկական օրինակ։

Այս տեսակետից կարևոր է, որ աշխատանքային կոլեկտիվներում դասախոսական պրոպագանդայի կազմակերպումը սերտորեն շաղկապվի նրանց սոցիալական զարգացման պլանների հետ։ Մեր խնդիրն է հասնել այն բանին, որ դասախոսական պրոպագանդան բոլոր կոլեկտիվներում առավելագույն չափով նպաստի սոցիալիստական մրցության ծավալմանը։

Առաջադրված խնդիրների հաջող կատարման համար վճռական նշանակություն ունի դասախոսների որակական կազմը։ Հանրահայտ է Վ. Ի. Լենինի միտքն այն մասին, որ դասախոսությունների քաղաքական ուղղությունը որոշվում է «ամբողջովին, բացառապես դասախոսների կազմով...»։

Դասախոսը կոմունիզմի համար մղվող պայքարի ակտիվ մարտիկ է, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության մեկնաբանը։ Լինել դասախոս, ժողովրդին հաղորդել մեր կուսակցության ճշմարտացի խոսքը՝ մեծ պատիվ է և բարձր վստահություն։ Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը տոգորված է մեծ հոգատարությամբ դասախոսական կադրերի պատրաստման և դաստիարակության նկատմամբ։

Մեր հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվում դասախոսական կադրերի պատրաստման և նրանց որակավորման բարձրացման ուղղությամբ։ Ստեղծվել են դասախոսական վարպետության դպրոցներ, սկսել են ավելի կանոնավոր գումարվել դասախոսների հանրապետական և փնջային սեմինարները։ Սակայն, ամբողջությամբ վերցրած, այդ աշխատանքը պահանջում է արմատական բարելավում։ Գաղտնիք չէ, որ դասախոսների հետ չի տարվում սիստեմավորված աշխատանք։ Շրջանային օղակում և, մանավանդ, սկզբնական կազմակերպությունում կարելի է հանդիպել դասախոսների, որոնք տարիներով չեն ընդգրկվում որակավորման բարձրացման որևէ սիստեմում։

Դասախոսական կազմը որակապես բարելավելու մեծ ռեզերվներ կան բուհերում, գիտահետազոտական ինստիտուտներում, ժողովրդական տնտեսության մասնագետների, գիտության և արվեստի գործիչների շրջանում։ Հատուկ ուշադրություն պետք է նվիրել դասախոսական կազմը ուսանող երիտասարդությունից և երիտասարդ մասնագետներից համալրելուն։ Մինչդեռ այդ ասպարեզում թե՛ կուսակցական կոմիտեները և թե՛ «Գիտելիք» ընկերության կազմակերպություններն անհրաժեշտ աշխատանք չեն կատարում։ Միայն բարձրորակ կադրերի պատրաստման հետևողական ու նպատակասլաց աշխատանքով մենք կարող ենք ապահովել դասախոսական պրոպագանդայի արդյունավետությունը և այն ուղղել առաջադրված խնդիրների հաջող լուծմանը։

Հանրապետությունում լայն թափ է ստանում Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարության նախապատրաստությունը։ Գաղափարական ճակատի բոլոր ջոկատների հետ մեկտեղ մեծ ու պատվավոր անելիքներ ունեն նաև դասախոսները։ Նրանք կոչված են համոզիչ ու վառ կերպով բացահայտելու հայ ժողովրդի կյանքում տեղի ունեցած պատմական այդ մեծագույն ակտի նշանակությունը։ Տոնակատարությունը լավագույն առիթ է՝ ցույց տալու մեր ժողովրդի ճակատագրում հատկապես ռուս մեծ ժողովրդի ունեցած պատմական դերը, սոցիալիստական ազգերի եղբայրական դաշինքի բարերար ազդեցությունը սովետական ժողովուրդների ծաղկման ու բարգավաճման գործում։

Դասախոսական պրոպագանդայի, ինչպես և գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքի կազմակերպման գործում անհրաժեշտ է հմտորեն օգտագործել մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տոնակատարության, ՍՍՀՄ նոր Սահմանադրության և հանրապետության Հիմնական օրենքի քննարկման և ընդունման ժամանակաշրջանում կուտակված քաղաքական-մասսայական աշխատանքի հարուստ փորձը։

Վերջերս հանրապետական «Գիտելիք» ընկերության հերթական պլենումը քննարկեց կազմակերպության առջև դրված խնդիրները, որոնք բխում են «Դասախոսական պրոպագանդայի վիճակի և դրա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հանձնարարականներից, միջոցառումներ մշակեց դասախոսական պրոպագանդան ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների ոգով վերակառուցելու նպատակով։

Ընկերությունը պետք է ամեն ինչ անի, որպեսզի որոշմանը հետևեն կոնկրետ գործեր, որպեսզի ապահովվի գաղափարական այդ կարևորագույն բնագավառի գործունեության արդյունավետությունը։

Սովետական մտավորականի համար չկա ավելի պատվավոր ու շնորհակալ խնդիր, քան կոմունիզմ կառուցողի հոգևոր դաստիարակությունը, ճշմարիտ ու վառ խոսքով նրա քաղաքացիական ու բարոյական հատկանիշների կատարելագործումը։ Դասախոսությունների, բանավոր պրոպագանդայի բոլոր ձևերի ներգործունությունն առաջին հերթին պայմանավորված է գաղափարական աշխատանքի այդ կարևոր բնագավառում կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացմամբ։

Կուսակցական կոմիտեների առաջնահերթ խնդիրն է՝ ձեռնարկել բոլոր միջոցները դասախոսական պրոպագանդան բարձրացնելու կուսակցության արդի պահանջների մակարդակին, գործն այնպես կազմակերպել, որ հանրապետության դասախոսական կադրերի, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ոլորտում կուսակցության այդ ակտիվ օգնականների բազմահազարանոց բանակն ավելի մեծ եռանդով իր ավանդը ներդնի ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների իրականացման գործում, կոմունիզմի համար մղվող պայքարում։

---

# ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՀԱՋՈՐԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ**

*ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ առաջին հասարակությունն է, որտեղ բանվոր դասակարգի սոցիալական շահերի և կոմունիստական իդեալների հիման վրա ստեղծվում և ամրանում է բոլոր դասակարգերի, ազգերի, ազգությունների և սոցիալական այլ խմբերի միասնությունը։ Հասարակության կառուցվածքի բաղկացուցիչ տարրերի արմատական շահերի ու նպատակների այդպիսի միասնությունը բազմապատկում է աշխատավորների ստեղծարար ուժերը, հնարավորություն է ընձեռում կենտրոնացնել ու կազմակերպել նրանց աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվությունը՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության արմատական խնդիրների լուծման նպատակով։ Դա ապահովվում է կոմունիստական կուսակցության քաղաքականությամբ ու ղեկավարությամբ, կուսակցություն, որը լենինաբար, հմտորեն և իմաստուն կերպով ժողովրդական եռանդի ու նախաձեռնության բազմապիսի հոսանքները վարում է կոմունիստական ստեղծագործության միասնական հունով։*

*Հասուն սոցիալիզմի փուլում սովետական ժողովրդի միասնությունն ավելի է խորացել ու ամրապնդվել, որը համակողմանիորեն դրսևորվել է ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած վիթխարի պլանների կենսագործման նպատակով բոլոր դասակարգերի, ազգերի և սոցիալական այլ խմբերի ծավալած համերաշխ ու միաձույլ գործունեության մեջ։ Սովետական ժողովրդի միասնության, լենինյան կուսակցության շուրջը նրա համախմբվածության հիանալի ապացույց էին մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տոնակատարությունը, ՍՍՀՄ նոր Սահմանադրության քննարկումն ու ընդունումը։ ՍՍՀՄ Սահմանադրությունը օրենսդրականորեն վավերացրեց սովետական ժողովրդի տարրերի, մեր ողջ հասարակության կառուցվածքի որակական այդ նոր իրավիճակն արդի փուլում։ Հիմնական օրենքում ասված է. «Դա սոցիալիստական հասուն հասարակական հարաբերությունների հասարակություն է, որտեղ բոլոր դասակարգերի և սոցիալական խավերի մերձեցման, բոլոր ազգերի և ազգությունների իրավական ու փաստական հավասարության, նրանց եղբայրական համագործակցության հիման վրա կազմավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ»։*

*Սոցիալիզմի և կոմունիզմի համար մարտնչող բոլոր սերունդների հոգևոր աշխարհի և իդեալների հաջորդականությունը մարդկանց պատմական նոր հանրության ձևավորման ու զարգացման գլխավոր գործոններից մեկն է։ Այդ գործոնի դերի ճիշտ բնորոշման համար պետք է հաշվի առնել, որ տվյալ հանրությունը ոչ թե ստատիկ վիճակ է, այլ օբյեկտիվ կապերի ու հարաբերությունների զարգացող ու խորացող դինամիկ սիստեմ։ Նման մոտեցմամբ բացահայտվում է, որ սերունդների հաջորդականության օրինաչափությունները օրգանապես «ներհյուսված են» այդ կապերի և հարաբերությունների կառուցվածքում, դեռ ավելին՝ ակտիվորեն սատարում են դրանց զարգացմանը։*



1.

*Սոցիալիստական հասարակության ամեն մի հաջորդ սերունդ, հենվելով նախորդ սերունդների հասումների, նրանց ստեղծած նյութական ու հոգևոր արժույթների, տնտեսական, սոցիալ-քաղաքական և այլ հարաբերությունների ու ինստիտուտների վրա, կատարելագործում և հարստացնում է դրանք՝ դրանով իսկ խորացնելով սովետական ժողովրդի բոլոր բաղկացուցիչ տարրերի ընդհանրությունը։ Այս պրոցեսում նոր սերունդն առավել լրիվ է վերափոխում նաև իր սոցիալական էությունը, իր հոգևոր աշխարհը, դառնալով ավելի հասուն և ավելի ներդաշնակ հասարակական հարաբերությունների մարմնավորողը։ Այդ ճանապարհին նա լուծում է նախորդ սերունդների գործունեության ընթացքում հասունացած հասարակական խնդիրները, պրոբլեմներն ու հակասությունները, հենվելով նրանց բարձր հասումների վրա և առավել զարգացնելով դրանք՝ ավելի լիակատար չափով է հաղթահարում նախորդ փուլերի սահմանափակվածությունը։ Այսպիսով, կոմունիստական ֆորմացիայում ևս սերունդների հաջորդականությունը հանդես է գալիս որպես դիալեկտիկայի գլխավոր օրենքներից մեկի՝ բացասման բացասման օրենքի իրացման սոցիալական ձև։ «Պատմությունը,— նշել են գիտական կոմունիզմի հիմնադիրները,— ոչ այլ ինչ է, քան առանձին սերունդների հաջորդական հերթափոխում, որոնցից յուրաքանչյուրն օգտագործում է բոլոր նախորդ սերունդների՝ իրեն հանձնած նյութերը, կապիտալը, արտադրաուժերը. դրա շնորհիվ տվյալ սերունդը, մի կողմից, միանգամայն փոփոխված պայմաններում շարունակում է ժառանգած գործունեությունը, մյուս կողմից՝ միանգամայն փոփոխված գործունեությամբ ձևափոխում է հին պայմանները»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 44—45)։

*Դիալեկտիկական այս պրոցեսը, որ դիտվում է առաջընթացի շարժիչ ուժերի բնույթի և դասակարգերի փոխհարաբերության էվոլյուցիայի վրա ունեցած ազդեցության տեսանկյունից, ուղղակի հակադիր արդյունքներ է դրսևորում անտագոնիստական հասարակություններում և սոցիալիզմի պայմաններում։ Այսպես, թե՛ անտագոնիստական ամեն մի ֆորմացիայի շրջանակներում և թե՛ դրան հաջորդող յուրաքանչյուր ֆորմացիայում, նախորդի համեմատությամբ, սերունդների հաջորդականությունը կատարվում է հիմնականում տվյալ դասակարգի սահմաններում, դրանով իսկ հանգեցնելով դասակարգային շահերի պահպանման և հակասությունների խորացման, հասարակության պառակտման։ Մինչդեռ, կոմունիզմի արդեն իսկ առաջին փուլում, հանրային սեփականության լիակատար տիրապետության և մասսաների գիտակցության մեջ կոմունիստական աշխարհհայացքի հաստատման պայմաններում ստեղծվում է սոցիալ-դասակարգային բոլոր խմբերի և աշխատավորական խավերի կենսական արմատական շահերի ու նպատակների միասնություն՝ այդ պրոցեսում բանվոր դասակարգի առաջատար դերի պահպանմամբ։ Հենց այս միասնությունը նորոգում ու զարգացնում են նոր սերունդները։*

*Սովետական հասարակության սոցիալական կառուցվածքում ինտեգրացման խորացումը դիալեկտիկական բարդ պրոցես է։ Բանն այն է, որ նոր սերունդները ո՛չ միայն ամրապնդում են հասարակության առկա սոցիալական կառուցվածքի իրենց ժառանգած տարրերի (բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության) կապերն ու հարաբերությունները, այլև ծավալում են այնպիսի գործունեություն, որի ընթացքում աստիճանաբար հաղթահարվում է հասարակության կառուցվածքի սոցիալական շերտավորումը, այսինքն՝ մարդկանց միջև հասունանում են նոր, բուն կոմունիստական «ամրակապեր»։*

*Տվյալ դեպքում ինչ պետք է հասկանալ «նոր սերունդ» ասելով։ Չի կարելի համաձայնել այն տեսակետին, ըստ որի նոր սերունդ ասելով պետք է նկատի ունենալ միայն երիտասարդությանը։ Այս դեպքում սերունդների հաջորդականությունն անխուսափելիորեն հանգեցվում է նախորդ սերունդներից երիտասարդության ստացած ժառանգության, այլ կերպ ասած՝ սերունդների փոխգործողության ու հաջորդականության սոսկ դեմոգրաֆիական, տվյալ դեպ-*

քում՝ տարիքային տեսակետին։ Իսկ դա էականորեն խեղաթյուրում և գռեհկացնում է սերունդների հաջորդականության և նրանց միջև եղած սահմանների սոցիալ-պատմական բովանդակությունը։ Հասկանալի է, որ հաջորդականությունը մշտապես ենթադրում է նաև երիտասարդության կողմից նախորդ սերունդների նվաճումների, փորձի, գիտելիքների, արժույթների յուրացում։ Բայց սա հաջորդականության տարրերից լոկ մեկն է։ Սերունդների հաջորդականությունն առնչվում է նաև առաջընթացի նոր, պատմականորեն ավելի բարդ խնդիրների հետ։ Սխալ է այն մտայնությունը, թե իբր առաջընթացի երեկվա օրը մարմնավորում են ավագ տարիքային խմբի մարդիկ, իսկ առաջընթացի արդի փուլի կրողը միայն երիտասարդությունն է... Մինչդեռ սովետական հասարակության մեջ նախորդ սերունդների գործի ժառանգորդն ու շարունակողն այն արդիական (այսինքն՝ «նոր») սերունդն է, որի մեջ մտնում են մարդկանց տարիքային մի քանի խմբեր։ Եվ շնորհիվ նրանց միասնության, համատեղ գործունեության, շնորհիվ այն բանի, որ նրանք իրենց հատկանիշներով (ավագ սերնդի կենսափորձը և իմաստությունը, երիտասարդության եռանդը) փոխադարձաբար լրացնում են միմյանց, հնարավոր է դառնում իրականացնել կոմունիզմի կառուցման այն նոր խնդիրները, որոնց սուբյեկտը տարիքային այդ բոլոր խմբերն են՝ կոմունիզմի ակտիվ կառուցողների միասնական սերունդը։ Այլ կերպ ասած, ոչ թե պարզապես տարիքային, այլ պատմական-ժամանակային տեսանկյուն, այսինքն՝ հաջորդական ժամանակի կապվածություն սոցիալական ժամանակի, օբյեկտիվորեն հասունացած պատմական, սոցիալ-դասակարգային խնդիրների բնույթի հետ— ահա թե ինչն է ծառայում որպես օբյեկտիվ հիմք սոցիոլոգիական պլանով «սերունդ» չափանիշը մշակելիս։ Ելնելով դրանից, Վ. Ի. Լենինը Ռուսաստանի հեղափոխական շարժման պատմության մեջ տարբերում էր երեք սերունդ՝ ազնվական հեղափոխականներ, հեղափոխական ռազնոչինեցներ և հեղափոխական պրոլետարիատ (տե՛ս Վ. Ի. Լենին, **Երկեր**, հ. 18, էջ 20)։ Սերունդների հաջորդականության օբյեկտիվ հիմքի,նրանց միջև եղած սահմանների հանդեպ այս դասակարգային, պատմական մոտեցումը Լենինը կիրառել և զարգացրել է նաև հետհոկտեմբերյան դարաշրջանի նկատմամբ (տե՛ս Վ. Ի. Լենին, **Երկեր**, հ. 31, էջ 352)։

Սերունդների հաջորդականության օրինաչափությունների վերլուծությունը հաստատում է, որ ամեն մի նոր սերունդ լուծում է պատմական նոր խնդիրներ և դրա համար մշակում համապատասխան մեթոդներ, պայքարի և ստեղծագործման միջոցներ։

Սոցիալիստական հասարակության մեջ, ի տարբերություն դասակարգային-անտագոնիստական հասարակությունների, սերունդների հաջորդականությունը խորացնում է հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի բոլոր տարրերի միասնությունը։ Սա հնարավոր է դառնում այն բանի շնորհիվ, որ ամեն մի հաջորդ սերունդ, հենվելով արտադրաեղանակի՝ իր ժառանգած մակարդակի, սոցիալական ու գաղափարախոսական հարաբերությունների վրա, իր գործունեության ընթացքում կատարելագործում է դրանք, ուժեղացնում արտադրաուժերի ինտերնացիոնալացման, սեփականության ձևերի մերձեցման միտումները, հարստացնում գործունեության և դրա արդյունքների փոխանակումը դասակարգերի և սոցիալական այլ խմբերի ու խավերի, ազգերի և ազգությունների միջև։ Նա կատարելագործում է սոցիալիստական դեմոկրատիան, լայնացնում սոցիալական հավասարության շրջանակները։ Երիտասարդության դաստիարակության գործում հենվելով նյութական, սոցիալական ու կուլտուրական ավելի հասուն հնարավորությունների, գիտելիքների ու փորձի վրա, նոր սերունդը ձգտում է դրանք օրգանապես ներդնել սոցիալական ակտիվ գործունեության մեջ։ Այս պրոցեսը դրսևորվում է հասարակական հարաճուն պահանջմունքներում։

Կուսակցությունը փոփոխված պայմաններին համապատասխան առաջադրում է նոր խնդիրներ։ Այսպես, արդի սերունդը, այդ թվում և երիտասարդությունը, զարգացած սոցիալիզմի փուլին համապատասխան, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների բազայի վրա լուծում է էկոնոմիկայի վերակինման խնդիրները և այդ հիման վրա էականորեն բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, ամբողջ հասարակական արտադրության արդյունավետությունն ու որակը, կատարելագործում հասարակական հարաբերությունները, խորացնում գործունեության դեմոկրատական նորմերն ու մեթոդները, պայքարում է յուրաքանչյուր մարդու՝ իբրև բազմակողմանի, ներդաշնակ անհատի, զարգացման համար։ Կոմունիզմի հիմքերի կառուցման այս դարակազմիկ խնդիրների լուծման համեմատ, որ վիճակվել է նոր սերնդին, որակական փոփոխություններ են կատարվում սովետական հասարակության կառուցվածքում։ Արտադրաուժերի, ամենից առաջ՝ աշխատանքի գործիքների հեղափոխականացումը և ժողովրդական տնտեսությունը վարելու ինտենսիվ մեթոդներին անցնելը նպաստում են սոցիալական հավասարության խորացմանը, արդի սերնդի մարդկանց գիտելիքների և որակավորման աճին, աշխատանքում, կենցաղում, հաղորդակցման ոլորտում նրանց կուլտուրական մակարդակի բարձրացմանը, հարաճուն պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը։ Անհատի սոցիալական դրության և շահերի մեջ եղած տեղաշարժերը հանգեցնում են նրան, որ հեռանկարում այդ շահերն ավելի քիչ կապված կլինեն անհատի անմիջական դասակարգային պատկանելության հետ, կստանան համընդհանուր և բազմակողմանի բնույթ։ Հասարակության, կոլեկտիվի և յուրաքանչյուր անհատի (որի ազատ զարգացումն այժմ արդեն դարձել է բոլորի ազատ զարգացման պայման) շահերը կհասնեն բարձր ներդաշնակության։ Արդի սերունդը վիթխարի ավանդ է ներդնում որակական այդ նոր գործոններում, որոնք հասարակությանը, սովետական ողջ ժողովրդին միաձուլում են միասնական ամբողջի մեջ։ Նրա ստեղծագործական ջանքերն արդյունավետ և գործուն են դառնում այնքանով, որքանով որ օրգանական է այն ընդհանուրը, ինչը միահյուսում է նրա բաղկացուցիչ՝ սոցիալ-դասակարգային, էթնիկական, դեմոգրաֆիական և այլ մասերը։ Իսկ այդպիսի ամբողջականությունը մեծապես կախված է միջին և ավագ սերունդներից երիտասարդության ժառանգած նյութական, բանական և հոգևոր հասումների խորությունից։

2.

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն իրենց բազմաբնույթ գործունեության տեսադաշտում մշտապես պահում են երիտասարդությանը, ամեն կերպ խթանում նրա ինքնահաստատմանը հասարակական կյանքում, գնահատում հաջողությունները, հաշվի առնելով արդի կյանքում նրա «նորամուծության» աստիճանը։ Իսկ այդ խորապես կապված է արդի երիտասարդության գիտելիքների բովանդակության ու մակարդակի պրոգրեսիվ փոփոխությունների, տեխնիկական մակարդակով ավելի առաջավոր, պրոֆիլային արտադրության մեջ նրա ունեցած մեծ տեսակարար կշռի հետ (տարիքային այլ խմբերի համեմատությամբ), արտադրական որակավորումը բարձրացնելու գործում նրա ավելի արագ ռիթմի, անմիջական ինտերնացիոնալ շփման և բազմազգ խմբերի, կոլեկտիվների սիստեմում համատեղ գործունեության առավել բարձր գործակցի հետ և այլն։

Արդի երիտասարդության կենսագործունեությանը բնորոշ այս և ուրիշ միտումներն ուղղակի կամ անուղղակի կերպով ազդում են սովետական ժողովրդի միասնությունն ամրապնդող գործոնների կատարելագործման վրա։

Հասուն սոցիալիզմի փուլում առավելապես խորանում են երիտասարդության գաղափարական ու բարոյական կերպարի ընդհանուր գծերը, կյանքի, համաժողովրդական պայքարում իր տեղի և կոչման նկատմամբ ունեցած նրա հայացքները։ Այս ընդհանուրն առավել բազմակողմանիորեն և վառ կերպով է դրսևորվում երիտասարդության բոլոր խավերում, անկախ նրա սոցիալական պատկանելությունից։ Սա էլ հենց հնարավորություն է ընձեռում՝ սովետական երիտասարդությանը դիտելու որպես միասնական հասարակական խումբ, որպես սովետական ժողովրդի օրգանական մաս։ Այսպես, անկախ այն բանից, թե սոցիալ-դասակարգային, ազգային ինչ խմբից է «սերել» նա, ինչ լոկալ միջավայրում է դաստիարակվել, երիտասարդությունն այս պրոցեսում ժառանգում է, ամենից առաջ, սոցիալիստական հասարակությանը

բնորոշ արժեքները։ Դա նշանակում է, որ ապագա սերունդների հաջորդականության ավելի հասուն և ներդաշնակ ձևերի նախապատրաստման փուլում ակտիվ ազդեցություն են թողնում այնպիսի գործոններ, ինչպիսիք են միջավայրի հիմնական գծերի և երիտասարդ մարդու դաստիարակության ձևերի, նրա շփման ու գործունեության փոխանակման բազմակողմանի զարգացումը, իր սոցիալական ստատուսն ազատ կերպով փոխելու հնարավորությունը։ Այդ ամենն ստեղծվել է սոցիալիզմի զարգացման շնորհիվ, որից ամբողջությամբ օգտվում է և երիտասարդությունը։ Այս կապակցությամբ ավելի խոր ուսումնասիրության են արժանի ժամանակակից բանվոր դասակարգի, այդ թվում և նրա գյուղական ջոկատի, ինչպես նաև մտավորականության համալրման աղբյուրներում եղած տեղաշարժերը, երիտասարդ ուժերի «վերաձուլումը» մի խմբից մյուսը։ Այս պրոցեսը հանգեցնում է նրան, որ հետզհետե երիտասարդությունն առավել մեծ չափով է իր կենսագործունեության և արժեքների մեջ համադրում սոցիալական բոլոր խմբերի լավագույն հակումները, փորձը, ավանդույթներն ու արժեքները։ Բավական է ասել, որ բանվոր դասակարգի և մտավորականության երիտասարդ սերնդի մեջ անշեղորեն աճում է այն մարդկանց տեսակարար կշիռը, որոնք տվյալ սոցիալական միջավայրից չեն ելել։ Այսպես, օրինակ, երիտասարդ բանվորների միայն 55 տոկոսն է սերել բանվորական ընտանիքներից, իսկ 12 տոկոսը՝ գյուղացիների, 33 տոկոսը ծառայողների և մտավորականության ընտանիքներից են։ Համանման տեղաշարժեր են կատարվում նաև մտավորականության շարքերը համալրած երիտասարդության սոցիալական ծագման բնույթի մեջ։ Այստեղ մտավորականության միջավայրից սերած երիտասարդների տեսակարար կշիռը հետզհետե ավելի ու ավելի է կրճատվում ի հաշիվ բանվոր դասակարգի և գյուղացիության միջավայրից ելածների։ Սոցիալական այս տեղաշարժերի կարևոր աղբյուր է, մի կողմից, միջնակարգ ուսումնական հաստատությունների և պրոֆտեխնիկական ուսումնարանների սիստեմում մտավորականության ընտանիքներից եկած երիտասարդների տեսակարար կշռի աճը, ութամյա և տասնամյա կրթությամբ երիտասարդների հարաճուն հոսքը դեպի արտադրություն, իսկ մյուս կողմից՝ բուհերում բանվորների և կոլտնտեսականների միջավայրից եկած, ինչպես նաև արտադրական ստաժ ունեցող երիտասարդության ավելացումը։

Երիտասարդության ազատ տեղաշարժը սոցիալական մի խմբից մյուսը վկայում է սոցիալիստական հասարակության դեմոկրատական խոր բնույթի մասին, հասարակություն, որը հավասար իրավունքներ և հնարավորություններ է ընձեռում ամենքին, աջակցում յուրաքանչյուր սոցիալական խմբի՝ իր ապրելակերպում, հոգևոր աշխարհում և արժեքներում ավելի լիակատար ձևով հասունացնելու միասնական, համասովետական գծեր։

Սովետական ժողովրդի առավել համախմբմանը նպաստող մյուս գործոնն ինքնուրույն կյանքի ուղին բռնած աճող սերնդի ընդհանուր և մասնագիտական (միջնակարգ և բարձրագույն) կրթության մակարդակի բարձրացումն է։ Սրանով ընդլայնվում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը կուլտուրական ու կրթված մարդկանցով համալրելու հնարավորությունները, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ժամանակակից արտադրության հիմունքներում եղած տեղաշարժերի արագացող ռիթմին համապատասխան՝ կրճատվում են բանվորների որակավորման բարձրացման ժամկետները, բարենպաստ պայմաններ են ստեղծվում զարգացնելու ստեղծագործական մոտեցումը աշխատանքի, նրա կուլտուրայի և կազմակերպվածության, աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման նկատմամբ։ Իրենց աշխատանքային գործունեությունն սկսող անձանց հանրակրթական և պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացումը առաջընթացի տեմպերն արագացնելու համար մեծ է այնքանով, որ մինչև 30 տարեկան երիտասարդությունը կազմում է արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գիտության ու գիտական սպասարկման բնագավառում աշխատողների ավելի քան 40 տոկոսը (տե՛ս Формирование молодого поколения рабочего класса. М.,



1974, стр. 123)։ 1959 թ. համեմատ (այսինքն՝ ավելի քիչ ժամանակում, քան տարիքային մեկ ցիկլի սերնդափոխումը, որը հավասար է 20—25 տարվա), երկրում 2,1 անգամ մեծացել է բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունեցողների թիվը, 1975 թվականին հասնելով 121,5 միլիոն մարդու։ Արդեն 1975 թվականին 8-ամյա դպրոցն ավարտածների ավելի քան 96 տոկոսն իր կրթությունը շարունակում էր տարբեր տիպի միջնակարգ ուսումնական հաստատություններում՝ պրոֆտեխուսումնարաններում, տեխնիկումներում, երեկոյան և հեռակա ուսուցման ցանցում և այլն (տե՛ս С. П. Трапезников. Интеллектуальный потенциал коммунизма. М., Политиздат, 1976, стр. 42—43)։ Քսանհինգ տարեկան երիտասարդների գրեթե 97 տոկոսն աշխատում է ժողտնտեսության տարբեր ճյուղերում, ընդ որում, նրանց ընդհանուր և մասնագիտական կրթության մակարդակը, ամբողջությամբ վերցրած, ավելի բարձր է, քան առավել բարձր տարիքային խմբերինը։ Միջնակարգ կրթությամբ բանվորների արտադրանքի նորմայի ցուցանիշը 25 տոկոսով ավելի բարձր է, քան 8-ամյա կրթություն ունեցողներինը, առաջինները հինգ անգամ ավելի արագ են ստանում հերթական տարիֆային կարգ։ Կրթության միայն մեկ դասարանի աճը նորարարության մասնակիցների թիվն ավելացնում է միջին հաշվով 6 տոկոսով. երիտասարդ նորարարների ավելի քան $^{2}/_{3}$-ն ունի ոչ պակաս, քան միջնակարգ կրթություն։ Այս տվյալներն արդեն վկայում են երկրի ողջ երիտասարդությանը միջնակարգ ցանցում ընդգրկելու սոցիալ-տնտեսական ու կուլտուրական վիթխարի նշանակության մասին։ Ընդ որում, սխալ կլինի եզրակացնել, թե իբր տվյալ պրոցեսը (ինչպես և միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության ընդլայնումը) հանգեցնում է տարիքային տարբեր խմբերի կրթության և որակավորման մակարդակի մեծ խզման։ Այն պայմաններում, երբ երկրում գործում է ժողովրդական կրթության և ամբողջ զբաղված բնակչության որակավորման անընդհատ բարձրացման միասնական սիստեմ (որն իր աճման տեմպերով գերազանցում է երիտասարդության կրթությանը), այդ ցուցանիշներն ըստ բոլոր տարիքային խմբերի աստիճանաբար մոտենում են իրար։ Այս միտումը, հանգեցնելով այն բանին, որ հավասար ռեալ հնարավորություններ ստեղծվեն յուրաքանչյուր անհատի զարգացման ու նրա ստեղծագործական ուժերի և ունակությունների լիակատար դրսևորման համար, դրանով իսկ ստեղծում է հաջորդականության ու ժառանգման «մեխանիզմների» անարգել գործելու լավագույն պայմաններ։ Դա նպաստում է, մասնավորապես, այն բանին, որ, գերազանցապես տարիքի հետ կապված, աստիճանաբար անցյալի գիրկն են անցնում այսպես կոչված «պրակտիկները» (այսինքն՝ համապատասխան մասնագիտական կրթություն չունեցող, բայց մասնագետի պաշտոն զբաղեցնող մարդիկ), ընդլայնվում են երիտասարդության հետ տարիքային ավագ խմբերի փորձի ու գիտելիքների փոխանակման ուղիները, զգալիորեն սահմանափակվում են հոգեբանական մի շարք գործոնների գործողությունները, որոնք հակասություններ են առաջացնում երիտասարդ և տարբեր կենսափորձ ունեցող տարիքավոր մարդկանց միջև։

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ ընդլայնվում և հարստանում են սերունդների հաջորդականության ուղիներն ու ձևերը, ընդ որում, այդ պրոցեսն ավելի մեծ չափով է դառնում սոցիալապես կառավարելի, քան նախորդ փուլերում էր։ Դա ապահովվում է կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, նրա տնտեսական ու սոցիալական քաղաքականության միասնությամբ, աճող սերնդի ուսուցման, կրթության ու դաստիարակության ողջ սիստեմի ընդլայնման ու կատարելագործման նպատակով համաժողովրդական պետության ընձեռած նոր հնարավորություններով, երիտասարդության հոգևոր աշխարհի և արժեքների նյութական ու կուլտուրական բազայի ձևավորման ընդհանուր աճով, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործմամբ։ Մեզ մոտ համաժողովրդական հոգածություն է ցուցաբերվում, որպեսզի սոցիալիզմի առաջին երկրում աճի գաղափարապես ու բարոյապես առողջ, ֆիզիկապես կոփված երիտասարդություն, որ նա ժառանգի և բազմապատկի կո-

մունիզմի համար մարտնչող բոլոր սերունդների ստեղծարար ջանքերը, հեղափոխական ու աշխատանքային ավանդույթները։

«Մենք՝ կոմունիստներս, հպարտանում ենք մեր երիտասարդությամբ... Վստահել երիտասարդներին, հենվել երիտասարդության ներհատուկ խանդավառության և ընդհանուրի օգտին աշխատելու ազնիվ ձգտման վրա և դրա հետ միասին օգնել ճիշտ կողմնորոշվելու կյանքում, երիտասարդությանը զինել գիտելիքներով ու ավագ սերնդի փորձով՝ սրանք միշտ եղել են կոմունիստների ավանդույթները։ Կուսակցությունն այսուհետ ևս կամրապնդի այդ ավանդույթները, կզարգացնի երիտասարդության ակտիվությունը, նրան է՛լ ավելի լայնորեն մասնակից կդարձնի սոցիալիստական հասարակության գործերի կառավարմանը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 5, էջ 52, 54—55)։

Հասուն սոցիալիստական հասարակության վիթխարի հնարավորությունների ու ռեզերվների ավելի լրիվ իրացումը մեծապես պայմանավորված է նաև նրանով, թե երիտասարդությունը որքանով է տիրապետում ժամանակակից գիտելիքներին ու կուլտուրայի բոլոր հարստություններին, ակտիվորեն օգտագործում դրանք պրակտիկ գործունեության ընթացքում, նրա մեջ ինչպիսի ինտենսիվությամբ է կատարվում գաղափարական ու բարոյական վեհ հատկությունների ձևավորման պրոցեսը, կյանքին գիտական աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության դիրքերից մոտենալու, նրա նոր և բարդ խնդիրները լուծելու հմտությունն ու պատրաստակամությունը։

Մեր հասարակությունը դրա համար ստեղծում է ամենաբարենպաստ հնարավորություններ, որի համոզիչ վկայությունն է նաև ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ Վերջինս կրկին հաստատեց այն ճշմարտությունը, որ սոցիալիզմը միակ հասարակարգն է, որտեղ տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի բոլոր առաջատար նկրտումները ծառայում են երիտասարդության ազատ, ներդաշնակ և համակողմանի զարգացման, նրա կողմից կենսական պլանների կատարման, նրա ունակությունների, անսպառ եռանդի և խանդավառության ծավալման նպատակին՝ հանուն հումանիստական, կոմունիստական վեհ իդեալների հաստատման։

Երիտասարդության մեջ սովետական ժողովրդի միասնության հետագա խորացման նպատակին ծառայող գծեր ու հատկություններ դաստիարակելու և զարգացնելու համար հանգուցային նշանակություն ունի նրա դասակարգային հստակ ինքնագիտակցության ձևավորումը, դաստիարակումը գիտական աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության ոգով։ Հենց այդ պրոցեսում են լիովին զարգանում նրա ստեղծագործական ուժերը, ձևավորվում նրա քաղաքացիական հատկանիշները։ Ընդ որում, գլխավորն այն է, որ կրթության ժամանակակից սիստեմի, լայն ինֆորմացիայի և մասսայական պրոպագանդայի շնորհիվ երիտասարդության ստացած աշխարհայացքային ու հասարակական-քաղաքական առաջավոր գիտելիքներն ավելի ակտիվ դարձնեն նրա կենսագործունեությունը, ավելի լիովին մարմնավորվեն հասարակական շահերի, ուսման, աշխատանքի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքում, կոլեկտիվիզմի և ինտերնացիոնալիզմի սկզբունքներին ու նորմերին, սոցիալիստական համակեցության պահանջներին համոզվածությամբ հետևելու մեջ։ Իսկ առաջավոր քաղաքական ու գիտական գիտելիքները համապատասխան կենսական նպատակի, զգացմունքների տրամադրվածության, ձգտումների բնույթի, վարքի մոտիվների հետ միավորելու ամենաարդյունավետ ուղին աճող սերնդին կոլեկտիվ կազմակերպված ստեղծագործական աշխատանքում ժամանակին և օրգանապես ներգրավելն է։ Աշխատանքի ընթացքում սոցիալական նշանակություն ունեցող խնդիրների լուծման համար մղվող պայքարում է, որ ստեղծվում և ամրապնդվում է յուրաքանչյուր երիտասարդի մտքի ու գործի, գիտելիքների, զգացմունքների և սովորույթների միասնություն։ Հենց այսպիսի աշխատանքում է, որ երիտասարդության տեսական գիտելիքները, խանդավառությունն ու եռանդը, նորի ձգտումներն առավել լիակատար ու բազմակողմանիորեն հարստանում են ավագ սերնդի մարդկանց փորձով, լայն հնարավորություն ստանում գործուն դրսևորման համար։ Սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են, որ հենց տնտեսական, կազմակերպական, կուլտուրական և այլ կոնկրետ խնդիրների լուծմանը գործնական մասնակցություն ցուցաբերելու պրոցեսում է, որ ստեղծվում և սկսում են հաջողությամբ գործել գաղափարախոսական ու սոցիալ-հոգեբանական այն մեխանիզմները, որոնց ազդեցությամբ երիտասարդն ավելի խոր և ավելի լրիվ է գիտակցում կոլեկտիվիզմի և ինտերնացիոնալիզմի հումանիստական վեհ իմաստը, հասարակական պարտքի էությունը, անձնականի ու կոլեկտիվի, ողջ հասարակության շահերի միասնությունը։ Եվ գիտակցում է ո՛չ միայն բանականությամբ, այլև հույզերի ողջ ուժգնությամբ ու վերապրում անձնական մասնակցությունը մեծ խնդիրների լուծմանը։ Դաստիարակության այս գործնական դպրոցը նրա գիտակցությունը, ռացիոնալ յուրացրած սոցիալ-փիլիսոփայական և քաղաքական կատեգորիաներն ու հասկացությունները հագեցնում է կենսական վառ բովանդակությամբ, զուտ անձնական առարկայական-ազգային փորձի տվյալներով։ Ուստի և այդ պրակտիկայում ձևավորված աշխարհայացքը, դասակարգային ինքնագիտակցությունը կայունանում են և անքակտելի դառնում մարդկային «ես»-ից։



Հետևաբար, մեր հասարակության առաջադիմող հաջորդականության ապահովման և բարձր արժույթների հարստացման գործում առաջնակարգ նշանակություն ունեն կրթության, ուսուցման և աշխատանքային դաստիարակության միասնության մարքս-լենինյան սկզբունքի իրականացումը, երիտասարդության գործունեության մեջ կոլեկտիվիստական ու դեմոկրատական նորմերի խստիվ պահպանումը, նրա պահանջմունքների և կարիքների ժամանակին հաշվառումն ու բավարարումը։ Աշխատանքային դաստիարակության պրակտիկան, կոլեկտիվիզմի հարաբերությունների կատարելագործումը վկայում են, որ հենց այդ պրոցեսում է երիտասարդության մեջ մշակվում առավել կայուն իմունիտետ իմպերիալիզմի գաղափարախոսական ոտնձգությունների, սոցիալիստական հասարակությունում «մարդու իրավունքի» հարցի վերաբերյալ բուրժուական զրպարտանքի, այն փորձերի դեմ, որոնց նպատակն է կոլեկտիվիզմը ներկայացնել որպես կոնֆորմիզմ, իսկ պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմը՝ որպես ազգային յուրահատկության և ազգային շահերի անտեսում, հայրենասիրության ժխտում և այլն։

Դաստիարակչական այս խնդիրների լուծումը սերտորեն առնչվում է առաջավոր ավանդույթների պրոպագանդման ու տարածման, երիտասարդության դաստիարակության, մարքս-լենինյան անհաղթ գաղափարներով նրանց զինվածության հետ։

«Կոմունիզմի ճանապարհին,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառում,— մեր գլխավոր կողմնացույցը մարքս-լենինյան ուսմունքն է հասարակության զարգացման օրենքների մասին։ Հնարավոր չէ գերագնահատել այդ հեղափոխական գիտության խոր ու սիստեմատիկ յուրացման նշանակությունը։ Գիտակցական, լրջախոհ յուրացման, և ոչ թե առանձին ճշմարտությունների ու ֆորմուլաների մեխանիկական սերտման։ Միայն այն ժամանակ տեսության իմացությունն ինչ-որ բան արժե, երբ այն դառնում է համոզմունք, ամրապնդվում գործով։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր երիտասարդ լենինյան պետք է լինի ակտիվ քաղաքական մարտիկ՝ ընդունակ գործով իրականացնելու կուսակցության քաղաքականությունը և անհաշտ պայքար մղելու թշնամական գաղափարախոսության դեմ»։

Սերունդների հաջորդականությունը և միասնությունը սոցիալիստական հասարակության օրինաչափություններից են, նոր կյանքի առաջընթացի վկայությունը։

---

**150 ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ**

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Զ. Տ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ, 1828 թ. փետրվարի 10(22)-ին պարսկական Թուրքմենչայ փոքրիկ գյուղում Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կնքված հաշտության պայմանագրով շահական կառավարությունը հարկադրված եղավ ճանաչել Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին: Դա հնարավոր եղավ շնորհիվ 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմում Կովկասյան հատուկ կորպուսի տարած փայլուն հաղթանակների, նրան՝ հայերի և անդրկովկասյան մյուս ժողովուրդների ցույց տված ռազմական, նյութական և բարոյական օգնության, հայ ազատագրական շարժման հեռավոր անցյալից եկող հաստատ ու հետևողական ռուսական կողմնորոշման:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացմամբ հաղթանակով պսակվեց հայ ժողովրդի ազատագրական պայքարը պարսկական բռնապետական վարչակարգի դեմ: Նա թոթափեց շուրջ երեքդարյա խանական լուծը և իր ճակատագիրն առհավետ կապեց ռուս մեծ ժողովրդի հետ, որը և կանխորոշեց նրա զարգացման ընթացքը, նրա գալիքը:

Բնավ չանտեսելով Անդրկովկասում ցարիզմի հետապնդած ռազմաքաղաքական նպատակներն ու շահերը, ինչպես և վարած գաղութատիրական քաղաքականության բացասական հետևանքները, օբյեկտիվորեն հայ ժողովրդի համար մեծ է Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման նշանակությունը: Հայ ժողովրդի բովանդակ կյանքում Ռուսաստանի խաղացած դերով լիովին հաստատվեց Ֆ. Էնգելսի 1851 թ. արտահայտած այն միտքը, թե «...Ռուսաստանն իրոք առաջադիմական դեր է խաղում Արևելքի նկատմամբ»[1]:

***

Յուրաքանչյուր ժողովրդի գալիքի, նրա սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մտավոր կյանքի զարգացման առաջին անհրաժեշտ նախապայմանը, բնականաբար, տվյալ ժողովրդի հարատևման ապահովումն է: Ուստի, այժմ պարզենք, թե ի՞նչ նշանակություն ունեցավ Ռուսաստանի հետ միացումը հայ ժողովրդի գոյատևման ու ազգահավաքման համար:

Շահական Պարսկաստանը և սուլթանական Թուրքիան XVI դարի կեսերին (1555 թ.) Հայաստանը երկփեղկելով իրար միջև*, ո՛չ միայն ստրկական կացության մեջ դրին հայ ժողովրդին, այլև լուրջ սպառնալիք ստեղծեցին նրա գոյա-

* Հայաստանի արևելյան հատվածը բաժին ընկավ Պարսկաստանին, իսկ արևմտյանը՝ Թուրքիային: Այդ բաժանումը վերահաստատվեց 1639 թվականին:



տևմանը: Հայերի զանգվածային բռնագաղթերը, նրանց նկատմամբ կիրառվող ձուլման բարբարոսական քաղաքականությունը, երկրի ավերումն ու ամայացումը սովորական էին դարձել շահական և սուլթանական իշխանությունների համար: Օրինակ, Երևանի խանության 1111 գյուղերից XIX դարի սկզբներին բոլորովին ավերվել ու անմարդաբնակ էին դարձել 359 գյուղ[2], մնացածներն էլ կիսավեր վիճակումն էին: Այդ մասին վկայում են ո՛չ միայն հայրենի աղբյուրները, այլև Հայաստան այցելած շատ օտարերկրացիներ: Օրինակ, անգլիացի ճանապարհորդ Ջոն Ջոնսոնը 1817 թ. լինելով Երևանի խանությունում գրում է, որ այնտեղ «...տների մեկ քառորդն անգամ բնակեցված չէ»[3], իսկ նրա հայրենակից Ջեյմս Մորերը Ապարանի գավառի վիճակի մասին գրում է, որ այստեղ «...մենք բնակության հետքեր միայն տեսանք, ամեն ինչ կատարյալ ամայության մեջ էր»[4]: Նույնպիսի թշվառ կացության էին մատնվել նաև պարսկական տիրապետության տակ գտնվող Արևելյան Հայաստանի մյուս գավառները:

Տարբեր ձևերով ու միջոցներով «Հայաստանը հայերից դատարկելու» պարսկական բռնապետական վարչակարգի վարած քաղաքականության հետևանքով հայ ժողովրդի բնօրրան Արարատյան երկիրը զրկվել էր հարազատ ժողովրդի մեծ մասից: XIX դարի սկզբներին Երևանի խանության մեջ հայերը նվազելով կազմում էին բնակչության 33,8 տոկոսը[5], իսկ ապագա Հայկական մարզում* ընդամենը 25 տոկոսը[6]:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով պատկերը բոլորովին փոխվեց: Ստեղծվեցին նպաստավոր պայմաններ հայության գոյատևման ու ազգային կոնսոլիդացման համար: Թուրքմենչայի, ապա և 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի ավարտից հետո կնքված Ադրիանապոլսի պայմանագրով (1829 թ. սեպտեմբերի 2) արտոնվեց Պարսկաստանից և Թուրքիայից հայերի ներգաղթ Արևելյան Հայաստան: Թուրքմենչայի պայմանագրով սահմանված մեկամյա ժամանակամիջոցում Պարսկաստանից Արևելյան Հայաստան ներգաղթեց 8249 ընտանիք[7], շուրջ 45 հազար մարդ: Իսկ Թուրքիայից մեկ և կես տարվա ընթացքում Արևելյան Հայաստան և Անդրկովկասի տարբեր գավառներ գաղթեց 14047 ընտանիք[8], որը կազմում է շուրջ 90—100 հազար մարդ: Թուրքիայից հայերի ներգաղթ Արևելյան Հայաստան շարունակվեց նաև հետագայում: Հետևաբար, Արևելյան Հայաստանը դարձավ հայ ժողովրդի պահպանման ու բարգավաճման օջախը: Օրինակ, եթե Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացման նախօրյակին ապագա Հայկական մարզում հայերը կազմում էին 25151, իսկ այլազգիները՝ 81749 մարդ, ապա 1831 թ. այնտեղ բնակվող հայերի թիվը հասավ 82377 մարդու[9]:

Հետագա տասնամյակներին, մանավորապես XIX դարի երկրորդ կեսին, հայ բնակչությունն առավել արագ աճեց ռուսական կայսրության մեջ: 1897 թվականի մարդահամարի տվյալներով՝ Սովետական Հայաստանի այժմյան տարածքի վրա ապրող բնակչության թիվը հասնում է 739900 մարդու, որից 510855-ը հայեր: Նույն մարդահամարի տվյալներով՝ Կովկասում ապրող հայերը 1148673 են: Ռուսական ամբողջ կայսրության մեջ 1914 թ. սկզբներին հայերի թիվը հասնում է 2054 հազար մարդու: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Արևմտյան Հայաստանից եկած գաղթականների նոր հոսանքի հետևանքով այդ թիվն աճեց ավելի քան 300 հազար մարդով:

Իսկ ինչպիսի՞ բախտ վիճակվեց հայ ժողովրդի մյուս հատվածին՝ արևմտահայությանը, որը նույնպես ուներ ռուսական կողմնորոշում և մղել է համառ ու երկարատև պայքար՝ թոթափելու թուրքական լուծը և վերամիավորվելու Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանի հետ: Այս հարցի թեկուզ և խիստ հակիրճ ու ընդհանուր պատասխանը հույժ կարևոր է, քանի որ դա առավել նշմարելի կդարձնի հայ ժողովրդի գոյատևման, ազգահավաքման, հետևապես և նրա տնտեսական, քաղաքական և մտավոր կյանքի զարգացման հա-

* Ռուսական կայսրության կազմում Հայկական մարզը որպես վարչական միավոր ստեղծվեց 1828 թ. մարտի 21-ին Երևանի և Նախիջևանի խանություններից ու Օրդուբադի գավառից: Այն հարատևեց մինչև 1840 թ. ապրիլի 10-ը:

մար Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման պատմական նշանակությունը։

Այն ժամանակ, երբ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման շնորհիվ ինչպես այնտեղ, այնպես էլ ռուսական ողջ կայսրության մեջ արագորեն աճում է հայ բնակչությունը, Արևմտյան Հայաստանում սուլթանական կառավարության վարած դաժան, հայատյաց քաղաքականության հետևանքով հայերը նվազում, բնաջնջվում են։ Զանդրադառնալով հեռավոր պատմության ողբերգություններով լի իրադարձություններին, դիմենք մեր ժամանակներին մոտ փաստերին։ Սուլթան Աբդուլ-Համիդի 1894—1896 թվականներին կազմակերպած արյունալի ջարդերի զոհ դարձան 300—350 հազար արևմտահայեր։ Դրան հաջորդեց երիտթուրքերի 1909 թ. կազմակերպած Կիլիկիայի 30 հազար հայերի կոտորածը։ Իսկ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին թուրքական արյունոտ դաշույնի զոհ դարձան ավելի քան մեկ և կես միլիոն արևմտահայեր։ Հարյուր հազարավոր հայեր բռնի արտաքսվեցին իրենց պապենական բնօրրանից։ Ամայացավ Արևմտյան Հայաստանը։

Սովետական պատմաբան Գ. Ա. Շպաժնիկովի 1976 թվականին հրատարակած փաստառատ ուսումնասիրության տվյալներով, առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին Թուրքական տիրապետության ներքո ապրող հայերի թիվը կազմել է երեք միլիոն մարդ[10]։ Սակայն մարդկության պատմության մեջ իր նախադեպը չունեցող արևմտահայերի գենոցիդի հետևանքով, այժմ Թուրքիայում ապրող հայերի թիվը կազմում է 130 հազարից քիչ ավելի[11]։

Այսպիսով, մեկ ժողովրդի երկու հատված, բայց տարբեր տիրապետություններ, տարբեր ճակատագրեր... եթե Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով արևելահայերը փրկվեցին ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից, իսկ երկրամասը դարձավ համայն հայության ազգահավաքման օջախ, ընտրեց զարգացման նոր ու ընդարձակ ուղի, ապա Արևմտյան մեծ տերությունների հակառուսական և հայադավ քաղաքականության հետևանքով, Արևմտյան Հայաստանի թողնելը Թուրքիայի տիրապետության ներքո, դարձավ արևմտահայության մեծ ողբերգության՝ դաժան ցեղասպանության պատճառներից մեկը։

* * *

XIX դարի սկզբներին Պարսկաստանում դեռևս իշխող միջնադարյան արևելյան ագրարային հարաբերությունները, անձի և սեփականության իրավունքի անձեռնմխելիության բացակայությունը, ծանր ու կեղեքիչ հարկային սիստեմը, երկրի ֆեոդալական մասնատվածությունը, իրար հաջորդող ավերիչ պատերազմները խոչընդոտում էին Պարսկաստանի ու նրա տիրապետության տակ գտնվող Արևելյան Հայաստանի տնտեսական կյանքի առաջընթացին, կապիտալիստական հարաբերությունների արմատավորմանն ու զարգացմանը։ «Թուրքական, ինչպես և բոլոր մյուս արևելյան տիրապետություններն անհամատեղելի են կապիտալիստական կարգերի համար,— գրել է Ֆ. Էնգելսը,— ձեռք բերած հավելյալ արժեքը ոչնչով ապահովված չէ սատրապների ու փաշաների գիշատիչ ձեռքերից, գոյություն չունի բուրժուական շահույթի առաջին հիմնական պայմանը՝ վաճառականի անձի և սեփականության ապահովությունը»[12]։

Բոլորովին այլ էր Ռուսաստանի վիճակը. այն տնտեսապես անհամեմատ բարձր աստիճանում էր և ուներ հետագա զարգացման նպաստավոր պայմաններ։ XIX դարի առաջին տասնամյակներին արագանում է արդյունաբերական հեղաշրջման պրոցեսը, արմատավորվում են բուրժուական հարաբերությունները, իսկ 1861 թ. գյուղացիական ռեֆորմով նշանավորվում է «...ճորտատիրական էպոխայից վերաճող նոր, բուրժուական Ռուսաստանի սկիզբը»[13]։

Հզոր և կենտրոնացված Ռուսաստանին միանալու շնորհիվ վերացվեց Արևելյան Հայաստանի ֆեոդալական-խանական մասնատվածությունը, դրանով իսկ վերացան նաև այնտեղ հաստատված և տնտեսական կյանքի առաջընթացը կասեցնող մաքսային արգելափակումները։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով նրա տարածքը դա-



դարեց արյունալի պատերազմների մշտական ասպարեզ լինելուց։ Ռուսական պետական հաստատուն օրենքներով ապահովվեց քաղաքացու անձի և սեփականության անձեռնմխելիության իրավունքը։ Անդրկովկասյան շուկան ու երկրամասի բնական հարստություններն իրենց շահերի համար օգտագործելու նպատակով ռուս արդյունաբերողները և վաճառականները հիմնում էին առևտրի ու արդյունաբերության զարգացմանը նպաստող զանազան ընկերություններ ու հաստատություններ։

Այս ամենը, անշուշտ, բխում էր ցարիզմի, ռուս կալվածատերերի և զարգացող բուրժուազիայի շահերից։ Սակայն դրանք միաժամանակ օբյեկտիվորեն նպաստեցին Արևելյան Հայաստանում արտադրաուժերի առաջընթացին, կապիտալիստական հարաբերությունների արմատավորմանը և դրական ներգործություն ունեցան արևելահայ տնտեսական կյանքի զարգացման վրա։

Սկսվեց Արևելյան Հայաստանի արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացումը։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանը միացվելուց հետո նկատելիորեն աշխուժացավ նաև նրա ներքին ու արտաքին առևտուրը։ Երկրի տնտեսական կյանքի զարգացմանը մեծ չափով նպաստեց երկաթուղային շինարարությունն Անդրկովկասում։ XIX դարի վերջին քառորդից սկսում են ձևավորվել հասարակական նոր դասակարգեր՝ բուրժուազիան և պրոլետարիատը։ Մասնավորապես Հայաստանի բանվոր դասակարգի ձևավորումը պատմական խոշոր դեր ունեցավ հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրությունը ռուսական բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հետ սերտորեն կամրջելու գործում։

* * *

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց ընդամենը մի քանի տասնամյակ անց հայ մշակույթի մարզում և ողջ մտավոր կյանքում նշմարվում է նկատելի առաջընթաց։ Դա, իհարկե, նախ և առաջ արդյունք էր հայ ժողովրդի դարերի ընթացքում ստեղծած հարուստ և արժեքավոր մշակութային ժառանգության ազդեցության հայ նոր մշակույթի վրա։ Այդ ժառանգությունն այն հիմնաքարն էր, որի վրա խարսխվեց նաև Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումից հետո զարգացող հայ ազգային մշակույթը։

Այսուհանդերձ, Արևելյան Հայաստանի՝ Ռուսաստանին հետ միավորմամբ նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հայ մշակույթի վերակենդանացման և զարգացման համար։ Դա օրինաչափ էր, քանի որ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին զուգադիպեց ռուսական ազգային մշակույթի և ողջ մտավոր կյանքի զարգացման մի նշանավոր ժամանակաշրջանի հետ։

Եթե շահական Պարսկաստանը և սուլթանական Թուրքիան տակավին խարխափում էին միջնադարյան խավարի փակուղիներում և կաշկանդում իրենց տիրապետության ներքո գտնվող հայ ժողովրդի մտավոր կյանքի առաջընթացը, ապա բոլորովին այլ էր վիճակը Ռուսաստանում. XIX դարի սկզբներից սկսվեց ռուսական ազգային կուլտուրայի մեծ վերընթացը, որում արդեն որոշակիորեն սահմանազատվել էին երկու հակադիր՝ դեմոկրատական-առաջադիմական և ռեակցիոն-հետադիմական կուլտուրաներ։ «Կա երկու ազգային կուլտուրա յուրաքանչյուր ազգային կուլտուրայի մեջ։— գրում է Վ. Ի. Լենինը.— Կա Պուրիշկևիչների, Գուչկովների և Ստրուվեների վելիկոռուսական կուլտուրա,— բայց և կա վելիկոռուսական կուլտուրա, որը բնորոշվում է Չերնիշևսկու և Պլեխանովի անուններով»[14]։

«Չերնիշևսկու և Պլեխանովի» կուլտուրան էր, որ մեծագույն բարերար ազդեցություն գործեց հայ նոր կուլտուրայի վրա։

Հայ նոր մշակույթի զարգացման ասպարեզում խոշոր ներդրում են արել Մոսկվայի, Պետերբուրգի, Ղրիմի, Նոր Նախիջևանի, Աստրախանի, Գրիգորիոպոլի և Ռուսաստանի հայկական մյուս գաղթօջախները։ Նրանք դառնում են հայ մշակույթի ծանրակշիռ կենտրոններ և ռուսական մտավոր կյանքը հայ ժողովրդի հետ կամրջող հենակետեր։

մար Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման պատմական նշանակությունը։

Այն ժամանակ, երբ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման շնորհիվ ինչպես այնտեղ, այնպես էլ ռուսական ողջ կայսրության մեջ արագորեն աճում է հայ բնակչությունը, Արևմտյան Հայաստանում սուլթանական կառավարության վարած դաժան, հայատյաց քաղաքականության հետևանքով հայերը նվազում, բնաջնջվում են։ Զանդրադառնալով հեռավոր պատմության ողբերգություններով լի իրադարձություններին, դիմենք մեր ժամանակներին մոտ փաստերին։ Սուլթան Աբդուլ-Համիդի 1894—1896 թվականներին կազմակերպած արյունալի ջարդերի զոհ դարձան 300—350 հազար արևմտահայեր։ Դրան հաջորդեց երիտթուրքերի 1909 թ. կազմակերպած Կիլիկիայի 30 հազար հայերի կոտորածը։ Իսկ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին թուրքական արյունոտ դաշույնի զոհ դարձան ավելի քան մեկ և կես միլիոն արևմտահայեր։ Հարյուր հազարավոր հայեր բռնի արտաքսվեցին իրենց պապենական բնօրրանից։ Ամայացավ Արևմտյան Հայաստանը։

Սովետական պատմաբան Գ. Ա. Շպաժնիկովի 1976 թվականին հրատարակած փաստառատ ուսումնասիրության տվյալներով, առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին Թուրքական տիրապետության ներքո ապրող հայերի թիվը կազմել է երեք միլիոն մարդ[10]։ Սակայն մարդկության պատմության մեջ իր նախադեպը չունեցող արևմտահայերի գենոցիդի հետևանքով, այժմ Թուրքիայում ապրող հայերի թիվը կազմում է 130 հազարից քիչ ավելի[11]։

Այսպիսով, մեկ ժողովրդի երկու հատված, բայց տարբեր տիրապետություններ, տարբեր ճակատագրեր... Եթե Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով արևելահայերը փրկվեցին ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից, իսկ երկրամասը դարձավ համայն հայության ազգահավաքման օջախ, ընտրեց զարգացման նոր ու ընդարձակ ուղի, ապա Արևմտյան մեծ տերությունների հակառուսական և հայադավ քաղաքականության հետևանքով, Արևմտյան Հայաստանի թողնելը Թուրքիայի տիրապետության ներքո, դարձավ արևմտահայության մեծ ողբերգության՝ դաժան ցեղասպանության պատճառներից մեկը։

***

XIX դարի սկզբներին Պարսկաստանում դեռևս իշխող միջնադարյան արևելյան ագրարային հարաբերությունները, անձի և սեփականության իրավունքի անձեռնմխելիության բացակայությունը, ծանր ու կեղեքիչ հարկային սիստեմը, երկրի ֆեոդալական մասնատվածությունը, իրար հաջորդող ավերիչ պատերազմները խոչընդոտում էին Պարսկաստանի ու նրա տիրապետության տակ գտնվող Արևելյան Հայաստանի տնտեսական կյանքի առաջընթացին, կապիտալիստական հարաբերությունների արմատավորմանն ու զարգացմանը։ «Թուրքական, ինչպես և բոլոր մյուս արևելյան տիրապետություններն անհամատեղելի են կապիտալիստական կարգերի համար,— գրել է Ֆ. Էնգելսը,— ձեռք բերած հավելյալ արժեքը ոչնչով ապահովված չէ սատրապների ու փաշաների գիշատիչ ձեռքերից, գոյություն չունի բուրժուական շահույթի առաջին հիմնական պայմանը՝ վաճառականի անձի և սեփականության ապահովությունը»[12]։

Բոլորովին այլ էր Ռուսաստանի վիճակը. այն տնտեսապես անհամեմատ բարձր աստիճանում էր և ուներ հետագա զարգացման նպաստավոր պայմաններ։ XIX դարի առաջին տասնամյակներին արագանում է արդյունաբերական հեղաշրջման պրոցեսը, արմատավորվում են բուրժուական հարաբերությունները, իսկ 1861 թ. գյուղացիական ռեֆորմով նշանավորվում է «...ճորտատիրական էպոխայից վերաճող նոր, բուրժուական Ռուսաստանի սկիզբը»[13]։

Հզոր և կենտրոնացված Ռուսաստանին միանալու շնորհիվ վերացվեց Արևելյան Հայաստանի ֆեոդալական-խանական մասնատվածությունը, դրանով իսկ վերացան նաև այնտեղ հաստատված և տնտեսական կյանքի առաջընթացը կասեցնող մաքսային արգելափակումները։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով նրա տարածքը դա-



դարեց արյունալի պատերազմների մշտական ասպարեզ լինելուց։ Ռուսական պետական հաստատուն օրենքներով ապահովվեց քաղաքացու անձի և սեփականության անձեռնմխելիության իրավունքը։ Անդրկովկասյան շուկան ու երկրամասի բնական հարստություններն իրենց շահերի համար օգտագործելու նպատակով ռուս արդյունաբերողները և վաճառականները հիմնում են առևտրի ու արդյունաբերության զարգացմանը նպաստող զանազան ընկերություններ ու հաստատություններ։

Այս ամենը, անշուշտ, բխում էր ցարիզմի, ռուս կալվածատերերի և զարգացող բուրժուազիայի շահերից։ Սակայն դրանք միաժամանակ օբյեկտիվորեն նպաստեցին Արևելյան Հայաստանում արտադրաուժերի առաջընթացին, կապիտալիստական հարաբերությունների արմատավորմանը և դրական ներգործություն ունեցան արևելահայ տնտեսական կյանքի զարգացման վրա։

Սկսվեց Արևելյան Հայաստանի արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացումը։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանը միացվելուց հետո նկատելիորեն աշխուժացավ նաև նրա ներքին ու արտաքին առևտուրը։ Երկրի տնտեսական կյանքի զարգացմանը մեծ չափով նպաստեց երկաթուղային շինարարությունն Անդրկովկասում։ XIX դարի վերջին քառորդից սկսում են ձևավորվել հասարակական նոր դասակարգեր՝ բուրժուազիան և պրոլետարիատը։ Մասնավորապես Հայաստանի բանվոր դասակարգի ձևավորումը պատմական խոշոր դեր ունեցավ հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրությունը ռուսական բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հետ սերտորեն կամրջելու գործում։

***

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց ընդամենը մի քանի տասնամյակ անց հայ մշակույթի մարզում և ողջ մտավոր կյանքում նշմարվում է նկատելի առաջընթաց։ Դա, իհարկե, նախ և առաջ արդյունք էր հայ ժողովրդի դարերի ընթացքում ստեղծած հարուստ և արժեքավոր մշակութային ժառանգության ազդեցության հայ նոր մշակույթի վրա։ Այդ ժառանգությունն այն հիմնաքարն էր, որի վրա խարսխվեց նաև Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումից հետո զարգացող հայ ազգային մշակույթը։

Այսուհանդերձ, Արևելյան Հայաստանի՝ Ռուսաստանին հետ միավորմամբ նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հայ մշակույթի վերակենդանացման և զարգացման համար։ Դա օրինաչափ էր, քանի որ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին զուգադիպեց ռուսական ազգային մշակույթի և ողջ մտավոր կյանքի զարգացման մի նշանավոր ժամանակաշրջանի հետ։

Եթե շահական Պարսկաստանը և սուլթանական Թուրքիան տակավին խարխափում էին միջնադարյան խավարի փակուղիներում և կաշկանդում իրենց տիրապետության ներքո գտնվող հայ ժողովրդի մտավոր կյանքի առաջընթացը, ապա բոլորովին այլ էր վիճակը Ռուսաստանում. XIX դարի սկզբներից սկսվեց ռուսական ազգային կուլտուրայի մեծ վերընթացը, որում արդեն որոշակիորեն սահմանազատվել էին երկու հակադիր՝ դեմոկրատական-առաջադիմական և ռեակցիոն-հետադիմական կուլտուրաներ։ «Կա երկու ազգային կուլտուրա յուրաքանչյուր ազգային կուլտուրայի մեջ։— գրում է Վ. Ի. Լենինը.— Կա Պուրիշկևիչների, Գուչկովների և Ստրուվեների վելիկոռուսական կուլտուրա,— բայց և կա վելիկոռուսական կուլտուրա, որը բնորոշվում է Չերնիշևսկու և Պլեխանովի անուններով»[14]։

«Չերնիշևսկու և Պլեխանովի» կուլտուրան էր, որ մեծագույն բարերար ազդեցություն գործեց հայ նոր կուլտուրայի վրա։

Հայ նոր մշակույթի զարգացման ասպարեզում խոշոր ներդրում են արել Մոսկվայի, Պետերբուրգի, Ղրիմի, Նոր Նախիջևանի, Աստրախանի, Գրիգորիոպոլի և Ռուսաստանի հայկական մյուս գաղթօջախները։ Նրանք դառնում են հայ մշակույթի ծանրակշիռ կենտրոններ և ռուսական մտավոր կյանքը հայ ժողովրդի հետ կամրջող հենակետեր։

Նկատելի զարգացում է ապրում ժողովրդական կրթությունը։ Ռուսաստանի գաղթօջախներում և Անդրկովկասում բացվում են բազմաթիվ հայկական դպրոցներ։ XIX դարի 80-ական թվականներին ռուսական կայսրության մեջ գործում էր 330 հայկական դպրոց, որից 83-ը՝ իգական։ Դրանք բոլորն էլ մեծ դեր խաղացին հայ ժողովրդի մշակութային կյանքում։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց հետո նպաստավոր պայմաններ ստեղծվեց գիտական մտքի զարգացման համար։ Կազանի և Պետերբուրգի համալսարանները, Մոսկվայի Լազարյան ու էջմիածնի Գևորգյան ճեմարանները դարձան հայագիտության և արևելագիտության հանրաճանաչ օջախներ։ 1842 թ. Կազանի համալսարանում ստեղծվում է հայոց լեզվի ամբիոն։ 40-ական թվականների վերջերին Պետերբուրգի համալսարանի արևելյան լեզուների ֆակուլտետում բացվում է հայերենի բաժին։

Արգասաբեր է եղել ռուսական համալսարանների դերը հայ հոգևոր կյանքի զարգացման, մասնավորապես, հայ ազգային մտավորականության պատրաստման գործում։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին կարևոր նշանակություն ունեցավ մեր պարբերական մամուլի զարգացման համար։ Այս առումով անհրաժեշտ է նշել Մոսկվայում տպագրվող «Հյուսիսափայլ»-ի էջերում հանդես եկող հայ հեղափոխական-դեմոկրատական հոսանքի ականավոր գաղափարախոս Մ. Նալբանդյանի խոշոր դերը մեր ժողովրդի առաջընթացի գործում։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին լայն հորիզոններ բացեց արևելահայ գրականության զարգացման համար։ Հայ նոր գրականության երախտավորներ Աբովյանն ու Ալամդարյանը, Պատկանյանն ու Նալբանդյանը, Սունդուկյանն ու Շահազիզը, Աղայանն ու Պռոշյանը, Րաֆֆին ու Հովհ. Հովհաննիսյանը, Ծատուրյանն ու Հովհ. Թումանյանը, Նար-Դոսն ու Ավ. Իսահակյանը ու նրանց բոլոր արժանավոր հաջորդները, խորապես յուրացնելով հայ գրականության առաջավոր ավանդույթները և զինվելով ռուսական ու համաշխարհային գրականության նվաճումներով, իրենց ստեղծագործություններում փորձել են ընդգրկել ժողովրդին հուզող հայ կյանքի բոլոր կողմերը։ Նրանք շոշափել են համամարդկային նշանակություն ունեցող այնպիսի պրոբլեմներ, ինչպես ճնշված ու հարստահարվող ժողովուրդների ազատագրությունը, բողոքը սոցիալական անարդարությունների դեմ, ժողովուրդների բարեկամությունը և համերաշխությունը, հումանիզմը, մարդու իրավունքի պաշտպանությունը, ժողովրդի լուսավորումը և դրա օգտագործումը որպես ազգային ու քաղաքական ինքնագիտակցության ձևավորման միջոց և նման այլ պրոբլեմներ։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումից հետո, սկսած Հ. Ալամդարյանից ու Խ. Աբովյանից ու նրանց հաջորդած հայ գրականության բոլոր սերունդների հուշակված գործիչները երախտագիտությամբ են շեշտել հայ գրականության վրա ռուս գրականության գործած բարերար ազդեցությունը։

Հովհ. Թումանյանը, արտահայտելով իր սերնդի ընդհանրական կարծիքը, գրել է. «...Սիրով ու պատկառանքով խոնարհվում եմ ռուսական մեծ ազգի հոյակապ գրականության առջև— Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի, Դոստոևսկու, Տուրգենևի, Չեխովի, Տոլստոյի և իրենց արժանավոր ժառանգորդների գրականության առջև, որի վրա կրթվել են մեր գրողներից ու մտավորականներից շատ շատերը»[15]։

Ռուս առաջավոր գրողները և մտավորականության նշանավոր շատ ուրիշ ներկայացուցիչներ ևս բարձր են գնահատել հայ մշակույթը և նրա գործիչներին։ Ռուս ականավոր պատմաբան ու գրող Ն. Կարամզինը ջերմ սիրով է խոսում Կիևյան իշխան Վլադիմիր Մոնոմախի պալատում ծառայող հայազգի տաղանդավոր բժիշկների մասին։ Կովկասյան հատուկ կորպուսի արտաքին գործերի ղեկավար, հայ ժողովրդի մեծ բարեկամ Ա. Ս. Գրիբոյեդովը, որ 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ անվեհեր զինվորի քաջությամբ կռվեց Երևանի բերդի պարիսպների տակ, իսկ Թուրքմենչայի պայմանագիրը կնքելուց հետո, որպես Պարսկաստանում Ռուսաստանի արտակարգ-լիազոր դեսպան, գործուն կերպով մասնակցեց Պարսկաստանից հայերի ներգաղթի կազ-



մակերպմանը, իր «Ճանապարհորդական նոթեր»-ում անկեղծ սիրով ու ջերմությամբ է խոսում հայ ստեղծագործ ժողովրդի մասին։ Մեծ Պուշկինը, 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ այցելության գալով Կովկասյան կորպուս աքսորված դեկաբրիստ իր բարեկամներին, «Ճանապարհորդություն դեպի Էրզրում» երկում սիրով ու հարգանքով է խոսում ազնիվ ու հյուրընկալ հայերի, նրանց ջերմ ռուսական կողմնորոշման մասին։ Հեղափոխական-դեմոկրատ, հանճարեղ քննադատ Վ. Բելինսկին Կովկասը համարել է Պուշկինի, Գրիբոյեդովի և Լերմոնտովի «պոետիկական հայրենիքը»։

Հայ մշակույթի պրոպագանդման մարզում շնորհակալ գործ կատարեցին ակադեմիկոս Ալեքսեյ Վեսելովսկին, նրա որդին՝ պրոֆեսոր Յուրի Վեսելովսկին, պրոլետարական գրականության հիմնադիր Մ. Գորկին, ականավոր հայագետ, բանաստեղծ Վալերի Բրյուսովը և ռուս մտավորականության շատ ուրիշ երևելի գործիչներ։

Հայ գրականության մասին իր բոլոր նախորդների արտահայտած ջերմ ու անկեղծ զգացմունքներն ի մի բերելով՝ Վալերի Բրյուսովը գրել է. «Հայ պոեզիան հենց գեղեցկության աշխարհ է. այն նոր գանձերով հարստացնում է պոեզիայի այն պանթեոնը, որն ամեն մի կուլտուրական մարդ կանգնեցնում է իր հոգում, որպեսզի այնտեղ պահի բոլոր երկրների և բոլոր դարերի բանաստեղծների սքանչելի ստեղծագործությունները»[16]։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումը նպաստեց նաև հայ արվեստի զարգացմանը։ Դա բնական էր և օրինաչափ, քանի որ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին զուգադիպում է մի ժամանակաշրջանի, երբ ռուսական պրոֆեսիոնալ երաժշտությունը և նկարչությունը համաշխարհային արվեստի բարձունքներին հասցրին աշխարհահռչակ արվեստագետներ Գլինկան, Դորգոմիժսկին, Մուսորգսկին, Ռիմսկի-Կորսակովը, Բորոդինը, Չայկովսկին, Բրյուլովը, Իվանովը, Լևիտանը, Սերովը, Շիշկինը, Սուրիկովը, Ռեպինը և նրանց հաջորդները։

XIX դարում ռուսական երաժշտական ուսումնական հաստատություններն ավարտեցին և ռուսական երաժշտական միջավայրում ստեղծագործական հասունության հասան հայ երաժիշտ կատարողների և կոմպոզիտորների իրար հաջորդած մի քանի սերունդներ։

Հայ տաղանդավոր շատ նկարիչներ ևս իրենց կրթությունն ստացան Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիայում ու Մոսկվայի կերպարվեստների ուսումնարանում և ռուս ականավոր նկարիչների հետ հաստատեցին ստեղծագործական սերտ համագործակցություն։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը, հայ-ռուս մշակութային կապերի ուժեղացումը, նրանց ստեղծագործական համագործակցությունը նպաստեցին նաև արևելահայ թատրոնի, ճարտարապետության, քանդակագործության և հայ արվեստի մյուս բոլոր բնագավառների զարգացմանը։

Հայ ողջ մտավոր կյանքի վրա Արևելյան Հայաստանի՝ Ռուսաստանի հետ միացման, դրան հաջորդած տասնամյակներին Ռուսաստանի սոցիալ-տնտեսական և մշակութային կյանքում կատարված տեղաշարժերի բարերար ազդեցությունը բարձր են գնահատել հայ մշակույթի ականավոր շատ գործիչներ։ «Ստրկության (ճորտերի— Զ. Գ.) ազատագրությունը,— գրում է Ղ. Աղայանը,— և վերջն էլ դատական վերանորոգությունը, գյուղական ինքնավարությունը, երկաթուղի, հեռագիր և այլն մին մինի ետևից հանկարծ գալով՝ շլացրին ժողովրդին, մի հանկարծական փոփոխություն ձգեցին նրա նիստ ու կացի և վարք ու բարքի մեջ։ Ժողովուրդն այնպես փոխվեց մի տասը տարվա մեջ, որքան փոխված չէր հարյուրավոր տարիների ընթացքում»[17]։ Նույն առնչությամբ Պ. Պռոշյանը գրում է. «...Տասն և իններորդ դարի երկրորդ կիսաշրջանը մի ընդհանրական չտեսնված հեղափոխություն կատարեց ռուսահայոցս կյանքի մեջ, մի վերափոխական տակնուվրայություն, որ դժվար թե աշխարհքի ստեղծագործությունից մինչև օրս որևէ դար սորա մի հարյուրերորդական մասը կատարած լինի»[18]։ Լեոն Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին գնահատելով որպես խանական լծից հայ ժողովրդի ազատագրություն, միաժամանակ շեշ-

տում է հայ մտավոր կյանքի համար նրա ունեցած շրջադարձային նշանակությունը։ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով հայ կյանքում «...սկսվեց մի նոր շրջան— խաղաղ զարգացման, մտավոր և կուլտուրական առաջադիմության շրջանը,— գրում է Լեոն,— ռուսաց զենքը ո՛չ միայն բերում էր խաղաղություն և հանգստություն, այլև կապում էր կամուրջ այնքան դժբախտություններ տեսած մեր երկրի և եվրոպական քաղաքակրթության մեջ»[19]։

Ըստ պատշաճի գնահատելով Արևելյան Հայաստանի Ռուսաստանի հետ միավորման նշանակությունը հայ մտավոր կյանքի զարգացման համար, Ավ. Իսահակյանը գրում է. «Հայ ժողովուրդը տակավին Իվան IV-ի ժամանակ իր հայացքը հառել էր Մոսկվային և իր բախտը ձգտում էր կապել նրա հետ։ XIX դարի սկզբում միայն իրականացավ նրա փափագը և, մտնելով Մոսկվայի համատեղության մեջ, սկսեց այնտեղից ստանալ լույս, գիտություն, նոր կուլտուրա»[20]։

***

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պրոգրեսիվությունն ակնհայտ կերպով նշմարվում է նաև հայ հասարակական-քաղաքական մտքի վերընթացով։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին զուգադիպեց Ռուսաստանում կատարված դարակազմիկ նշանակություն ունեցող քաղաքական իրադարձություններին։ 1825 թ. ռուս հեղափոխականների առաջին սերնդի ներկայացուցիչների՝ դեկաբրիստների ապստամբությունով Ռուսաստանը թևակոխում է իր ազատագրական շարժումների ազնվականական փուլը, իսկ 50-ական թվականների վերջերին, 60-ականի սկզբին նա անցնում է կատարում ազատագրական շարժումների երկրորդ՝ հեղափոխական-դեմոկրատական փուլը։ Այդ նշանավոր իրադարձությունները նոր հորիզոններ են բացում նաև հայ հասարակական-քաղաքական մտքի զարգացման համար, առավել հասունանում են նրա առջև ծառացած խնդիրները։

Թեպետ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով արևելահայերը թոթափեցին պարսկական-խանական լուծը, բայց նրանք չհասան ազգային ազատագրության։ Ցարիզմը Անդրկովկասում հետևողականորեն կիրառում էր իր ազգային-գաղութային քաղաքականության տիպական բոլոր գծերը։ Սակայն ցարիզմի այդ քաղաքականությունը ժողովրդական, աշխատավորական լայն խավերի կողմից լուռ ու հնազանդ չընդունվեց։ Սկսվում են դժգոհություններ, բողոքներ, հուզումներ, որոնք մերթ ընդ մերթ վեր են ածվում նաև խռովությունների։ Այդպիսին էր, օրինակ, 1837—1838 թվականներին Սևանի ավազանի 30 գյուղերի խռովությունը։

Ցարիզմի ազգային-գաղութային քաղաքականության դեմ մղվող պայքարը դարձավ արևելահայ հասարակական-քաղաքական շարժման գլխավոր խնդիրներից մեկը։

Արևելահայ հասարակական-քաղաքական միտքը չէր կարող անտարբեր լինել նաև արևմտահայության կացության, նրա ճակատագրի նկատմամբ։ XIX դարի իրար հաջորդած ռուս-թուրքական պատերազմների ժամանակ ռուսական զորքերը գրավեցին Արևմտյան Հայաստանի տարածքի մեծ մասը, և նպաստավոր պայմաններ ստեղծվեցին այդ հողերը վերամիավորելու Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանին։ Սակայն, ցավոք, հայ ժողովրդի այդ բաղձանքը չիրականացավ՝ արևմտյան մեծ տերությունների հակառուսական, ինչպես նաև նրանց ավանդական հայադավ քաղաքականության հետևանքով։ Եվրոպական մեծ տերությունների կամքով Արևմտյան Հայաստանը թողնվում է թուրքական տիրապետության ներքո։ Սաստկանում է առանց այդ էլ կատարյալ ստրկական կացության մեջ դրված արևմտահայության վիճակը, հասունանում է նրա ֆիզիկական գոյատևմանը սպառնացող արհավիրքը։ Այսպիսի իրադրությունների պայմաններում արևմտահայության ճակատագիրը ստանում է համազգային իմաստ, ուստի և այն չէր կարող չզբաղեցնել արևելահայ հասարակական-քաղաքական միտքը։

Ինչպես ասվեց, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց հետո



խոշոր փոփոխություններ են կատարվում նրա սոցիալ-տնտեսական կյանքում։ Սկսում են զարգանալ կապիտալիստական հարաբերությունները, ուժեղանում է գյուղի շերտավորման պրոցեսը, աճում է քաղաքային բնակչությունը, շահագործման ֆեոդալական եղանակին ավելանում է նաև բուրժուական եղանակը։ Վերջինիս հետևանքով առավել են սրվում սոցիալական հակամարտությունները։ Արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի փոփոխությունների և հայ հասարակական տարբեր դասակարգերի ու խավերի բախման պրոցեսում հանդես են գալիս քաղաքական-հասարակական տարբեր ուղղություններ, տարբեր հոսանքներ։ Նրանցից յուրաքանչյուրը մշակում է յուր գաղափարախոսությունը և գործունեության տակտիկական սկզբունքները։ Այդ ուղղությունների ու հոսանքների միջև բորբոքված պայքարն իր կնիքն է դնում ժամանակի արևելահայ հասարակական-քաղաքական կյանքի, նրա առջև կանգնած խնդիրների լուծման ձևերի ու միջոցների վրա։

Սկսած հայ հասարակական-քաղաքական շարժման անցյալի նշանավոր շատ գործիչներից և մասնավորապես XVIII դարի այնպիսի ականավոր գործիչներից, ինչպիսիք էին Ի. Օրին, Հ. Էմինը, Մ. Բաղրամյանը, Շ. Շահամիրյանը, Հովհ. Արղությանը, Հովհ. Լազարյանը և մյուսները, իրենց քաղաքական ծրագրերում և պրակտիկ գործունեության մեջ կարևոր դեր են հատկացրել ժողովրդի լուսավորման գործին։ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելուց հետո լուսավորական շարժումը հայ իրականության մեջ ընդունում է առավել լայն ծավալ։ Իսկ դա ժողովրդի քաղաքական ինքնագիտակցության արթնացման, ազգային ու սոցիալական ազատագրության պայքարի արտահայտությունն էր։

Հայ հասարակական-քաղաքական միտքը զբաղեցնող խնդիրները ջերմ պաշտպանության արժանացան ռուս ժողովրդի լավագույն զավակների, Ռուսաստանի հեղափոխական բոլոր սերունդների կողմից։

XIX դարի 20-ական թվականներին խանական լծից ազատագրվելու համար հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարին ջերմորեն արձագանքեցին ռուս հեղափոխականների առաջին սերնդի ներկայացուցիչները՝ դեկաբրիստները։ Կովկասյան հատուկ կորպուս աքսորված յոթ տասնյակ դեկաբրիստ սպաներ և դեկաբրիստական ապստամբություններին մասնակցած շուրջ երեք հազար զինվորներ քաջարի մասնակցություն ունեցան 1826—1828 թթ. ռուս-պարսկական և 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմներին։ Սարդարապատի ու Երևանի բերդերի պարիսպների տակ հերոսության անմոռաց օրինակներ ցույց տվեցին դեկաբրիստներ Ի. Պուշչինը, Ե. Լաչինովը, Պ. Բեստուժևը, Պ. Կոնովնիցինը, Ի. Բուրցովը, Վ. Վոլխովսկին, Ա. Միկլաշևսկին, Ն. Օրժիցկին, Ա. Գանգեբլովը և շատ ուրիշներ։

1826—1828 թթ. ռուս-պարսկական և 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմների մասնակից շատ դեկաբրիստներ, ականատես լինելով հայ ժողովրդի թշվառ կացությանը, արտահայտել են անկեղծ ցանկություն, որ ինչպես իրենք էին ասում «Երբեմնի նշանավոր Հայաստանը» կրկին ձեռք բերի իր նախկին «փառքը»[21]։ Դեկաբրիստ Ե. Լաչինովն այդ պատերազմներին իրենց մասնակցության նպատակը համարում էր օգնությունը հայերին՝ ազատագրվելու պարսիկ խաների և թուրք փաշաների ճիրաններից։ «Ամսի 17-ի առավոտյան (1828 թ. օգոստոսի 17-ին— Ջ. Գ.) մենք առաջ շարժվեցինք,— գրում է Ե. Լաչինովը,— նայեցինք անցյալ տարվա հենց այս օրերի հետ մեր դրության նմանությանը։ Այն ժամանակ մենք դուրս եկանք Ջանգիլիից (խոսքը պարսիկների կողմից պաշարված էջմիածնին Ապարանի ռուսական ճամբարից օգնության հասնելու մասին է— Ջ. Գ.) էջմիածինն ազատագրելու համար, այժմ գնում ենք ազատագրելու նրա ճնշված զավակներին»[22], այսինքն՝ արևմտահայերին։

XIX դարի 50—60-ական թվականներին հայ ժողովրդի ազգային և սոցիալական ազատագրությունն անկեղծ ու գործուն պաշտպանության արժանացավ ռուս ականավոր հեղափոխական-դեմոկրատներ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Գերցենի և նրանց բոլոր գաղափարակիցների կողմից։ Մ. Նալբանդյանի գլխա-

վորած հայ հեղափոխական-դեմոկրատական շարժումը դարձավ համառուսաստանյան հեղափոխական-դեմոկրատական շարժման բաղկացուցիչ մասը։

70—80-ական թվականներին Ռուսաստանում հեղափոխական շարժումը գլխավորեցին հեղափոխական նարոդնիկները։ Նրանք ակտիվ պայքար ծավալեցին ցարիզմի դեմ և յուրովի խթանեցին ռուսական հասարակական-քաղաքական մտքի առաջընթացը։ Այսպիսի մի շարժում, որը ծավալվելով ստանում էր համառուսաստանյան բնույթ, չէր կարող արձագանք չգտնել իր ժողովրդի հոգսերով ու ապագայով մտահոգված հայ առաջավոր մտավորականության շրջաններում։ Նարոդնիկական շարժումը նոր հույսեր ու ակնկալություններ ծնեց նրանց մեջ՝ Ռուսաստանի օգնությամբ առաջ մղելու հայ ժողովրդի ազատագրությունը։ Ուստի ազատամիտ գաղափարներով տոգորված շատ հայ երիտասարդներ զինվորագրվեցին այդ շարժմանը՝ գործելով Պետերբուրգում, Մոսկվայում, Խարկովում, Կիևում և կայսրության այլ կենտրոններում, ինչպես նաև Անդրկովկասում ստեղծված նարոդնիկական խմբակներում և կազմակերպություններում։

XIX դարի 90-ական թվականների կեսերից, երբ Ռուսաստանը թևակոխում է իր ազատագրական շարժումների պրոլետարական փուլը, հայ ժողովրդի ազգային, սոցիալական ու քաղաքական ազատագրությունը սերտորեն միահյուսվեց ռուսական բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հետ։ Հայ աշխատավոր ժողովուրդը հանձին ռուսական հերոսական պրոլետարիատի գտավ հզոր և հուսալի դաշնակից։

Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության սկզբնավորումից սկսած, նրա գործին զինվորագրվեցին հայ հեղափոխականներ Ի. Լալայանցը, Բ. Կնունյանցը, Ա. Զուրաբյանը, Ս. Ավետիսյանցը, Հ. Մելիք-Հովսեփյանը և շատ ուրիշներ։ Շուտով բոլշևիկյան կուսակցության ղեկավար կորիզում արժանի տեղ գրավեցին Վ. Ի. Լենինի աշակերտներ ու մերձավոր զինակիցներ Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը։ Նրանք բոլորն էլ հայ ժողովրդի ճակատագիրը, նրա գալիքը կապում էին Ռուսաստանի բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հետ։

XIX դարի վերջերին, XX դարի սկզբներին Անդրկովկասում արագորեն տարածվում է մարքսիզմը, որը սկսել էր թևակոխել իր լենինյան փուլը։ Այն աստիճանաբար իր գաղափարական ազդեցության ոլորտն է առնում նաև Հայաստանի պրոլետարիատին, աշխատավոր գյուղացիությանը, առաջավոր մտավորականությանը։

Անդրկովկաս աքսորված և եկած ռուս իսկրայականների հետ միասին հայ, վրացի, ադրբեջանցի մարքսիստները հիմք դրեցին սոցիալ-դեմոկրատական լենինյան կազմակերպություններին։ Նույնպիսի կազմակերպություններ ստեղծվում են նաև Հայաստանում, որոնք կոփվում և հասունանում են ազգայնական կուսակցությունների ու տարբեր քաղաքական հոսանքների և ուղղությունների դեմ մղված գաղափարական թեժ պայքարում։

Հայ և ոչ ռուս մյուս բոլոր ժողովուրդների մուտքը Ռուսաստանի կազմի մեջ, Ռուսաստանի թևակոխումը ազատագրական շարժումների պրոլետարական փուլը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարական ազդեցության ներքո բավական հեղափոխական շարժման ծավալումը հնարավորություններ ընձեռեցին, բոլշևիկների կուսակցության գլխավորությամբ, Ռուսաստանի բոլոր ժողովուրդներին միավորվելու համառուսաստանյան հեղափոխական շարժման ընդհանուր ոլորտում։ Այդ ոլորտն ամրապնդվեց ու հզորացավ դասակարգային պայքարի ահեղ գոտեմարտերում, ռուսական երեք հեղափոխությունների բովում։

Այսպիսով, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումով հայ աշխատավոր ժողովուրդն իր ճակատագիրը կապեց ոչ թե ցարիզմի, այլ ռուս ժողովրդի, Ռուսաստանում բարձրացող հեղափոխական ուժերի հետ։ Եվ միայն ցարիզմի, բուրժուակալվածատիրական վարչակարգի կործանման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի և Հայաստանում սովետական կարգերի հաստատման շնորհիվ էր, որ հայ ժողովուրդը, Ռուսաստանի բոլոր ժողովուրդները հասան ազգային, սոցիալական ու քաղաքական լիակատար ազատագրության։



Մեծ Հոկտեմբերը փշրեց ցարական կայսրությունում գոյություն ունեցող սոցիալական ու ազգային լծի ստրկական շղթան, մեկընդմիշտ վերջ դրեց Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների ճնշմանն ու հարստահարմանը և նրանց առջև բացեց զարգացման ու առաջընթացի նոր և ընդարձակ ուղի։

Ռուս մեծ ժողովրդի հետ հայ ժողովրդի անցած 150 տարիները, մասնավորապես՝ նրա սովետական ժամանակահատվածը, հայ ժողովրդի սոցիալիստական վերածնունդը, դարեր առաջ կորցրած իր ազգային պետականության վերականգնումը՝ ի դեմս Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության, և վերջինիս շուրջ վեց տասնամյակի քաղաքական, տնտեսական ու մշակութային կյանքի աննախընթաց զարգացումը, ՍՄԿԿ լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցության, նրանց սերտ միասնության և փոխօգնության արգասիք են։

## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ


1 К. Маркс и Ф. Энгельс, Соч., изд. 2-е т. 27, стр. 241.

2 Տե՛ս И. Шопен, Исторический памятник состояния армянской области в эпоху ее присоединения к Российской империи, СПб, 1852, стр. 486, 509—518.

3 Տե՛ս Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հ. Զ. Երևան, 1934, էջ 641։

4 Տե՛ս նույն տեղը, էջ 331։

5 Տե՛ս Խ. Ավդալբեկյան, Հողային հարցը Արևելյան Հայաստանում 1800—1917 թթ., Երևան, 1959, էջ 16։

6 Տե՛ս Ալ. Երիցյան, Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մաս Ա., Թիֆլիս, 1894, էջ 337։

7 Տե՛ս Նկարագիր գաղթականության հայոց ի'Պարսկաստանէ ի'Ռուսաստան, Մոսկվա, 1832, էջ 94։

8 Տե՛ս Ալ. Երիցյան, նշված աշխատությունը, էջ 441—442։

9 Տե՛ս նույն տեղը, էջ 337։

10 Տե՛ս Г. А. Шпажников, Религии стран Западной Азии, Справочник, М., 1976, стр. 265.

11 Տե՛ս նույն տեղը, էջ 266։

12 К. Маркс и Ф. Энгельс, Соч., изд. 2-е, т. 22, стр. 33.

13 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 17, էջ 133։

14 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 20։

15 Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հ. 4, Երևան, 1951, էջ 332։

16 В. Брюсов, Поэзия Армении с древнейших времен до наших дней, Ереван, 1973, стр. 13:

17 Դ. Աղայան, Երկեր, հ. 2, Երևան, 1939, էջ 280։

18 Պ. Պռոշյան, Երկերի ժողովածու, հ. 2, Երևան, 1953, էջ 399։

19 Լեո, Ստեփաննոս Նազարյանց, Թիֆլիս, 1902, էջ 3։

20 Ալ. Իսահակյան, Երկեր, հ. 4, Երևան, 1959, էջ 492։

21 Տե՛ս Отрывок из «Исповеди Лачинова» («Кавказский сборник», т. 1, Тифлис, 1876, стр. 130).

22 Տե՛ս նույն տեղը, էջ 151—152։

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԸ, ԳԻՏՆԱԿԱՆՆ ՈՒ ՔՆՆԱԴԱՏԸ

(Ն. Գ. ՉԵՐՆԻՇԵՎՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Մ. Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

### 1.

1862 ԹՎԱԿԱՆԻ հոկտեմբերի 5-ին Պետրոպավլովսկի ամրոցից Չերնիշևսկին գրում էր կնոջը՝ Օլգա Սոկրատովնային. «Մի բան կասեմ քեզ. իմ և քո կյանքը պատկանում է պատմությանը. կանցնեն հարյուրավոր տարիներ, և մեր անունները դեռ սիրելի կլինեն մարդկանց համար. և մեզ երախտագիտությամբ կհիշեն, երբ արդեն մոռացած կլինեն գրեթե բոլոր նրանց, ովքեր ապրել են մեզ հետ միաժամանակ» (ПСС, т. XIV, стр. 456):

Սենատական հանձնաժողովը որոշել էր պահել այդ նամակը և կցել Չերնիշևսկուն վարկաբեկող նյութերին: Հանձնաժողովի ուշադրությունը գրավել էին հենց մեր մեջբերած տողերը: Այդ ինչպե՞ս, ցարիզմի անսասան թվացող կարգերի դեմ ծանրագույն հանցանքների համար կասկածի տակ առնված մարդու կյանքը «պատկանում է պատմությանը», այն դեպքում, երբ նրա հետ միաժամանակ ապրած գրեթե բոլորի անունները «մոռացված կլինեն»: Որտեղից է այդքան վստահությունը, կարելի է ասել մարտահրավերը, որ կարծես դիտավորյալ նետվել է ինքնակալության և ճորտատիրության պաշտպաններին, մի մարտահրավեր, որը, ճիշտ է, արտահայտվել է մասնավոր, բայց բանտապահների ձեռքով անցնող նամակում:

Չերնիշևսկին ո՛չ միայն կանխագուշակում էր իր նամակում, այլև համարձակորեն մեղադրում. մեղադրում էր իրեն մեղադրողներին՝ ավելի խիստ ու հեղինակավոր դատավորի՝ պատմության ու մարդկային հիշողության անունից: Այո՛, ողորմած տերեր, կարծես ասում էր նա, դուք հիմա ուժեղ եք, ձեր ձեռքումն են բանտերն ու կախաղանները, բայց մի մոռացեք, որ կա վաղվա օրը, և դուք անհետ կկորչեք մարդկանց հիշողությունից, թողնելով միայն զզվանքի զգացում, այն բանի համար, որ եղել եք չարության ու բռնության ջատագովներ: Այս է ձեր ճակատագիրը, զորավոր սենատորներ, ցարական բարձրաստիճան պաշտոնյաներ, փաստաբաններ ու դատախազներ: Չերնիշևսկու կողմն էր նաև այն ճշմարտությունը, որ կանցնեն շատ տարիներ, և մարդիկ «երախտագիտությամբ» կհիշեն ու կուսումնասիրեն իր կյանքը, կսովորեն իրենից, կդաստիարակվեն մարտիկի իր անձնուն բնավորությամբ:

Երբ Չերնիշևսկին գրում էր այդ նամակը, ընդամենը 34 տարեկան էր: Իր կյանքի մնացած 27 տարիները, իսկ նա մահացել է 61 տարեկանում, որպես ցարիզմի կալանավոր անցկացրել է բանտերում, տաժանակրության մեջ և աքսորում: Կյանքի մոտ կեսը: Հազվագյուտ երևույթ մարդկային մարտիրոսության տարեգրության մեջ: Եվ Չերնիշևսկին զրկանքներով ու տառապանքներով լի այդ բոլոր տարիներին պահպանել է իր հեղափոխական ոգու կայունությունն ու տոկունությունը:



Ի՞նչն էր սնում Չերնիշևսկու հոգեկան արիությունը: Այն բանի գիտակցումը, որ նա իր կյանքը, և ափսո՜ս միայն՝ ոչ ամբողջ, այլ ողբերգականորեն ընդհատված կյանքը, երիտասարդ տարիների եռանդն ու ուժերը նվիրել է աշխատավորների ազատագրությանը: Չերնիշևսկին գիտակցաբար և առանց տատանումների ընթացավ այդ փշոտ ճանապարհով: Եվ այդ միտքը նա չափազանց վառ կերպով արտահայտել է 1871 թվականի հունվարի 12-ին՝ կնոջը գրած նամակում.

«Համաձայնեի՞ արդյոք ես իմ ճակատագրից ջնջել այդ հեղաշրջումը, որն ամբողջ ինը տարի (Չերնիշևսկին չէր կարող ենթադրել, որ այդ տարիները կտևեն քառորդ դարից ավելի:— Մ. Գ.) քեզ կպատճառի դառնություններ ու զրկանքներ: Քեզ համար ես ափսոսում եմ, որ այդպես եղավ: Ինձ համար միանգամայն գոհ եմ: Իսկ մտածելով ուրիշների մասին, տասնյակ միլիոնավոր այդ աղքատների մասին, ես ուրախանում եմ, որ առանց իմ կամքի ու ծառայության, նախկինից ավելի մեծ ուժ ու հեղինակություն է տրվել իմ ձայնին, որն ի վերջո մի օր կհնչի ի պաշտպանություն նրանց» (XIV, 504):

Եվ իրոք, հենց միայն այն պատճառով, որ նրա ձայնն այն ժամանակ հնչում էր այնքան զորեղ և ուժգին ի պաշտպանություն թշվառների ու ընչազուրկների, ցարիզմը նրան հայտարարեց իր № 1 թշնամին և որոշեց մեծ հեղափոխականին կենդանի թաղել Սիբիրի հեռավոր ու խստաշունչ անկյուններում: Այդ անողոք դատաստանից դեռ շատ տարիներ առաջ Չերնիշևսկին Օլգա Սոկրատովնայի, այն ժամանակ դեռ իր հարսնացուի հետ ունեցած զրույցում զարմանալիորեն ճիշտ կանխագուշակել էր իր ապագա բախտը:

«Իմ մտածելակերպն այնպիսին է,— նախազգուշացնում էր նա,— որ ես պետք է րոպե առ րոպե սպասեմ, որ ահա կհայտնվեն ժանդարմները, ինձ կտանեն Պետերբուրգ և կնստեցնեն բերդ՝ աստված գիտե, թե ինչքան ժամանակով» (I, 418): Եվ դա ասվել էր դեռ 1853 թվականի փետրվարին:

### 2.

Չերնիշևսկին լավ էր հասկանում իր ընտրած ուղու ո՛չ միայն դժվարությունները. նա համակողմանիորեն ու ջանասիրությամբ իրեն պատրաստում էր զոհաբերություն պահանջող հեղափոխական գործունեության: Պետերբուրգի համալսարանի բանասիրական ֆակուլտետի ուսանող եղած ժամանակ, սկզբից և եթ նա բացառիկ հետաքրքրություն էր ցուցաբերում սոցիալ-քաղաքական պրոբլեմների նկատմամբ: Նրա պաշտոնական ուսուցիչներից ոչ մեկը նրան չէր բավարարում այդ գործում: Նա վերցնում էր այն ամենը, ինչ նրանք կարող էին տալ այս կամ այն կոնկրետ առարկայից՝ հաճախ վիճաբանության մեջ, պայքարում, և նրանք ըստ արժանվույն գնահատում էին նրա հասումները և հաշվի առնում կարծիքները: Չերնիշևսկին նրանցից ավելին չէր էլ սպասում:

Բայց այդ տարիներին նա զբաղվում էր ո՛չ միայն կրթությամբ, այլև ինքնակրթությամբ: Այդ երկու պրոցեսները նրա մեջ ընթանում էին զուգահեռաբար: Առաջին դեպքում նա հաշվետու էր համալսարանի իր ղեկավարներին և Սարատով գրած իր նամակներում՝ հորն ու մորը. չէ՛ որ նրանց սուղ միջոցներով էր, որ նա հատուկ եկել էր Պետերբուրգ՝ սովորելու: Երկրորդ դեպքում, որը նրա մոտ, անկասկած, առաջին տեղում էր, նա ստուգում էր ինքն իրեն, միայն իր անձին հաշիվ տալով:

Չերնիշևսկին դեռ վաղ հասակից իսկական գրքահավաք էր: Այդ հատկությունը նոր պայմաններում, երբ նա սովորում էր համալսարանում, գլխավոր դեր կատարեց նրա զարգացման և հեղափոխական աշխարհայացքի ձևավորման գործում: Այդ բանում մենք համոզվում ենք, ծանոթանալով նրա օրագրերին, որ նա պահում էր ուսանողական տարիներին:

Ժամանակակից պատմության և քաղաքականության նկատմամբ իր ունեցած ծարավը հագեցնելու նպատակով նա գրքերի ընթերցանությունը պարտադիր ու ամենօրյա պահանջմունք է դարձնում իր համար: Եթե օրն անցնում էր առանց ընթերցանության, դա համարում էր ապարդյուն անցկացրած ժամանակ: «Օրն անցավ ընթերցանությամբ..., հիմա նորից պառկում եմ կարդալու» (I, 88): «Գրեթե ամբողջ օրն անցավ ընթերցանությամբ» (I, 90): «Չի կարելի ասել, թե օրն անցավ ապարդյուն, որովհետև կարդացել եմ...» (I, 91): Եվ այլն, և այլն: Չերնիշևսկին խորապես ափսոսում էր, որ համալսարանում ուսման հետ կապված հանգամանքներն իրեն ստիպում էին «զբաղվել ոչ թե այն բանով, ինչ ես եմ ուզում, ինչպես, օրինակ, նորագույն պատմությամբ, այլ նրանով, ինչ պետք է ու հարկավոր քննությունների համար» (I, 145):

Իր համոզմունքները ժամանակի մակարդակին բարձրացնելու անփոխարինելի միջոցը Չերնիշևսկին համարում էր ռուս առաջավոր գրականությունը, նրա մերկացնող ոգին, նրա մարդասիրությունն ու ազատասիրությունը: Նա ապացուցում էր, որ Ռուսաստանի զարգացման առանձնահատուկ պայմանների շնորհիվ ականավոր գրողներն ու բանաստեղծները դառնում են ազգի առաջնորդներ և ղեկավար-

ներ: «Նրանք մեր փրկարարներն են, այդ գրողները, ինչպես Լերմոնտովը և Գոգոլը» (I, 58): Նրանց ստեղծագործությունները նպաստում էին դեմոկրատական և հայրենասիրական ինքնագիտակցության ձևավորմանը:

Այդ տեսակետից Չերնիշևսկու զարգացման վրա է՛լ ավելի ուժեղ ազդեցություն գործեցին Բելինսկին և Գերցենը: Նրանց նա գիտեր դեռ Սարատովում: Բայց գալով Պետերբուրգ, նա սկսեց ավելի խոր զբաղվել ռուսական ազատագրական մտքի այդ վիթխարի դեմքերի ստեղծագործությունների ուսումնասիրությամբ: Իր ունկնդրած դասախոսությունների ու պարապմունքների մասին շարունակ դատում էր ավելի բարձր դիրքերից: Օրինակ, Պուշկինի Բորիս Գոդունով-ի մասին պրոֆեսոր Նիկիտենկոյի կատարած վերլուծության կապակցությամբ նա նշում էր, որ վերջինս «մեծ մասամբ ասում է այնպիսի բաներ, որ վաղուց ասել է Բելինսկին անհամեմատ ավելի լավ և ավելի ստույգ տեսակետից» (I, 241): Ամբողջ կյանքում Բելինսկին Չերնիշևսկու համար եղել է գրական քննադատության օրինակ:

Արդեն վտարանդի և շնորհազրկված Իսկանդերի՝ Գերցենի նկատմամբ Չերնիշևսկու տածած խոր զգացմունքի մասին է վկայում մոսկվացի մի ծանոթ կնոջ՝ Ա. Գ. Կլիենտովայի հետ ունեցած նրա խոսակցությունը: Վերջինս անձամբ ճանաչում էր Գերցենի կնոջը՝ Նատալյա Ալեքսանդրովնային և նրանից ստացել էր մի նվեր՝ նրա ամուսնու Ո՞վ է մեղավոր վեպը: Զրուցակցի այն հարցին, թե ճանաչում է արդյոք Չերնիշևսկին Գերցենին, «Ինչպես կարող եմ չճանաչել,— ասացի ես իմ սովորական խանդավառությամբ,— ես նրան այնպես եմ հարգում, ինչպես չեմ հարգում ռուսներից ոչ մեկին, և չկա այնպիսի մի բան, որ ես պատրաստ չլինեմ կատարելու նրա համար» (I, 381):

Չերնիշևսկու ուսանողական տարիները զուգադիպեցին Արևմուտքի 1848—1849 թվականների հեղափոխական իրադարձություններին: Նրա մեջ բուռն ցանկություն է առաջանում իմանալ այնտեղ ծավալվող հասարակական դասակարգերի և կուսակցությունների պայքարի իմաստը: Չերնիշևսկին աստիճանաբար իր համար պարզում է մի կարևոր հանգամանք՝ բուրժուական քաղաքական ազատությունների ձևական բնույթը: «Չեմ սիրում ես այդ պարոններին, որոնք ասում են ազատությո՜ւն, ազատությո՜ւն, և այդ ազատությունը սահմանափակում նրանով, որ ասել են այդ բառը և գրել օրենքներում, բայց չեն կենսագործում, որ ոչնչացնում են անհավասարության մասին խոսող օրենքները, բայց չեն ոչնչացնում սոցիալական այն կարգը, որտեղ ժողովրդի $^9/_{10}$-ը ստրուկներ ու պրոլետարներ են» (I, 110): Այս խոսքերը Չերնիշևսկին իր օրագրում գրել է 1849 թվականի սեպտեմբերի 8-ին: Իսկ սեպտեմբերի 17-ին նա գրել է. «Ինձ թվում է, որ մարդկության վերջնական նպատակի մասին ունեցած իմ համոզմունքներով ես դարձել եմ սոցիալիստների ու կոմունիստների վճռական կողմնակից...» (I, 122):

Չերնիշևսկին հանրապետական է, դեմոկրատ, ժողովրդական իշխանության կողմնակից: Ժողովուրդն ավելի բարձր է իր ընտրած ժողովից կամ պառլամենտից, նա իրավունք ունի դրանք անվավեր հայտարարելու, եթե նրանք դադարում են կատարել իր կամքը, պաշտպանել իր շահերը, մտածել ու գործել հանուն իր երջանկության: Ոչ թե ժողովուրդն է պետության համար, այլ պետությունն է ժողովրդի համար, և հարցը այստեղ քաղաքական իշխանության ձևը չէ, այլ էությունը, բովանդակությունը: Բայց այդպիսի պետությունը, որի նպատակը անշահախնդիր կերպով աշխատավորներին ծառայելն է, ինքն իրեն չի գալիս, այն հարկավոր է ստեղծել, նվաճել դասակարգերի սուր պայքարում, ապացուցում էր Չերնիշևսկին:

Բայց Արևմուտքը երիտասարդ Չերնիշևսկու վրա ազդեցություն էր գործում ո՛չ միայն հարուստ և ուսանելի հեղափոխական պրակտիկայով: Անգնահատելի ու հսկայական էր այն դասը, որ ապագա ռուս հեղափոխականը քաղում էր արևմտաեվրոպական փիլիսոփաների, քաղաքատնտեսների, պատմաբանների, ուտոպիստ սոցիալիստների և այլ մտածողների ստեղծագործություններից: Դժվար է պատկերացնել, թե Չերնիշևսկին, սովորելով համալսարանում և դասերից դուրս միշտ բարեխղճորեն կատարելով անչափ շատ պարտականություններ, ինչպե՞ս էր կարողանում օտար լեզուներով այդպիսի քանակությամբ գրքեր կարդալ այդ ժամանակաշրջանում:

Դեռ 1848 թվականի վերջին Չերնիշևսկին ծանոթացել էր Պետերբուրգի համալսարանի ազատ ունկնդիր, Պետրաշևսկու հայտնի խմբակի անդամ Ա. Վ. Խանիկովի հետ: Վերջինս նրան խորհուրդ էր տվել կարդալ Ֆուրիեի երկերը: Կարդալուց հետո Չերնիշևսկուն առանձնապես դուր էր եկել ֆրանսիացի մտածողի սոցիալական սիստեմը, մասնավորապես նրա ուսմունքը ֆալանգների և ասոցիացիաների մասին: Եվ շատ տարիներ հետո, երբ Չերնիշևսկին Պետրոպավլովսկի ամրոցի մութ ու խոնավ խցում ուրվագծում էր Ինչ անել վեպի հերոսուհի Վերա Պավլովնայի նշանավոր երազների ընդհանուր գծերը, որտեղ Ռուսաստանն ապրում էր ազատ ու երջանիկ աշխա-



տանքով, նրան օգնության էր գալիս այդ «զարմանալի», «տարօրինակ», «խենթավուն» ու «ծիծաղելի» (բոլոր արտահայտությունները էլ Չերնիշևսկունն են) ֆրանսիացին, որը երևակայական մտակառուցումների ու ձևերի մեջ փորձում էր կանխագուշակել ապագա մարդկային հասարակության պատկերը:

Նույն այդ Խանիկովից էլ Չերնիշևսկին ստացել էր Լ. Ֆոյերբախի Քրիստոնեության էությունը երկը: Այդ գրքի ընթերցումը շոշափեց Չերնիշևսկու այն ժամանակվա աշխարհազգացողության ամենահիվանդոտ տեղը: Սկզբնական շրջանում Չերնիշևսկու մեջ կողք-կողքի ապրում էին հեղափոխական դեմոկրատիզմն ու կրոնականությունը և ընթանում միասին: Ֆոյերբախը օգնեց նրան՝ վերացնելու այդ անհարիրությունը: Նրա ազդեցությամբ Չերնիշևսկին վերջնականապես անցավ մատերիալիզմի ու աթեիզմի դիրքերը:

Չերնիշևսկին խոր գիտելիքները ձեռք էր բերում համառ աշխատանքով և ինքնուրույն: Շատ տարիներ հետո Սիբիրից իր որդիներին գրած մի նամակում նա բաց է անում իր «գիտնականության» այդ «գաղտնիքը»: «Ես ինքնուս եմ ամեն ինչում, բացի լատիներենից, որն ինձ լավ սովորեցնում էր հայրս» (I, 21):

3.

Համալսարանական դասընթացն ավարտելով իրեն հարազատ երկրի բարօրության նվիրելու լիակատար գիտակցությամբ ու պատրաստակամությամբ, Չերնիշևսկին ավագ դասախոսի տեղ է ստանում Սարատովի գիմնազիայում: Եվ Սարատով մեկնելու ճանապարհին նա իր ուղեկից ընկերների հետ միասին, «իրար հետ շարունակ դատողություններ էինք անում կոմունիզմի մասին, Արևմտյան Եվրոպայում տեղի ունեցող հուզումների, հեղափոխության, կրոնի մասին» (I, 402):

Մանկավարժությունն այն առաջին բնագավառն էր, որտեղ Չերնիշևսկին կիրառեց իր հեղափոխական-դեմոկրատական և մատերիալիստական աշխարհայացքի սկզբունքները: Եվ դա չէր կարող ընդհարում չհարուցել գիմնազիայի ղեկավարության հետ: Բայց նա Սարատովում՝ գիմնազիայի ուսուցչի պաշտոնով աշխատեց երկու տարուց մի քիչ ավելի, անջնջելի հիշողություն և սեր թողնելով իր սաների հոգում: Իսկ ցարական սատրապների աչքում այդ նահանգական ուսումնական հաստատությունը Չերնիշևսկուց հետո ձեռք բերեց «անբարեհույս» երիտասարդների այլ կարգի «օրրանի» համբավ:

Մի ուշագրավ փաստ: Ալեքսանդր II-ի դեմ մահափորձ կատարած Կարակոզովը եղել է Սարատովի գիմնազիայի սանը: Այդ կապակցությամբ ստեղծված կառավարական հանձնաժողովի մեջ միտք է ծագում՝ այդ գործին մասնակից դարձնել արդեն տաժանակրության մեջ գտնվող Չերնիշևսկուն: Չէ՛ որ ցարի վրա կրակողը սովորում էր այնտեղ, որտեղ դասավանդել էր Չերնիշևսկին: Կասկածը վերացավ այն ժամանակ միայն, երբ պարզվեց, որ Կարակոզովը այդ ժամանակ կարող էր լինել միայն առաջին դասարանում, որտեղ Չերնիշևսկին ոչ մի առարկա չէր ավանդում: Դա ցույց է տալիս, որ ցարական դահիճները չգիտեին, թե ուրիշ ինչ կերպ վատացնեին Սիբիրի հեռավոր աքսորում գտնվող Չերնիշևսկու առանց այն էլ տրագիկ վիճակը:

Չերնիշևսկու կյանքում, երբ նա որպես ուսուցիչ աշխատում էր Սարատովում, տեղի ունեցավ մի կարևոր իրադարձություն ևս՝ նրա ամուսնությունը տեղական բժիշկ Վասիլևի դստեր՝ Օլգա Սոկրատովնայի հետ: Մենք բերեցինք սիրած աղջկանն արած բազմաթիվ նախազգուշացումները, որպեսզի նա մի լավ մտածի՝ նախքան կվճռի իր բախտը կապել մի այնպիսի մարդու հետ, որը որոշել է ընթանալ հեղափոխական ուղիով: Ահա նրա մի քանի մտքերը ևս այն մասին, թե բնավորության ինչ գծեր ունի ինքը: «Եթե մարդը ուրախության մեջ է, ես ուրախանում եմ նրա հետ: Բայց եթե նա վշտի մեջ է, ես ավելի շատ վշտակցում եմ նրան, քան արձագանքում նրա ուրախությանը. ես նրան սիրում եմ անհամեմատ ավելի շատ»: «Երբ մարդը վշտի մեջ է, նա ինձ երկու անգամ ավելի շատ է զբաղեցնում» (I, 524): «Ես այն մարդկանցից մեկն եմ, որոնք ծածկում են ուրիշների տանիքը, իսկ իրենցը բաց թողնում» (I, 530): Ուրիշի երջանկությունը, և առավել ուրիշին վշտակցելու, ուրիշների փոխարեն ուրախանալու և վշտանալու կարողություն՝ ինչպիսի մարդկային վեհ հատկություն է դա: Անհոգի, քար սրտով դժվարին ու ազնիվ գործի համար պայքարող մարտիկ չե՛ս դառնա, հեղափոխական չե՛ս դառնա: Սա է Չերնիշևսկու այդ խոսքերի իմաստը:

4.

Հասարակական լայն գործունեության պահանջը Չերնիշևսկուն ձգում էր Պետերբուրգ: 1853 թվականի մայիսին նա արդեն այնտեղ էր: Առաջին գործը, որին նա ձեռնամուխ եղավ այդտեղ, իր վաղեմի երազանքի՝ գեղագիտական թեմայով մագիստրոսական դիսերտացիայի պաշտպանությունն էր:

աշխարհայացքի տեսական աղբյուրներից մեկը:

Չերնիշևսկու այդ երկերը Կ. Մարքսը կարդացել է ռուսերեն բնագրով: Նա Կապիտալում նշում էր, որ Չերնիշևսկին եղել է «ռուս մեծ գիտնական ու քննադատ», որը վարպետորեն ցույց է տվել «բուրժուական քաղաքատնտեսության սնանկացումը» (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, Հայպետհրատ, 1954, էջ 13):

Մենք արդեն ասացինք, որ Չերնիշևսկին բացառիկ հետաքրքրություն էր ցուցաբերում ժամանակակից պատմության նկատմամբ: Երեք տարուց ավելի նա ղեկավարում էր «Սովրեմեննիկ» հանդեսի «Քաղաքականություն» կարևորագույն բաժինը: Նրա ամենամսյա տեսություններում հանգամանորեն լուսաբանվում էին Արևմուտքի հրատապ իրադարձությունները՝ ազգային-ազատագրական շարժումը Իտալիայում, Հունգարիայում, Չեխիայում, Սերբիայում, Խորվաթիայում, դասակարգային պայքարը Ֆրանսիայում և Գերմանիայում, Անգլիայի գաղութային քաղաքականությունը, քաղաքացիական պատերազմը Հյուսիսային Ամերիկայում և ուրիշ շատ հարցեր: Չերնիշևսկին կարողանում էր այդ իրադարձություններին մոտենալ դասակարգային տեսակետից: Նա նախազգուշացնում էր այն ժամանակվա առաջատար տերությունների նենգ փորձերից, որոնք աշխատում էին իրենց քաղաքական խաղի մեջ օգտագործել ճնշված ժողովուրդներին, զոհաբերել նրանց ազգային շահերը՝ սեփական նպատակներին հասնելու համար: Չերնիշևսկին ռասայականության, շովինիզմի թշնամի է, ժողովուրդների բարեկամության ջատագով: Ընդհանուր թշնամու դեմ մղվող պայքարում կարևոր են աշխատավորների համերաշխությունը, միասնությունը, համախմբվածությունը՝ որ ազգին էլ որ նրանք պատկանեն: Ժողովուրդները իրենց ազատագրությունը պետք է սպասեն ոչ թե օտար ու իրենց թշնամի ձեռքերից, այլ իրենք իրենցից:

Չերնիշևսկին այդ բանը հիանալի ցույց է տվել Իտալիայի օրինակով: Ֆրանսիայի այն ժամանակվա կայսր Նապոլեոն III-ը Եվրոպայում վարած իր ագրեսիվ քաղաքականությունը քողարկում էր իտալական ժողովրդին Ավստրիայի տիրապետությունից ազատագրելու ձգտումով: Միամիտ ու բարի մարդիկ միայն կարող են հավատալ դրան, ապացուցում էր Չերնիշևսկին: Ֆրանսիական միապետության բուն էությունը բացառում է ժողովուրդների ազատագրության համար ձեռնարկվող ամեն մի գործողություն: Նապոլեոնյան Ֆրանսիան ուզում է «պարզ լուծը փոխարինել բարդով, այսպես ասած, երկհարկանի լծով. որպես առաջին շերտ նա Իտալիայի վրա պառկած թողեց Ավստրիային, բայց Ավստրիայի ու Իտալիայի վրա միասին նա դրեց ֆրանսիական լծի ծանրությունը» (VI, 276):

Իտալիայի ազատագրության համար կա երկու եղանակ՝ լիբերալ-համաձայնողական և հեղափոխական-դեմոկրատական: «Փաստերն ապացուցել են,— գրել է Չերնիշևսկին,— որ իտալական միասնությունը հաստատվում է հեղափոխական ճանապարհով, որ ցանկանալ այդ միասնությունը՝ նշանակում է ցանկանալ հեղափոխություն» (VIII, 309): Գարիբալդին ու նրա խիզախ կողմնակիցները— ահա Իտալիայի իսկական հայրենասերները, որոնք ոչ մի զոհողության առջև կանգ չեն առնում նրա ազատության ու անկախության համար: Իսկ նկատի ունենալով իտալական ազգային շարժման մեջ եղած ամեն տեսակ անկայուն և տատանվող տարրերին, Չերնիշևսկին գրում էր. «Տատանվելու... հարկ չկա: Այո կամ ոչ, ինչպես կամենաք, բայց համենայնդեպս եղեք հաստատակամ: Հարկավոր է լինել մարդ, այլ ոչ թե հողմացույց: Դա կարևոր բան է, դա գուցե ամենակարևոր բանն է պատմության մեջ» (VI, 415): Մի այլ տեղում Չերնիշևսկին հոյակապ խոսում է այն մասին, որ հեղափոխական գործունեությունը զբոսանք չէ մաքուր մայթի վրա: «Եթե դուք չեք ցանկանում կեղտոտել ձեր կոշիկները, նստեցեք տանը, քաշվեցեք մի կողմ... տեղը թողեք, որ ուրիշները գործեն» (VI, 187):

Մի ամբողջ շարք աշխատություններում Չերնիշևսկին, որպես փայլուն պատմաբան, վերլուծում է դասակարգային պայքարն Արևմուտքի զանազան երկրներում: Այդ պայքարի կենտրոնում, ցույց էր տալիս նա, կանգնած են պրոլետարները, որոնք, ճիշտ է, շատ բաներում դեռ թույլ են ու անկազմակերպ, բայց «գլխավորը՝ աճում է նրանց գիտակցությունը իրենց ուժերի վերաբերյալ և հստակ է դառնում նրանց հասկացողությունը իրենց պահանջմունքների մասին» (IV, 465): Ապագան պատկանում է նրանց և, անցնելով իշխանության գլուխ, նրանք ի վիճակի կլինեն լուծելու հասարակության դժվարին պրոբլեմները:

Շատ են գրում ու խոսում պատերազմի վտանգի մասին, նշում էր Չերնիշևսկին իր քաղաքական տեսություններից մեկում: Բոլոր պետություններն էլ տենդորեն զինվում են, այդ բանը արդարացնելով իրենց սահմանների «անվտանգությամբ»: Իսկ իրականում ո՞ւմ է ձեռնտու դա: Աշխատավորների՞ն, որոնք հեծում են զանազան հարկերի ծանր լծի տակ: Ո՛չ, դա ձեռնտու է հարուստներին ու իշխող դասակարգերին, բանկիրներին, գործարանատերերին, խոշոր հողատերերին ու բարձր զինվորականներին: Չերնիշևսկին համոզված է,



որ պատերազմի՝ այդ «մարդկանց ու փողերի արտակարգ վատնումի» անհրաժեշտությունը ժամանակի ընթացքում կվերանա, օրինակ, Անգլիայի համար, «երբ աշխատավոր դասակարգը ձեռք կբերի վճռական ազդեցություն» այդ երկրի գործերի վրա և իրերի մասին «կդատի աշխատանքի շահերին համապատասխան» (նույն տեղը, էջ 489):

## 6.

Չերնիշևսկին մեծապես զարգացրել ու հարստացրել է մատերիալիստական փիլիսոփայությունը Ռուսաստանում: Ամենից առաջ նա գտնում էր, որ աշխատավորների շահերի համար արդյունավետ պայքար կարելի է մղել միայն որոշակի գիտական տեսությամբ զինվելով: Առանց առաջավոր տեսության չի կարող լինել հեղափոխական պրակտիկա: Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը հենց դրա համար բարձր էր գնահատում Չերնիշևսկուն, ինչպես նաև Բելինսկուն ու Գերցենին:

Չերնիշևսկին քննադատել է մանրբուրժուական գաղափարախոս Պրուդոնին, երբ վերջինս փորձում էր սոցիալիզմի համար մղված պայքարում մեխանիկորեն օգտագործել անցյալի որևէ պատրաստի փիլիսոփայական սիստեմ: Աշխատավորները, ապացուցում էր Չերնիշևսկին, պետք է իրենք ստեղծեն իրենց սեփական փիլիսոփայությունը: Նրա խոր համոզմամբ, այդպիսի փիլիսոփայություն կարող է լինել միայն մատերիալիզմը, որը հենվում է գիտական մտքի ժամանակակից նվաճումների վրա:

Չերնիշևսկին ընկալել էր Լ. Ֆոյերբախի մարդաբանական սկզբունքը և այն կիրառել հոգու և մարմնի դուալիզմի մասին կրոնական ուսմունքի դեմ մղված պայքարում: Այդ սկզբունքը նրա, ինչպես և Ֆոյերբախի ձեռքում եղել է փիլիսոփայության հիմնական հարցը մատերիալիստորեն լուծելու կարևոր միջոց: Հենվելով այդ սկզբունքի վրա, Չերնիշևսկին քննադատում էր ագնոստիցիզմը, ռելյատիվիզմը և սուբյեկտիվիզմը իմացաբանության մեջ:

Չերնիշևսկին, սակայն, ի տարբերություն Ֆոյերբախի, կրքոտ հեղափոխական էր, նա իր կոնկրետ քաղաքական, տնտեսագիտական, հրապարակախոսական և այլ աշխատությունների միջոցով ընտրել էր աբստրակտ անտրոպոլոգիզմը հաղթահարելու ճանապարհը: Իր բազմաթիվ, այդ թվում և փիլիսոփայական հետազոտություններում նրա համար իբրև չափանիշ էր ծառայում ոչ թե վերացական, կենսաբանական, այլ պատմական կոնկրետ մարդը, մարդկանց զանգվածները, դասակարգերը, որոնք աշխատում ու պայքարում են, ղեկավարվելով որոշակի նյութերով ու այլ շահերով:

Վերևում մենք արդեն խոսեցինք այն մասին, որ Չերնիշևսկին կարողանում է Ռուսաստանի ներքին և արտաքին կյանքի հասարակական իրադարձությունները դիտել ու գնահատել դասակարգային պայքարի տեսանկյունից: «Նրա երկերից,— գրել է Վ. Ի. Լենինը,— դասակարգային պայքարի ոգու շունչ է փչում» (Երկեր, հ. 20, էջ 298):

Այնուհետև, Չերնիշևսկու մատերիալիզմը մեծ չափով զուգորդվում էր դիալեկտիկայի հետ: Պատահական չէ, որ նա պահանջում էր Հեգելին գնահատելիս չշփոթել նրա փիլիսոփայության տարբեր կողմերը: Նա խոսում էր Հեգելի «սկզբունքների» և «հետևությունների» միջև եղած հակասության մասին: «Հեգելի ընդհանուր սկզբունքները,— գրել է նա,— չափազանց զորեղ էին ու լայն, հետևությունները՝ նեղ ու չնչին»: Առաջինները, շարունակում էր նա, «խորն են, արգասավոր, վեհ», երկրորդները՝ «մանր, և մասամբ նաև գռեհիկ»: Անկասկած, այստեղ խոսքը վերաբերում է Հեգելի փիլիսոփայության առաջադիմական կողմի՝ դիալեկտիկայի և այդ փիլիսոփայության պահպանողական կողմի՝ սիստեմի միջև եղած հակասությանը: «Մեծ մտածողի ուժերը,— նշում էր Չերնիշևսկին,— բավականացել են միայն ընդհանուր գաղափարներ արտահայտելու համար, բայց արդեն բավական չեն եղել անշեղորեն այդ սկզբունքներին հետևելու և դրանցից տրամաբանորեն բոլոր անհրաժեշտ հետևանքները զարգացնելու համար» (III, 206):

Չերնիշևսկին ցույց էր տալիս դիալեկտիկական մեթոդի գիտաճանաչողական և հեղափոխական մեծ նշանակությունը: Դրա էությունն այն է, որ իրականության առարկաներն ու երևույթները վերցվում են ոչ թե մեկուսացված, այլ նրանց փոխադարձ կապի մեջ: Այդ դեպքում կպարզվի, որ ամեն ինչ կախված է հանգամանքներից, տեղի ու ժամանակի պայմաններից: «Վերացական ճշմարտություն չկա. ճշմարտությունը կոնկրետ է» (III, 208): Ուստի նախապես չի կարելի ասել, օրինակ, «անձրևը բարիք է, թե չարիք»: Նայած երբ, ինչ ժամանակ, գյուղատնտեսական աշխատանքների որ ժամանակն է գալիս անձրևը:

Չերնիշևսկու այս և մյուս դատողություններն ու օրինակները, որոնք պարզաբանում են դիալեկտիկական մեթոդի էությունը, վաղուց մտել են մեր գրքերի և ուսումնական ձեռնարկների մեջ:

Վ. Ի. Լենինը գրել է, որ Չերնիշևսկին «միակ իրոք մեծ ռուս գրողն է, որ կարողացել է 50-ական թվականներից մինչև 88 թվականը մնալ

ամբողջական փիլիսոփայական մատերիալիզմի մակարդակի վրա» (Երկեր, հ. 14, էջ 484)։

Չերնիշևսկին եղել է այն ռուս մտածողը, որը մատերիալիզմն ու դիալեկտիկական մեթոդը գիտակցաբար օգտագործել է Ռուսաստանում գյուղացիական հեղափոխության և սոցիալիզմի անհրաժեշտությունը հիմնավորելու համար։

***

Չերնիշևսկին ազատության մեջ ապրել ու աշխատել է շատ կարճ ժամանակ. ռուսական ժուռնալիստիկայի ասպարեզում նա առաջին անգամ հանդես է եկել 1853 թվականի հունիսին՝ «Օտեչեստվեննիե զապիսկի» ժուռնալում տպագրված երկու փոքրիկ հոդվածներով։ Նրան ձերբակալել են 1862 թվականի հուլիսի 14-ին։ Եվ այդ երկու տարեթվերի միջև ընկած ժամանակամիջոցում, այսինքն՝ ուղիղ ինը տարում, նա գրել է իրենց թեմատիկայով ամենաբազմապիսի իր ստեղծագործությունները։ Զարմացնում է նաև Չերնիշևսկու գրական արգասավորությունն այդ կարճ ժամանակամիջոցում. տարեկան մի քանի տասնյակ տպագրական մամուլ։ Մտքի հարստությամբ և խորաթափանցությամբ այդ ստեղծագործություններն իրենց հեղինակին բարձրացրին մինչև ժամանակի ականավոր մտածողների բարձունքը։ Իր երկերից մի քանիսը Չերնիշևսկին գրել է Պետրոպավլովսկի ամրոցում (այդ թվում և Ի՞նչ անել վեպը), տաժանակրության մեջ և աքսորում՝ մինչև կյանքի վերջը հավատարիմ մնալով իր հեղափոխական պարտքին ու մտածելակերպին։

Սովետական ժողովուրդը միշտ խոր երախտագիտությամբ ու հարգանքով է նշում այդ մեծ մարդու հիշատակը։

# ԼԵՆԻՆՅԱՆ ԴԵԿՐԵՏԸ ԵՎ ԱՐԽԻՎԱՅԻՆ ԳՈՐԾԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Հ. Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր արխիվային գլխավոր վարչության պետի տեղակալ

60 տարի առաջ՝ 1918 թ. հունիսի 1-ին ՌՍՖՍՀ ժողկոմխորհը, Վ. Ի. Լենինի առաջարկությամբ և նրա ստորագրությամբ, ընդունեց դեկրետ «Երկրում արխիվային գործի վերակառուցման ու կենտրոնացման մասին». այն հույժ կարևոր դեր խաղաց պետական նշանակություն ունեցող այդ ասպարեզի պատշաճ կազմակերպման ու հետագա զարգացման համար։

Մեր երկրում ստեղծվեց պետական միացյալ արխիվային ֆոնդ։ Պատմության մեջ առաջին անգամ պետական բոլոր մարմինների, բոլոր գերատեսչությունների գործունեության հետ կապված, այն արտացոլող փաստաթղթերը դարձան պետական, համաժողովրդական սեփականություն։ Այդ ամենը պարտադիր պետք է հանձնվեին պետական պահպանման։ Այդուհետ ոչ մի պետական մարմին, ոչ մի հիմնարկձեռնարկություն իրավունք չուներ արխիվային որևէ փաստաթուղթ ոչնչացնելու առանց արխիվային օրգանի թույլտվության։ Հնարավոր դարձավ արմատապես փոխել արխիվային գործը, ստեղծել կատարյալ սիստեմ՝ կոչված համակենտրոնացնելու, պահպանելու և ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների, գիտության, կուլտուրայի, մասսաների դաստիարակության համար ինչպես հարկն է օգտագործելու անցյալ ու ներկա սերունդների կողմից ստեղծված ու ստեղծվող վավերագրական հարստությունները։

Այդ կարևոր գործում էական դեր է խաղում այն հանգամանքը, որ մեր պետական արխիվներն իրենց գործունեությամբ սերտորեն կապված են գերատեսչական հիմնարկությունների ու դրանց արխիվների հետ, օգնում են ավելի ճիշտ կազմակերպելու գործավարությունը, փաստաթղթերի ընտրությունը, հաշվառումն ու պահպանումը, փաստաթղթերի՝ տարբեր նպատակներով օգտագործումը, այդ ամենի համար գիտատեղեկատու ապարատի ստեղծման ու կատարելագործման հարցերը։ Առանց պետական և գերատեսչական արխիվների այդպիսի անմիջական կապի, փոխադարձ պայմանավորվածության ու որոշակի հարցադրումների հաջորդականության դժվար է պատկերացնել սովետական արխիվային գործը։

Սովետական իշխանության տարիներին մեր երկրում էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման հետ մեկտեղ ակներև է և արխիվային գործի առաջընթացը։ Դրա վկայությունն են պետական ֆոնդի հարստացումը, կոմպլեկտավորման հարցերի գիտական մշակումը, վավերագրական նյութերի վերաբերյալ գիտատեղեկատու ապարատի ստեղծումն ու կատարելագործումը, նյութերի պատշաճ պահպանությունն ու հաշվառումը, դրանք գիտական շրջանառության մեջ ներառնելը, կենտրոնական պետական արխիվների, ինչպես նաև գերատեսչությունների արխիվային նյութերի գիտատեխնիկական մշակումը, գիտահրատարակչական աշխատանքը, արխիվային հիմնարկությունների գիտահետազոտական, արխիվային հարցերի հետ կապված գիտամեթոդական աշխատանքների բարելավումը և այլն։

Մեր հանրապետության օրինակը արխիվային գործի զարգացման և դրա նկատմամբ կուսակցության ու կառավարության հոգածո վերաբերմունքի լավագույն վկայությունն է։

Հայաստանի կառավարության 1922 թ. հունվարի շրջաբերականով արխիվային նյութերը հանձնվեցին լուսժողկոմատի տնօրինությանը, և առանց նրա թույլտվության ոչ ոք իրավունք չուներ ոչնչացնելու վավերագրական նյութերը

կամ կամայականորեն վերաբերվելու դրանց հետ: Նույն թվականի հոկտեմբերին հեղափոխության թանգարանին կից ստեղծվում է արխիվային բաժին, իսկ ՀՍՍՀ Կենտգործկոմի՝ 1923 թ. սեպտեմբերի 26-ի որոշմամբ ստեղծվում է պետական արխիվ, որի կանոնադրությունը հաստատվում է հաջորդ տարվա հունվարին:

Հայաստանի պատմության մեջ արխիվային գործի վերաբերյալ առաջին օրենսդրական ակտն էր այդ, որի հիմնական սկզբունքներն ու դրույթները բխում էին լենինյան դեկրետից, և որով պետական օրինականություն էր հաստատվում այս ասպարեզում:

1924 թ. հոկտեմբերի 1-ին տեղի ունեցավ կենտրոնական պետական արխիվի պաշտոնական բացումը, որով հնարավորություն ընձեռվեց որոշակի աշխատանք ձեռնարկելու արխիվային նյութերը հայտաբերելու, կորստից փրկելու, համակենտրոնացնելու և կարգավորելու նպատակով:

Սովետական Հայաստանի արխիվային գործի ստեղծման ու կազմակերպման բնագավառում անուրանալի է պետական ու կուսակցական գործիչներ Ալեքսանդր Մյասնիկյանի, Աշոտ Հովհաննիսյանի, Ասքանազ Մռավյանի, Սահակ Տեր-Գաբրիելյանի և հատկապես Սովետական Հայաստանի առաջին հմուտ արխիվագետ պրոֆ. Խաչիկ Սամվելյանի ավանդը:

Նորաստեղծ պետական արխիվին են հանձնվում նախասովետական շրջանի պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, ինչպես նաև դրանց պաշտոնատար անձանց գործունեությանը վերաբերող արխիվային փաստաթղթերը: Ձեռնարկված միջոցառումների, ինչպես և եղբայրական հանրապետությունների օգնությամբ հայ ժողովրդի պատմությանը վերաբերող արխիվային նյութեր սկսեցին ստացվել Մոսկվայից, Լենինգրադից, Աստրախանից, Թբիլիսիից, Բաքվից և Միության այլ վայրերից:

Երկրում արխիվային գործի զարգացմանը, մասնագետ կադրերի պատրաստմանը հատկապես նպաստեցին 1922 թ. «Красный архив», իսկ 1923 թ. «Архивное дело» հանդեսների հրապարակումը, ապա և Մոսկվայում արխիվագիտական ինստիտուտի (ներկայիս պատմաարխիվային ինստիտուտ) հիմնադրումը: 1929 թ. ստեղծվում է համամիութենական կենտրոնական արխիվային վարչությունը, իսկ մեկ տարի անց՝ հանրապետական արխիվային վարչությունը:

30-ական թվականների կեսերին արդեն մեր հանրապետական կենտրոնական արխիվում կենտրոնացվել էր 307 ֆոնդ՝ մոտ 150 հազար պահպանման միավորով: 1935 թ. արխիվային վարչության ենթակայությամբ գործում էին երկու պետական կենտրոնական արխիվներ, Երևանի և Լենինականի քաղաքային և 27 շրջանային արխիվային բյուրոներ (հետագայում պետական շրջանային արխիվներ):

Արխիվային գործի հետագա զարգացմանը մեծապես նպաստեցին միութենական և հանրապետական կառավարությունների կողմից 30-ական թվականներին ընդունված մի շարք որոշումներ: Այս բնագավառի նկատմամբ կուսակցության ու կառավարության հոգածության վկայությունն է և այն փաստը, որ Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին (1943 թ. հոկտեմբեր) հիմնադրվեց հանրապետության կինո-ֆոտո-ֆոնո փաստաթղթերի կենտրոնական պետական արխիվը: Հայրենական պատերազմի տարիներին արխիվային փաստաթղթերն օգտագործվեցին ներկայացնելու համար մեր ժողովրդի հերոսական անցյալը, նրա դարավոր պայքարը օտարերկրյա զավթիչների դեմ, մերկացնելու գերմանական իմպերիալիզմի նվաճողական քաղաքականությունն Անդրկովկասում՝ 1918 թ.: Այդ նյութերի զգալի մասն օգտագործվեց զորամասերի անձնակազմի և բնակչության շրջանում կարդացվող դասախոսություններում:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում Հայաստանի արխիվագետների հիմնական խնդիրն արխիվների հարստացումն էր, համակենտրոնացված փաստաթղթերի գիտատեխնիկական մշակումը, հաշվառումը, պահպանումն ու օգտագործումը: Այդ ժամանակ պետական կենտրոնական արխիվների ինտենսիվ հարստացմանը խանգարում էր համապատասխան արխիվադարանների պակասը: Պետական կենտրոնական արխիվները հիմնականում ընդունում էին միայն լիկվիդացված ձեռնարկությունների փաստաթղթերը: Այսպես շարունակել չէր կարելի և, կառավարության որոշմամբ, շուտով կառուցվում է կենտրոնական պետական արխիվի և վարչության շենքը: Այդ հնարավորություն է ընձեռում պետական պահպանման ոլորտն առնելու Գերագույն սովետի, պետպլանի, նախկին ժողտնտխորհի, բազմաթիվ արտադրական ձեռնարկությունների, գիտական և ուսումնական հաստատությունների և այլ գերատեսչությունների վավերագրական նյութերը:

Արխիվային գործի պրակտիկ հարցերի մշակմանը, արխիվագետների որակավորման բարձրացմանը, փաստաթղթերը գիտական շրջանառության մեջ դնելուն զգալիորեն նպաստեցին արխիվային վարչության օրգան «Գիտաինֆորմացիոն բյուլետենը» (1956 թ.): Էական նշանակություն ունեցավ հատկապես միութենական կառավարության՝ 1956 թ. փետրվարի 7-ի «Մինիստրությունների ու գերատեսչությունների արխիվային նյութերի լավագույն օգտագործման և դրանց պահպանման ռեժիմը կարգավորելու մասին» որոշումը: Դրան համապատասխան հնարավորություններ ընձեռվեցին արխիվը սովետական ժամանակաշրջանի վավերագրական նյութերով ինչպես հարկն է կոմպլեկտավորելու, դրանց անկորուստ պահպանման, գիտական շրջանառության մեջ դնելու, գերատեսչություններում արխիվների ու գործավարության աշխատանքները պատշաճ ձևով կազմակերպելու համար:

Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիստական շինարարության կենտրոնական պետական արխիվն այժմ վերածվել է գիտահետազոտական կենտրոնի, ուր համակենտրոնացված են սովետական կարգերի հաստատումից հետո հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր կարևոր բնագավառների պատմությունն արտացոլող աղբյուրագիտական նյութերը:

Արխիվային գործը, սակայն, լայնորեն զարգացավ 60-ական թվականներից, երբ արխիվային մարմինների տնօրինությունը հանձնվեց Մինիստրների խորհրդին: Ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառների պատմությունն արտացոլող արխիվային հարուստ վավերագրերը դրվեցին գիտական լայն շրջանառության մեջ, նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հասարակական գիտությունների հետագա զարգացման համար:

Մեր հանրապետության պայմաններում գիտական այդպիսի գործունեության ծավալումը կապված էր առաջին հերթին պետական արխիվների հարստացման հետ: Մինչդեռ մեր շատ ֆոնդեր աղքատիկ էին: Հանրապետական տասնյակ հիմնարկ-ձեռնարկություններ, նույնիսկ առանձին մինիստրություններ անմշակ վիճակում էին թողել արխիվային նյութերը, չէին հանձնել պետական պահպանության: Առանց այդ նյութերի կարգավորման և կենտրոնական պետական արխիվին հանձնելու, պատմության հարցերի ուսումնասիրության լաբորատորիան թերի էր և խոսք չէր կարող լինել ֆոնդերի ամբողջականության մասին:

Արխիվային վարչության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ տասնյակ-հարյուրավոր գերատեսչություններ գիտատեխնիկական մշակման ենթարկեցին իրենց փաստաթղթերը և հանձնեցին պետական պահպանության: Դա նպաստեց արխիվների ինտենսիվ հարստացմանը, և ֆոնդերը վերջին տասնամյակում ավելի քան կրկնապատկվեցին: Հարկ է նշել, որ այդ արդյունք չէ սոսկ հանրապետության գերատեսչությունների վավերագրական նյութերի: Հայ ժողովրդին վերաբերող բազմաթիվ նյութեր կան եղբայրական հանրապետությունների արխիվներում. միայն 60-ական թվականներից մեր երկրի 22 արխիվներից ու գրադարաններից ստացվել են ավելի քան 600.000 միկրոկադրեր:

Արխիվների հարստացման գործում հիշարժան է նաև սփյուռքահայ գաղթօջախների, գիտության ու կուլտուրայի առանձին գործիչների վերաբերմունքը: Նրանց ջանքերով մեր արխիվները համալրվել են բավականին քանակությամբ գիտապատմական արժեքավոր փաստաթղթերով: Այդ նյութերի միջոցով զգալիորեն հարստացել են հայ ժողովրդի պատմության, ինչպես և, որոշ չափով՝ հայ պարբերական մամուլի պետական կենտրոնական արխիվները:

Արխիվների կոմպլեկտավորումը սոսկ տեխնիկական կամ սովորական գործ չէ, մանավանդ մեր օրերում, երբ բազմահազար հիմնարկ-ձեռնարկությունների, գիտական, կուլտուրական, ուսումնական հաստատությունների, պետական ու քաղաքական մարմինների գործունեությամբ օրեցօր ստեղծվում են բազմաթիվ փաստաթղթեր:

Այս պայմաններում առավել կարևոր են կոմպլեկտավորման հարցերը— ամենաաշխատատարը, դժվարինը արխիվային գործում, որը պահանջում է զգալի ժամանակ: Արխիվագետների միջազգային VIII կոնգրեսին ներկայացված տվյալների համաձայն, 1975 թ. հունվարի 1-ի դրությամբ, Սովետական Միության տարբեր մինիստրություններում, հիմնարկություններում, ձեռնարկություններում կար պետական պահպանության ենթակա 35 մլն վավերագիր: Այդ նույն գերատեսչություններում ամեն տարի միայն ժամանակավոր պահպանության ենթակա փաստաթղթերի թիվն ավելանում է 4 միլիոնով:

Բոլոր կարևոր փաստաթղթերի պետական պահպանությունն ապահովելու համար անհրաժեշտ է դրանց գիտատեխնիկական մշակման խորհմացություն, փաստաթղթերի գիտական արժեքավորում: Դրան զգալիորեն կնպաստի անցումը գործավարական միասնական պետական սիստեմի: Հանրապետության հիմնարկ-ձեռնարկությունները ձեռնամուխ են եղել այդ սիստեմի գործադրմանը:

Կենտրոնական արխիվներում վավերագրական նյութերի պատշաճ պահպանությունն ապահովելու համար կարևոր նշանակություն ունի համապատասխան արխիվային շենքերի կառուցումը: Մեզ մոտ կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին կինո-ֆոտո-ֆոնո (1972

թ.) և Հոկտեմբերյան հեղափոխության ու սոցիալիստական շինարարության կենտրոնական պետական արխիվների շենքերը (1977 թ.), ընդարձակվեցին եղած արխիվադարանները: Նյութերի պահպանությանը նպաստում է նաև այն հանգամանքը, որ մեր արխիվներն ապահովված են միկրոլուսանկարահանման, տեքստերի վերականգնման, երևակման, ախտահանման և ժամանակակից այլ սարքավորումներով ու ապարատներով, հակահրդեհային միջոցներով. գործում է խտացված օդի տեղամասը:

Արխիվային նյութերի պահպանությունն զգալիորեն բարելավված է նաև մինիստրություններում ու մյուս գերատեսչություններում, շրջանային ու քաղաքային արխիվներում, որտեղ արխիվներին հատկացվել են համապատասխան արխիվադարաններ, աշխատասենյակներ: Ստեղծված են գիտատեղեկատու ապարատի բազմապիսի միջոցներ (արխիվների ուղեցույցներ, ֆոնդացուցակներ, թեմատիկ `քարտեր, ֆոնդային տեսություններ, արխիվային տեղեկանքներ և այլն): Այդ ամենի նպատակն է ուսումնասիրողներին, զանազան հիմնարկձեռնարկություններին, գիտական և այլ հաստատություններին կարճ ժամկետներում ապահովել անհրաժեշտ արխիվային տեղեկություններով:

Այժմ ավելի հաճախ են հրապարակվում և ընթերցողների, ուսումնասիրողների սեփականությունն են դառնում վավերագրական նյութերի տասնյակ ժողովածուներ ու հավաքածուներ, որոնք մեծ չափով օգնում են հասարակական գիտություններով զբաղվող մասնագետներին:

Այսպես, վավերագրական կարևոր նյութեր են հրապարակվել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության, սովետական զինված ուժերի, ՍՍՀՄ-ի, Սովետական Հայաստանի կազմավորման, Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի հոբելյանների և պատմական այլ իրադարձությունների առթիվ: Տարեդիցների կապակցությամբ կազմակերպվել են փաստաթղթերի մի շարք ցուցահանդեսներ:

Փորձը ցույց է տվել, որ գաղափարական բարձր մակարդակով փաստաթղթերի ժողովածուներ հրատարակելու համար պահանջվում է գիտական մի շարք հաստատությունների, մասնավորապես ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի. ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների ինստիտուտների, արխիվային հաստատությունների համատեղ գործունեություն, դրանց աշխատանքների կոորդինացում, փորձված մասնագետների համատեղ աշխատանք:

ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման մասին կուսակցության ու կառավարության որոշումների համապատասխան, նոր պրոբլեմներ ու պահանջներ են ներկայացվում արխիվային հիմնարկություններին: Դրանք մշակված են ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր արխիվային գլխավոր վարչության հեռանկարային պլանում:

Մեր հանրապետությունում ևս մինիստրություններում, արտադրամիավորումներում, տրեստներում և այլ մեծ գերատեսչություններում արդեն անհրաժեշտ է ստեղծել կենտրոնական կամ միացյալ արխիվներ տվյալ ողջ սիստեմների համար: Այդ հնարավորություն կընձեռի գիտականորեն, ինչպես հարկն է կոմպլեկտավորելու վավերագրական նյութերը. լուծելու փաստաթղթերի գիտական արժեքավորման, հաշվառման, պահպանման գիտատեղեկատու ապարատի ստեղծման և նյութերի օգտագործման հարցերը: Կենտրոնական և միացյալ արխիվների շնորհիվ ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր կարևոր բնագավառ հնարավորություն կունենա մեկ տեղում կենտրոնացնելու բոլոր ճյուղերին վերաբերող արխիվային փաստաթղթերը:

Արխիվներին առաջադրված խնդիրների հաջող լուծումը և նոր պահանջների կատարումը պայմանավորված են առաջին հերթին կադրերի մասնագիտական որակով, նրանց ընդհանուր կրթական մակարդակով ու քաղաքական հասունությամբ:

«Արխիվները կարելի է անվանել մարդկության դարավոր հիշողություն,— նշված է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ արխիվների միջազգային VII կոնգրեսին ուղղած ողջույնի նամակում,— դրանցում կենտրոնացված են անգնահատելի նյութեր, որոնք արտացոլում են երկրների առաջընթացը, համաշխարհային քաղաքակրթության զարգացումը: Խոշոր սոցիալական տեղաշարժերի և գիտատեխնիկական հեղափոխության մեր դարաշրջանում աճում է արխիվների դերը փաստաթղթային նյութերն արտադրության, գիտության ու կուլտուրայի զարգացման շահերին ծառայեցնելու գործում»:

Պատասխանատու, կարևոր են մեր արխիվագետներին առաջադրվող խնդիրները, որոնց պատշաճ լուծման համար անհրաժեշտ են մասնագիտական հմտությունների առավել կատարելագործում, խորհմացություն:

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՐԱԿԻ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Երկրի տնտեսական զարգացման արդի փուլի հիմնական առանձնահատկությունն այն է, որ առաջին պլան է մղվում սոցիալիստական մրցության ծավալումը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի ու արտադրանքի որակի արմատական բարելավման համար: Արդյունավետության բարձրացման մարզում չափազանց կարևորվում են աշխատանքի արտադրողականության աճը, աշխատանքի նյութատարության իջեցումը, գիտության ու տեխնիկայի արագատեմպ զարգացումը, որակի բարելավումը:

ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ շեշտված է, որ, կատարելագործելով էկոնոմիկայի ղեկավարման ձևերն ու մեթոդները, պետությունն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճը, արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացումը: Ժողովրդատնտեսական այս առաջնահերթ խնդրի լուծման կարևոր խթան է աշխատավորության՝ սոցիալիստական մրցությամբ առանձնած պարտավորությունների բարեխիղճ, պարտաճանաչ կատարումը: Այդ հարցերի լուսաբանումը մամուլի հիմնական խնդիրներից է:

Արդյունավետության և որակի խնդիրներին համակողմանի անդրադառնում է Ստեփանավանի շրջանային «Փարոս» թերթը, որը պարբերաբար լուսաբանում է շրջանի տնտեսությունների հաջողությունները, առաջավորների փորձը, խարազանում թերացողներին, նշում բացահայտված թերությունների հաղթահարման ուղիները:

Դեռևս 1977 թվականի առաջին համարներում թերթի էջերում բացվեց նոր խորագիր՝ **Տասներորդ հնգամյակ, երկրորդ տարի:** Բարձրորակ արտադրանքի ապահովման համար էական դեր է խաղում ստանձնած պարտավորությունների մշակման վերահսկողությունը:

Որակի օրերն ավանդական են դարձել ինչպես շրջանի շատ ձեռնարկություններում, նույնպես և Արդկապ գործարանում. ինտերնացիոնալ այս կոլեկտիվին է նվիրված **Հոբելյանականին՝ արդյունավետություն և որակ** նպատակային էջը (62):

Հատկապես անդրադառնալով արդկապցիների նվաճումներին՝ լրագիրը փորձում է բացահայտել նրանց հաջողություններն ապահովող գործոնները. չէ՛ որ կուսակցության շրջանային կոմիտեի և քաղաքային սովետի գործկոմի ժյուրին, ի մի բերելով սոցիալիստական մրցության արդյունքները, հաղթող ճանաչեց կոլեկտիվին՝ շնորհելով նրան փոխանցիկ կարմիր դրոշը: Անցած տարի ձեռնարկության մարդիկ արդյունավետ օգտագործեցին աշխատաժամանակի ամեն մի րոպեն:

Թղթակցություններից մեկը նվիրված է տեխնոլոգիական բաժնի ինժեներ-կոնստրուկտոր Ալբերտ Քալաշյանին. երիտասարդ ռացիոնալիզատորը 26 տոկոսով կրճատել է «ՏԱՈՒ—04» սարքավորման թողարկման տեխնոլոգիական պրոցեսի ժամկետը, այդ առաջարկության ներդրմամբ մեկուկես անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը:

Ընդհանրապես «Փարոսը» մեծ տեղ է հատկացնում ձեռնարկությունների տեխնիկական զինվածությանը, ինչպես նաև նորարարությանն ու գյուտարարությանը: Անշուշտ, առավել կարևոր է իրավիճակի արտացոլումը տեղում, որին և նվիրված է **Ուշադրություն, նորույթ է** վերտառությունը: Այսպիսի հրապարակումներից է ԲՀԷՍ գործարանի տեխնիկական բաժնի պետ Ս. Պողոսյանի՝ **Նյութատարության իջեցումը**

**շահույթի ռեզերվ** հոդվածը (№ 18): Նյութատարության կրճատումը, նյութերը խնայողաբար ծախսելը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, արտադրության արդյունավետության բարձրացման, կապիտալ ներդրումները չափից ավելի չմեծացնելու ուղիներից են: Կուսակցության այդ պահանջին կոնկրետ գործերով են պատասխանում մեր՝ բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների գործարանի բանվորները ու ինժեներա-տեխնիկական անձնակազմը, գրում է հեղինակը: Այս կոնկրետ փաստերով նա ցույց է տալիս, թե ի՛նչ արդյունքներ կարող է տալ տնտեսվար, սրտացավ վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ:

Բավական է նշել, որ հնգամյակի միայն մեկ տարում նրանք տնտեսել են 40,1 տոննա սև, 2,5 տոննա գունավոր մետաղ, 1.300 կիլոգրամ արույր և այլ նյութեր, մոտ 100 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Թերթի 13-րդ համարում պրոպագանդվում է նորարարական մի այլ ներդրում՝ Հոբարձու և Ուռուտի տնտեսությունների մեխանիզատորների փորձը, որոնք նոր մեթոդով են կատարում ճակնդեղի մշակությունը: Ընդ որում, լրագիրը պասսիվ պրոպագանդիստի դերում չէ, նա կոչ է անում շրջանի գյուղատնտեսական մյուս ձեռնարկություններին՝ որդեգրել շահավետ նորույթը:

«Փարոսը» հանդես է բերել հիանալի մի նախաձեռնություն. տեղերում ստեղծելով թղթակցական պոստեր՝ այն հաճախ տպագրում է նրանց հաղորդումները ու ահազանգերը. որակին և արդյունավետությանը վերաբերող նյութերը հիմնականում հանձնարարվում են մասնագետներին, արտադրության հրամանատարներին, գործիմաց մարդկանց: Հետաքրքրական և ուսանելի շատ հոդվածներ են հրապարակվում **Մասնագետը հարց է բարձրացնում** բաժնում: Դրանցից մեկում (№ 119) գյուղվարչության պետական տեխնիկական տեսուչը քննադատում է Կողեսի, Կույբիշևոյի, Կաթնաղբյուրի և մի շարք այլ տնտեսությունների ղեկավարներին գյուղատնտեսական տեխնիկան բարձիթողի վիճակում պահելու համար: Միաժամանակ նա դրվատում է առաջավորներին. լրագիրն ունի և պատվո տախտակ, որին արժանանում են առաջավոր տնտեսությունները ու աշխատողները:

Այդուհանդերձ, «Փարոսի» համար հարցերի հարցը մնում է անասնապահությունը, քանի որ գյուղատնտեսական արտադրության հատկապես այդ ճյուղն է բնորոշում շրջանի պրոֆիլը: Լրագրում զգալի տեղ է հատկացվում հատկապես կաթի որակին: **Կաթի բարձր որակի համար** խմբագրականին կից լրագիրը տպագրել է Ստեփանավանի շրջանի կոլեկտիվ և պետական տնտեսությունների՝ մթերակայան հանձնված կաթի որակի և յուղայնության ամփոփագիրը (№ 129): Անասնապահության բնագավառի աշխատողների առջև դրված էական խնդիրներից է արտադրվող մթերքների որակի բարելավումը, որը տնտեսություններին բերում է լրացուցիչ եկամուտներ, նպաստում գյուղատնտեսության այդ կարևորագույն ճյուղի արդյունավետության բարձրացմանը,— ընդգծում է թերթը: Իսկ ինչպե՞ս են գործերը շրջանում: Միայն առաջին տեսակի կաթ հանձնելու հաշվին կոլեկտիվ ու պետական տնտեսությունները ինն ամսում ստացել են 75.541 ռուբլու հավելավճար. ինչպես ասում են, ծանոթագրումները ավելորդ են:

Լուսաբանելով առաջավոր տնտեսությունների փորձը՝ թերթը ջանում է ցույց տալ, որ տարբեր տեղամասերում աշխատանքի ճիշտ ու համագործակցված կազմակերպումից է ծնվում ընդհանուր առաջընթացը: Արդյունավետության ու որակի հարցերը դիտվում են որպես կուսակցական աշխատանքի անբաժան օղակ: Ագարակի սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Ա. Դոխոլյանի **Ապահովելով արտադրության հետագա վերելքը** հոդվածում (№ 3) նշվում է, թե ինչպես բանվորների վարձատրությունն ու նյութական խրախուսանքն անմիջականորեն պայմանավորված են ստացվող արդյունքով, արտադրանքի որակով ու քանակով. տնտեսության որոշ բրիգադաներ, կարևորը համարելով միայն կաթի քանակական ցուցանիշը, աչքաթող էին արել որակը, որի պատճառով սովխոզը հազարավոր ռուբլիների վնաս է կրել: Քննարկելով անտնտեսվարության այդ փաստը՝ կուսբյուրոն մեղավորներին պատասխանատվության է ենթարկել, տվել կուսակցական տույժ, ձեռնարկել համապատասխան միջոցներ: Ամիսներ անց բյուրոն անդրադարձել է ընդունված որոշման կատարմանը և արձանագրել գոհացուցիչ արդյունքներ:

Որակի և արդյունավետության հարցերն արծարծելիս «Փարոս»-ն ընտրում է մատուցման ինքնատիպ ձևեր: Լրագրի № 10-ում, տպագրելով երկու հակադիր ինֆորմացիաներ, թերթն ընթերցողներին խորհրդածելու առիթ է տալիս: Առաջինը պատմում է երկրի լավագույն ֆերմայի՝ Տուլայի մարզի Նովոմոսկովսկի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության մասին, ուր հաջողությամբ են լուծվում կաթի ստացման տեխնոլոգիայի հետ կապված խնդիրները. այնտեղ օգտագործում են նվազագույն թվով մեքենաներ, հմուտ կադրերի շնորհիվ ապահովելով դրանց առավելագույն հուսալիությունը. այստեղ կուտակված է կերի կայուն բազա: Կոլտնտեսությունում ստացվում է Միության ամենաէժան կաթը և պետությանը վաճառվում է միայն առաջին տեսակի կաթ: Իսկ մե՞զ մոտ, կարծես հարցնում է թերթը, և ինքն էլ պատասխանում՝ **Քանակն ավելացել է, իսկ յուղայնությո՞ւնը** ռեպլիկով: Ներկայացնելով Պուշկինոյի կոլտնտեսության անասնապահների հաջողությունները՝ թղթակիցն իրավամբ յուղի տոկոսի նվազման պատճառ է համարում աշխատանքի անբավարար կազմակերպումը, պահանջկոտության ու վերահսկողության թուլացումը: Քննադատական նյութեր են հրապարակվում պարբերաբար տպագրվող «Երգիծական թերթիկում», որտեղ որակի հարցերն իրենց կայուն տեղն ունեն: Վարպետ գրելաձևով և սրամտությամբ ուշագրավ է **Անասունների բողոքը** ֆելիետոնը (№ 10):

Նույն համարում հատուկ էջ է տրամադրված արդյունավետությանն ու որակին: Հանդես են եկել շրջանի գլխավոր գյուղատնտեսը, գլխավոր անասնաբույժը, տրակտորային բրիգադայի բրիգադավարը և ուրիշներ: Բանիմաց մարդու սրտացավությամբ գրված այդ հոդվածները համոզիչ են, ներգործուն: Թերևս հենց այդ նպատակին են ծառայում թերթի լուսանկար-մակագրությունները երկրի տարբեր վայրերում անասնապահության ինտենսիվացման, արդյունաբերական եղանակով կառավարման, արդյունաբերական տիպի համալիրների մասին (№№ 3, 10 և այլն):

Արդյունավետության ու որակի հարցերը «Փարոսը» սերտորեն շաղկապում է սոցիալիստական մրցությանը: Թերթը տպագրել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին, այն դարձնելով գործունեության մարտական ծրագիր: Լրագրի էջերում մշտապես տեղ են գրավում **Ամփոփում ենք մրցության արդյունքները, Ստուգում ենք ստանձնած պարտավորությունների կատարումը** և այլ խորագրեր:

**Առաջընթացի հուսալի երաշխիքները** հոդվածում (№ 5) Ստեփանավանի սովխոզ-տեխնիկումի բանկոմի նախագահ Ժ. Նասիբյանը պրոպագանդում է սոցիալիստական մրցության կազմակերպման իրենց փորձը: Տնտեսության 14 բրիգադաներից վեցը պայքարում են կոմունիստական աշխատանքի բարձր կոչման արժանանալու համար: Սոցմրցությունը դիտվում է որպես կոլեկտիվի ակտիվության բարձրացման, դրա անդամների նախաձեռնության զարգացման, ուժերի մոբիլիզացման հզոր գործոն: Ուշադրության կենտրոնում է պահվում այն հանգամանքը, որ ստանձնած պարտավորությունները լինեն ռեալ, ապահովվի մրցության հրապարակայնությունը, ժամանակին ամփոփվեն արդյունքները, հաղթողներն արժանանան բարոյական ու նյութական խրախուսանքի: Մրցության առաջավորներին պարգևատրելու համար առանձնացվել է 8.500 ռուբլի: Բոլոր անասնապահական բրիգադաներում փակցվել են ցուցատախտակներ, որոնք ներկայացնում են կթվորների ու անասնապահների պարտավորությունները: Հատուկ վահանակների վրա ամեն օր նշվում է, թե ով ինչպես է կատարում պլանները: Կազմակերպվում է հաղթողների մեծարում, ուսումնասիրվում է նրանց փորձը, մրցանակները հանձնվում են հանդիսավոր պայմաններում: Պրոպագանդելով առանձին առաջավոր տնտեսությունների օրինակը՝ «Փարոսը» չի մոռանում մրցության մի կարևոր կողմ ևս— դրա դաստիարակչական ֆունկցիան:

Ստեփանավանի շրջանը սոցիալիստական մրցության մեջ է Հայկական ՍՍՀ Կալինինոյի և Վրացական ՍՍՀ Ախալքալակի շրջանների հետ: Լրագիրը պարբերաբար անդրադառնում է մրցակից բարեկամների նվաճումներին, տրամադրելով նպատակային էջեր ու բաժիններ: Ներգրավելով թղթակցական լայն ակտիվ՝ «Փարոսը» գրեթե ամեն համարում նյութեր է տպագրում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ծավալված սոցիալիստական մրցության մասին: Այդ հրապարակումներից առավել ուշագրավ են **Ընթանալով մրցության ավանգարդում** (№ 23), **Կթվոր 2500-ականների համաշրջանային առաջին հավաքը** (№ 36), **Լայն թափ՝ ծավալված մրցությանը** (№ 41), **Արհմիությունները և մրցության կազմակերպումը** (№ 107), **Մրցությունը նպաստում է առաջընթացին** (№ 89) և այլ հոդվածներ: Թերթը լիովին արդարացնում է կոլեկտիվ կազմակերպչի իր այս խնդիրը:

Հիրավի, բազմազան ու բազմաբնույթ են արդյունավետությանն ու որակին, սոցիալիստական մրցությանը նվիրված «Փարոսի» հրապարակումները: Լավագույն հոդվածներից հիշենք նաև **Պայքարում են 3250 կիլոգրամի համար** (№ 31), **Նշելով նոր բնագծեր** (№ 8), **Կատարելագործելով աշխատանքի կազմակերպումը** (№ 25), **Արդյունավետության բարձրաց-**

**ման կարևոր ռեզերվ** (№ 27), **Անթերի կենսագործենք հոբելյանական պարտավորությունները** (№ 56) և այլն:

Ցավոք, լրագրի էջերում նկատելի են լեզվական սխալներ. էլ չենք խոսում վերնագրերի մասին, որոնք արտահայտիչ չլինելով, միաժամանակ բազմիցս կրկնվում են: Համարից համար են անցնում մոտավորապես վերնագրային այսպիսի տրաֆարետներ՝ **Առաջ անցնելով գրաֆիկից** (№№ 17, 25, 31, 32 և այլն), **Նոր բնագծեր** (№№ 5, 8, 9, 10, 16, 18, 21, 25 և այլն), **Հայրենանվեր, արդյունավետ, հարվածային աշխատանքով** (№№ 2, 3, 5, 9, 14, 24 և այլն), **Գործի դնելով** (№№ 8, 9, 10 և այլն):

# ԳԱՂԱՓԱՐԱԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼՈՒՍԱԲԱՆՈՒՄԸ «ՎԱՐԴԵՆԻՍ» ԼՐԱԳՐՈՒՄ

Տնտեսության, գիտության, կուլտուրայի, հասարակական ողջ **կյանքի** վրա ներգործուն ազդեցություն ունի **մամուլը**: Այն ո՛չ միայն լուսաբանում և բացահայտում է առկա հաջողություններն ու թերացումները, այլև խթանում աշխատավորության հետագա գործունեությունը: Այս ասպարեզում կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական այլ կազմակերպությունների հետ մեկտեղ մեծ աշխատանք են ծավալում նաև հանրապետության շրջանային թերթերը:

Հանրապետության գյուղատնտեսական շրջաններից է Վարդենիսը, որի տնտեսական ու կուլտուրական կյանքն է արտացոլում իր էջերում շրջանային համանուն լրագիրը: **Կուսակցական կյանք, Զրույց կոմունիստի մասին, Նորը մեր գյուղերում, Զրույց մանկավարժական թեմայով** և այլ խորագրերով հոդվածներն ու ակնարկները հնարավորություն են ընձեռում պատկերացնելու շրջանի գաղափարական ճակատի աշխատողների մասնակցությունը մասսաների կոմունիստական դաստիարակությանը, նրանց աշխարհայացքում ու վարքագծում բարոյաքաղաքական նոր հատկանիշների արմատավորմանն ու զարգացմանը:

Սովետական հասարակության հարանուն զարգացումն ապահովելու համար էական նշանակություն ունի մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքը: Այս առումով կարևոր է մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի խոր ուսումնասիրությունը: **Պարապմունքները քաղուսուցման ցանցում** մշտական խորագրի տակ զետեղվում են շրջանում քաղուսուցման ընթացքը լուսաբանող նյութեր (№ 124, 1976 թ., №№ 11, 44, 64, 117, 1977 թ.):

Լրագրի 1977 թ. № 130-ում **Առաջին պարապմունքները քաղուսուցման ցանցում** վերտառությամբ մի ամբողջ էջ է նվիրվել նոր ուսումնական տարվա սեմինարներին, որոնք հաջողությամբ կազմակերպվել են շրջանի տարբեր կոլտնտեսություններում ու պետտնտեսություններում: Զետեղվել է նաև ինֆորմացիոն հաղորդագրություն Վարդենիսի շրջանի պրոպագանդիստական հավաքի մասին, որին ակտիվ մասնակցել են սկզբնական կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ, կուսակցական, տնտեսագիտական, կոմերիտական ուսուցման և կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստներ:

Սոցիալիստական մրցության մասնակիցների ակտիվությունը խթանելու նպատակով շրջանի կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում արտադրության արդյունավետության բարձրացմանը, առաջավոր փորձի տարածմանը, աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդմանը, ռեզերվների և հնարավորությունների օգտագործմանը, ինչպես նաև ֆերմաները բանիմաց, հմուտ կադրերով կոմպլեկտավորելուն, մեքենայական աշխատանքների ծավալի ընդլայնմանը: **Հնգամյակին՝ հարվածային աշխատանք, Լայն թափ՝ սոցմրցությանը** մշտական խորագրեր ունեցող նպատակային էջերը նվիրված են շրջանի առաջավոր տնտեսություններին: Գրեթե յուրաքանչյուր համարում հրապարակվում են առաջավոր ծխախոտագործների, մեխանիզատորների, անասնապահների և այլ առաջավորների զեկույցները՝ ստանձնած պարտավորությունների կատարման մասին:

Լրագիրը պարբերաբար տպագրում է նաև թղթակցություններ՝ ծանոթացնելով շրջանի աշխատավորությանը սոցմրցության հաղթողների նվաճումներին, պարտավորությունների կատարման ընթացքին:



Գաղափարադաստիարակչական աշխատանքի լավագույն ձևերից է առաջավորների մեծարումը: Այդ նպատակով լրագիրը բազմիցս անդրադարձել է դիմանկար-ակնարկային ժանրին. դրվատվում է հովվի, ծխախոտագործուհու, բուժքրոջ, անասնապահի, մանկավարժի, մեխանիզատորի և շրջանի այլ առաջավորների աշխատանքը:

Վարդենիսն այսօր գյուղատնտեսության մի շարք ճյուղերում նկատելի հաջողությունների է հասել. դրանում իրենց ավանդն ունեն ծխախոտագործուհի Վ. Մարտիրոսյանը, հովիվ Օ. Հասանովը, մեխանիզատոր Վ. Ավետիսյանը և արտադրության տասնյակ առաջավորներ:

Այստեղ կողք-կողքի ապրում, աշխատում են տարբեր ազգերի ներկայացուցիչներ: Գործում են հայկական, ադրբեջանական, ռուսական միջնակարգ և ութնամյա դպրոցներ. շրջանային լրագիրը լույս է ընծայվում հայերեն և ադրբեջաներեն: Ժողովուրդների բարեկամությանն են նվիրված «Վարդենիս»-ի համարների նպատակային շատ էջեր: **Դեպի մեծ Հոկտեմբերի 60-ամյակը** խորագրով լրագիրը հոբելյանական տարում պարբերաբար հրապարակել է Միության 15 հանրապետությունների, շրջանի տընտեսական ու կուլտուրական հաջողությունները ներկայացնող ակնարկներ, լուսանկարներ... Հետաքրքրությամբ են կարդացվում Մոսկվայի, Լենինգրադի պատմությանը նվիրված նյութերը:

Բարեկամական յուրաքանչյուր հանդիպում, յուրաքանչյուր միջոցառում ավելի է ամրապնդում հայերի ու ադրբեջանցիների բարեկամությունը: Լրագրում հաճախ են նյութեր տպագրվում նման հանդիպումների մասին:

Գիտատեխնիկական անշախադեպ առաջընթացի ներկա փուլում մարդուն անհրաժեշտ են տեխնիկական խոր գիտելիքներ, գիտական ու քաղաքական հմուտ ինֆորմացիա: Ուստի, հարկ է բարձրացնել մանկավարժական կադրերի մակարդակը, կատարելագործել միջնակարգմասնագիտական ուսուցման մեթոդները:

«Վարդենիս»-ի էջերում պարբերաբար հանդիպում ենք **Դպրոցական կյանք** խորագրի ներքո զետեղված նյութերի (**Վաղվա լավ քաղաքացու համար**, № 153, 1976 թ., **Միջնակարգ կրթությունը բոլորին**, № 38, 1977 թ., **Հասնել ուսման բարձր որակի**, № 39, **Կաբինետային ուսուցման արմատավորման համար**, № 30 և այլն): Հոդվածագիրները դպրոցների դիրեկտորներ են, ուսմասվարներ, ժողկրթության սիստեմի աշխատողներ, մանկավարժներ, լրագրողներ: 1977 թ. № 4-ում զետեղված **Ավարտվեց առաջին կիսամյակը** հոդվածից (հեղինակ՝ շրժողկրթբաժնի դպրոցական տեսուչ Ն. Վարդանյան) տեղեկանում ենք, որ շրջանի 43 միջնակարգ ութնամյա դպրոցներում սովորում են 16.525 աշակերտներ, ուսման առաջադիմությունը 94,2 տոկոս է:

Հանրապետության շատ դպրոցներում արդեն գործում է կաբինետային ուսուցման սիստեմը, մինչդեռ Վարդենիսի շրջանում այդ խնդիրը դեռևս ինչպես հարկն է լուծված չէ: Բարվոք չէ դպրոցական կառույցների վիճակը: Այդ առիթով լրագրում բազմիցս հրապարակվել են քննադատական հոդվածներ, սակայն նոր շենքերի շահագործումը շարունակում է դանդաղել. ցածր է շինարարական կուլտուրան:

Լրագրի շատ նյութեր ցույց են տալիս, որ երիտասարդության ֆիզիկական դաստիարակությունը ևս շրջանի կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում է: Բայց գեղագիտական դաստիարակությանը նվիրված ոչ մի միջոցառում գրեթե չի արտացոլվել լրագրի էջերում: Քիչ են գեղարվեստական բարձր մակարդակով գրված հետաքրքրական, օրվա հրատապ հարցերին նվիրված ակնարկները:

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծման գործում մեծ են երիտասարդության պրոֆտեխնիկական կրթության դերը, ժողովրդական տնտեսության համար որակյալ կադրերի պատրաստման անհրաժեշտությունը:

Վարդենիսի շրջանում է № 24 պրոֆտեխնիկական ուսումնարանը, պատրաստում է տրակտորիստ-մեքենավարներ, գորգագործներ, հորատողներ և այլ մասնագիտությամբ բանվորական կադրեր: Լրագրի 84-րդ համարում զետեղված է ուսումնարանի դիրեկտոր Ս. Մկրտչյանի հոդվածը: Նշելով մասնագիտության ճիշտ ընտրության հասարակական մեծ նշանակությունը, նա, միաժամանակ, անդրադառնում է այն դժվարություններին, որոնք հանդիպում են իրենց աշխատանքում: Չնայած ուսումնարանն ունի նյութատեխնիկական հարուստ բազա, գիտատեխնիկական անհրաժեշտ միջոցներով ապահովված արհեստանոցներ ու լաբորատորիաներ, հարմարավետ հանրակացարան ու ճաշարան, բայց այն չի ապահովվում անհրաժեշտ կոնտինգենտով: Պատճառը դպրոցականների մասնագիտական կողմնորոշման նպատակով տարվող անբավարար աշխատանքն է:

Կուսակցությունը բազմիցս անդրադարձել է երիտասարդության պրոֆտեխնիկական կրթության, աշխատանքային դաստիարակության հարցերին: Լրագրի տարբեր համարներում հաճախակի արծարծվում են այդ խնդիրները: Այսպես՝ **Մարդն աշխատանքով է գեղեցիկ**

(№ 153, 1976 թ.), **Սովետական մարդու բարոյական կերպարը** (№ 154, 1976 թ.), **Աշխատավոր մարդուն շրջապատել հոգատարությամբ** (№ 150, 1976 թ.), **Սովորեցնում ենք սիրել աշխատանքը** (№ 31, 1977 թ.), **Պատրաստվում են մասնագետ կադրեր** (№ 39, 1977 թ.), **Լուրջ ուշադրություն դպրոցականի աշխարհայացքի ձևավորմանը** (№ 64, 1977 թ.) և նման շատ հոդվածներ նպաստում են համակելու երիտասարդությանը և մասսաներին աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով:

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմը քննարկեց Օրսկի քաղկոմի կողմից գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման իրականացման մասին հարցը և ընդունեց համապատասխան որոշում: ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում ակտիվացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, կենտրոնացնել նրանց ուշադրությունը գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության հարցերի վրա, կոորդինացնել սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների ջանքերն այս ասպարեզում: Անհրաժեշտ է, որ լրագիրը գաղափարական-դաստիարակչական հարցերը լուսաբանելիս այսուհետ այս տեսանկյունով մոտենա տպագրվող նյութերին, ավելի հաճախ հրապարակի աշխատավորների աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվությանը նպաստող, հատկապես բարոյաքաղաքական դաստիարակության կենսական պրոբլեմներն արծարծող հոդվածներ, ապահովի դրանց բարձր մակարդակը:

Ցանկալի կլիներ, որ տպագրված քննադատական հոդվածները, դրանց արձագանքները կրեին ավելի գործնական բնույթ. թերթն այս հարցերում պետք է ավելի հետևողական ու պահանջկոտ լինի:

Ցավով պետք է նշել, որ լրագրում հանդիպում են լեզվական ու ոճական աղավաղումներ: Որակի և արդյունավետության այս հնգամյակըն իր պահանջներն է առաջադրում և մեր մամուլին, պահանջներ, որոնք վերաբերում են ո՛չ միայն հրապարակվող նյութերի բովանդակությանը, այլև դրանց մատուցման ատաղձի՝ լեզվական կուլտուրայի կատարելացմանը: Մամուլի աշխատողները բնավ չպետք է մոռանան, որ անմշակ, լեզվական ցածր կուլտուրայով գրված ամենահետաքրքրական նյութն իսկ չի կարող ծառայել իր նպատակին:

---

# Մեզ պատասխանում են

**ՀԿԿ Արարատի շրջկոմի քարտուղար Հ. Մինասյանը մեր ամսագրի 1977 թ. դեկտեմբերի համարում (№ 12) հրապարակված իր «Կուսկազմակերպությունը և խաղողագործության զարգացումը» հոդվածում նշել էր, որ իրենց շրջանում կան չլուծված հարցեր ու լուրջ դժվարություններ. ոռոգման ջուրը չի բավարարում շրջանի տնտեսությունների պահանջները, անբավարար է ոռոգման ներքին ցանցի վիճակը, չեն ստացվում բավարար քանակի ու որակի հենասյուներ՝ խաղողի այգիների համար, տնկարանային տնտեսություններից ստացվում են խաղը սորտեր:**

**Թվարկված թերությունները վերացնելու և խաղողագործության արդյունավետությունը բարձրացնելու համար նա Հայաստանի գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների և «Հայգյուղտնտեխնիկա» հանրապետական միավորման ուշադրությունը հրավիրել էր այդ հրատապ հարցերի լուծման ու կարգավորման վրա:**

**Ընդունելով իրենց հասցեին արված քննադատական դիտողությունները՝ հիշյալ մարմինները մեզ պատասխանում են. (պատասխանները տրվում են համառոտացված):**

**...Համաձայն ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1976 թ. դեկտեմբերի 28-ի № 622 և գյուղատնտեսության մինիստրության կոլեգիայի 1977 թ. օգոստոսի 29-ի որոշումների՝ Արարատի պետտնկարանը մասնագիտացել է խաղողի զտասորտ տնկանյութի արտադրությամբ: Կոլեգիայի որոշմամբ Արարատի պետտնկարանը տարեկան պետք է արտադրի 1,5 միլիոն բարձրարժեք մաքրասորտ տնկանյութ: Այդ նպատակով հանձնարարվել է խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտին՝ մաքրասորտ մայրուտների տարածությունը հասցնել 100 հեկտարի (այսօրվա դրությամբ արդեն հիմնվել է 40 հեկտար մաքրասորտ մայրուտ):**

**Հ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ**

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր

**...Արարատի շրջանում ներտնտեսային ոռոգման ցանցի ընդհանուր երկարությունը կազմում է 414,5** կմ, **որից երեսպատված է 21,7** կմ **կամ 5,2 տոկոսը: Այս տարի շրջանում կառուցվում և ավարտին է մոտենում Արմաշի ջրհան կայանի շինարարությունը՝ իր ոռոգման երեսպատված ցանցով՝ 944 հեկտարի համար: Շինարարական աշխատանքները շարունակվում են Արազափի ջրհան կայանի ոռոգման համակարգում, որով ոռոգելի կդառնա 1700 հեկտար հողատարածություն: Այս տարի շահագործման կհանձնվի Արազդայանի ձախ ճյուղի ջրհան կայանը՝ երեսպատված հեռացնող ջրանցքով:**

**Չնայած, որ ներկայումս ներտնտեսային նշանակության ոռոգման ցանցի նորոգման ու վերակառուցման աշխատանքները կատարվում են ոռոգման սիստեմների վարչության և մինիստրության շարժական մեքենայացված շարասյուների միջոցով, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը նախատեսում է կազմակերպել նոր շարժական մեքենայացված շարասյուներ՝ պայմանագրային կարգով այդպիսի աշխատանքներ կատարելու համար: Սակայն դրանց կազմակերպումը ձգձգվում է այն պատճառով, որ Հայաստանի պետպլանը այդ աշխատանքները կատարելու համար անհրաժեշտ նյութատեխնիկական մատակարարման հարցը չի լուծում և այդ նպատակների համար ֆոնդային նյութեր (ցեմենտ, մետաղ, խողովակ և այլն) չի հատկացնում:**

Նյութատեխնիկական մատակարարման հարցը դրված է քննարկման հանրապետության ղեկավար մարմիններում, որով և պայմանավորված է նոր կազմակերպություն ստեղծելու խնդրի լուծումը:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1978 թ. մարտի 3-ի № 108 որոշմամբ նախատեսվում է Արարատի շրջանում 1981—1985 թվականներին կատարել գործող ոռոգման ցանցի վերակառուցման և ջրապահովության բարձրացման աշխատանքներ 5000 հեկտարի վրա:

**Ռ. ՇԱՀՈՅԱՆ**

Մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր

...«Ծիանցյութ» փորձնական գործարանում, 1978 թ. նոր արտադրամասի գործարկման կապակցությամբ, հենասյուները թողարկվելու են պետական նոր ստանդարտին համապատասխան, որով և կտրուկ կբարելավվի արտադրանքի որակը:

Բացի այդ, գործարանին առաջադրանք է տրված ընթացիկ տարում իրականացնելու կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ՝ երկաթբետոնյա շպալերային հենասյուները որակի պետական նշանի ներկայացնելու համար:

**Գ. ՄԻՆԱՍՅԱՆ**

Ծիանցյութերի արդյունաբերության մինիստրի տեղակալ

...«Հայգյուղտնտտեխնիկայի» Արարատի մեքենամելիորացիոն կայանի կողմից Արազդայանի նախալեռնային մասում վերջին 3 տարիներին յուրացվել են 932 հեկտար քարքարոտ հողեր, ընթացիկ տարում պլանավորված է յուրացնել ևս 400 հեկտար: Նոր յուրացված տարածությունների վրա ոռոգման ցանցի անցկացման և մյուս ջրաշինարարական աշխատանքները իրագործում է Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության «Հայջրշին» գլխավոր վարչությունը:

**Հ. ԲՈԼՇԻԿՅԱՆ**

«Հայգյուղտնտտեխնիկա» հանրապետական միավորման նախագահի տեղակալ

---





Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04760 Պատվեր 1309 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.700 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 12/VII-1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում 1978 թվականի ապրիլի 25-ին: *«Հայաստան» հրատ., 1978:*

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 3: «Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ՄԻԿՈՅԱՆ— Քսանական թվականների սկզբին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ԳԱԼՈՅԱՆ— Ռուսաստանը և Անդրկովկասի ժողովուրդները: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ջ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ— Խաղաղությունը և սոցիալիզմը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— Մարշալ Բաղրամյան: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հ. ՇԱՏՎՈՐՅԱՆ— Թիկունքում, ինչպես ռազմաճակատում: *Հայաստանի կոմկուսի ռազմակազմակերպական գործունեության պատմությունից: «Հայաստան» հրատ., 1978:*

ՄԱՔՍ ԲՈՌՆ— Իմ կյանքը և հայացքները: *«Հայաստան» հրատ., 1978:*

Թ. ՋԱՏԻԿՅԱՆ— Եկամտահարկը և կոլտնտեսությունների ու պետական բյուջեի փոխհարաբերությունները: *«Հայաստան» հրատ., 1978:*

**Поездка Леонида Ильича Брежнева по Сибири и Дальнему Востоку.** Март—апрель 1978 года. М., Политиздат, 1978.

**Мария Ильинична Ульянова.** М., «Правда», 1978.

С. АНДРОНОВ—**Большевистская печать в трех революциях.** М., Политиздат, 1978.

В. КОЗЛОВСКИЙ—**Марксистская диалектика и ее современные противники.** М., «Мысль», 1978.

**Армяно-русские отношения во втором тридцатилетии XVIII века.** Сборник документов. Т. 3. Изд. АН Арм. ССР, 1978.

В. ЖЕЛИБА—**Забота о земле—партийное дело.** М., «Колос», 1978.

**Социалистический рабочий коллектив.** Проблемы духовной жизни. М., «Мысль», 1978.

**Соревнование за высокую эффективность и качество.** М., «Правда», 1978.

М. ПОМУС—**Великие стройки Сибири.** М., «Знание», 1978.

**Советские Вооруженные Силы.** История строительства. М., «Воениздат», 1978.

Л. КАПИЦА и В. СУХОВ—**Экономическая интеграция развивающихся стран.** М., «Международные отношения», 1978.

Г. СЕМЁНОВ—**Три года в Пекине.** Записки воен. советника. М., «Наука», 1978.

Г. КУЗНЕЦОВ и В. ПОЛЯКОВСКИЙ—**Иллюзии свобод и горькая действительность** ( Империализм. События. Факты. Документы). М., «Мысль», 1978.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ ՀԱՂԹԱՀԱՐՈՒՄ Է ՑԱՎԸ

*Պրագայի համալսարանի նյարդավիրաբուժական կլինիկային կից բիոէլեկտրոնիկայի լաբորատորիայում ստեղծվել է ցավերը վերացնող էլեկտրոնային փոքրիկ սարք: Ոչ մեծ տուփում տեղադրված է էլեկտրոնային 400 գրամանոց սխեմա, որն ստեղծում է ներվերում ցավի զգացումը խլացնող էլեկտրոնային խանգարումներ: Տուփի կափարիչի վրայի երեք կարգավորիչները փոփոխում են էլեկտրական իմպուլսների ուժը, դրանց հաճախականությունն ու տևողությունը: Յուրաքանչյուր կոնկրետ դեպքում հիվանդը ինքն է գտնում այդ պարամետրերը: Ցավը խլացնող իմպուլսները ցավոտ տեղին հասնում են մաշկի վրա դրված էլեկտրոդների միջոցով:*

*Նոր սարքից օգտվելիս, անշուշտ, հարկ է զգույշ լինել. չէ՞ որ այն չի վերացնում ցավի պատճառը: Բայց քանի որ հաճախ զուգահեռ բուժումն ինչ-ինչ պատճառներով անհնար է անմիջապես սկսել, կամ սաստիկ ցավերը շարունակվում են նաև բուժումից որոշ ժամանակ անց, ուստի չեխոսլովակյան այս գյուտը շնորհակալությամբ կընդունեն և՛ բժիշկները, և՛ հիվանդները:*

## ԱՎՏՈԴՈՂԵՐՆ ԱՄՐԱՑՆՈՒՄ ԵՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ

*Ամեն տարի աղբանոց են նետվում միլիոնավոր հին ավտոդողեր: Այժմ փորձում են դրանք մանրացնել և փոշին ավելացնել ասֆալտին: Այն բարձրացնում է ճանապարհածածկի որակը: Բայց պարզվում է, որ նման թափոնների օգտագործման միակ եղանակը չէ այդ: Վերջերս ԳՖՀ-ում կառուցվել է չորս կիլոմետրանոց ճանապարհ՝ ճահճի միջով: Տորֆի և բնափայտի փոխարեն որպես ֆիլտրող հիմք օգտագործում են կտրտած ավտոդողերի պաշտպանաշերտերն ու կողամասերը, վրան լցնում ավազ ու մանրախիճ: Նման ճանապարհը երեք անգամ էժան է և 100 անգամ երկարակյաց:*

## ՈՌՈԳՈՒՄՆԵՐՆ ՈՒ ՏԵՂՈՒՄՆԵՐԸ

*Հյուսիսային Ամերիկայում անցկացված երկամյա ուսումնասիրությունները հաստատեցին, որ այն մարզերում, ուր կատարվում են ինտենսիվ արհեստական ոռոգումներ, ավելանում են բնական տեղումները: Պարզվեց, որ ոռոգման սեզոնի ընթացքում տեղումների քանակը մեծանում է 19—35 տոկոսով: Այդ բացատրվում է նրանով, որ ինտենսիվ ոռոգման սահմանների վրա գոյանում է խոնավ, զով օդի գմբեթ, որը նպաստում է ամպերի կուտակմանը և տեղումներին:*

## ԱՐԵՎԻ ՏՆԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ

*Վիեննայի տեխնիկական համալսարանում պատրաստվել և փորձարկվել է պարզ ու հուսալի արևի էլեկտրաուժային սարք:*

*Արևի ճառագայթները, հավաքվելով պարաբոլոիդաձև ռեֆլեկտորի մեջ, տաքացնում են ջուրը, ստեղծելով գերջեռուցած գոլորշի՝ մինչև 135 աստիճան: Ջերմափոխանակիչում գոլորշու ջերմությունն անցնում է սառնարաններում օգտագործվող ֆրեոնի տիպի արագ գոլորշիացող հեղուկի: Ստացված գոլորշին պտտեցնում է տուրբինը: Ջրի և ֆրեոնի գոլորշին այնուհետև սառեցվում է կոնդենսատորներում և հեղուկ վիճակում կրկին վերադարձվում տաքացման տեղը, այնպես որ սարքը կարիք չունի լցավորման: Տուրբինը գեներատորին միացվում է փոփոխական հոսանքով, նախատեսված է նաև ուղղիչ՝ ակումուլյատորի լիցքավորման համար: Սարքի հզորությունը 10 կիլովատ է, և դա լիովին բավարարում է տնային մեկ տնտեսության սպասարկելու համար:*

*Փորձարկման ժամանակ, որն անցկացվեց Վիեննայում ամառային պայծառ մի օր, արևի էլեկտրակայանն աշխատեց առավոտյան ժամը 7 անց 20 րոպեից մինչև ցերեկվա ժամը 5-ը և տվեց 75 կիլովատ-ժամ էներգիա: Մասնագետների կարծիքով սարքն ավելի լայն կիրառություն կգտնի հարավային երկրներում:*